## Մեր հեղինակներին

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5

ՄԱՅԻՍ, 1982
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический
и политический журнал ЦК КП Армении


### ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




ԵՐԵՎԱՆ ● ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ









# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ, ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴՈՒՄ, ՀԱՄԿԽ-ՈՒՄ ԵՎ ՀԱՄԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, ՀԱՄԿԽ-ն և ՀամԼԿԵՄ Կենտկոմը որոշում են ընդունել «Ի նշանավորումն Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 60-ամյակի համամիութենական սոցիալիստական մրցության արդյունքներն ամփոփելու կարգի և այդ մրցության հաղթողներին խրախուսելու միջոցառումների մասին»:

Որոշման մեջ նշվում է, որ Մոսկվայի, Լենինգրադի, միութենական հանրապետությունների առաջավոր կոլեկտիվների նախաձեռնությամբ ձեռնարկություններում, միավորումներում, կոլտնտեսություններում, կազմակերպություններում և հիմնարկներում լայնորեն սոցիալիստական մրցություն է ծավալվել ՍՍՀ Միության կազմավորման 60-րդ տարեդարձը արժանավայել դիմավորելու, տնտեսական ու սոցիալական զարգացման 1982 թվականի պլանը, տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու և գերակատարելու համար:

Մեր երկրի աշխատավորները քաղաքական և աշխատանքային բարձր ակտիվությամբ են կենսագործում ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները, ՍՄԿԿ Կենտկոմի 1981 թվականի նոյեմբերյան պլենումում և ՍՍՀՄ արհմիությունների XVII համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևի առաջ քաշած դրույթները: Մրցողների ջանքերը նպատակամղված են հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացմանը, գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը, հումքի, նյութերի, էլեկտրաէներգիայի, վառելիքի, ֆինանսական և աշխատանքային ռեսուրսների նվազագույն ծախսումներով վերջնական բարձր արդյունքների ապահովմանը: Սոցիալիստական մրցության ընթացքում ամրապնդվում են մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների բարեկամությունը, համագործակցությունն ու ընկերական փոխօգնությունը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, արհեստակցական միությունների համամիութենական կենտրոնական խորհուրդը և ՀամԼԿԵՄ Կենտրոնական կոմիտեն որոշել են ի նշանավորումն ՍՍՀ Միության կազմավորման 60-ամյակի համամիութենական սոցիալիստական մրցության արդյունքներն ամփոփել ըստ տնտեսական ու սոցիալական զարգացման 1982 թվականի տասն ամիսների պլանի կատարման ցուցանիշների՝ հաշվի առնելով 1982 թվականի առաջադրանքների և հնգամյակի սկզբից կոլեկտիվների ստանձնած հանդիպական պլանների ու սոցիալիստական պարտավորությունների սպասվող կատարումը: Այդ մրցության մեջ հաղթած կոլեկտիվները պարգևատրվում են ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշներով,

դիպլոմներով ու դրամական մրցանակներով, իսկ դրանցից այն կոլեկտիվները, որոնք առավել բարձր ու կայուն ցուցանիշների են հասել հանդիպական պլանների և սոցիալիստական բարձր պարտավորությունների կատարման գործում, գրանցվում են ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի համամիութենական պատվո տախտակին:

ՍՍՀՄ մինիստրություններին ու գերատեսչություններին և արհմիությունների կենտրոնական կոմիտեներին թույլատրված է նույն ժամկետներում, ի նշանավորումն ՍՍՀ Միության կազմավորման 60-ամյակի, ճյուղային մրցության արդյունքների հիման վրա շնորհել այդ մարմինների՝ հաստատված փոխանցիկ կարմիր դրոշներ ու դրամական մրցանակներ և ամփոփել բրիգադների, աշխատամասերի, օղակների, ֆերմաների, բաժանմունքների կոլեկտիվների, ինչպես նաև բանվորների, կոլտնտեսականների, ինժեներատեխնիկական աշխատողների, մասնագետների ու ծառայողների մրցության արդյունքները՝ հաղթողներին պարգևատրելով մինիստրությունների (գերատեսչությունների) և արհմիությունների կենտրոնական կոմիտեների պատվո վիմպելներով, դիպլոմներով, ինչպես նաև հուշանվերներով կամ դրամական պարգևներով:

Նպատակահարմար է համարվել նաև ՍՍՀ Միության կազմավորման 60-րդ տարեդարձն արժանավայել դիմավորելու սոցիալիստական մրցության արդյունքների հիման վրա բանվորներին, կոլտնտեսականներին, ինժեներատեխնիկական աշխատողներին, մասնագետներին ու ծառայողներին, աշխատանքի արդյունավետության ու որակի բարձրացման գործում բարձր ցուցանիշների հասնելու, առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու համար պարգևատրել «Տասնմեկերորդ հնգամյակի հարվածային» ընդհանուր միութենական կրծքանշանով՝ հանձնելով հուշանվեր կամ դրամական պարգև:

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1982 թվականի ապրիլի 20-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումը քննարկեց «Տասնմեկերորդ հնգամյակի պլանային առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների կատարման համար աշխատավորական կոլեկտիվներին մոբիլիզացնելու ուղղությամբ ՀԿԿ Երևանի քաղկոմի կազմակերպչական և քաղաքական աշխատանքը՝ ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների, արհմիությունների XVII համագումարում և Ուզբեկստանում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևի ունեցած ելույթներում բովանդակվող ցուցումների և հանձնարարականների լույսի ներքո» հարցը:

Զեկուցումով հանդես եկավ ՀԿԿ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. **Լ. Ն. Ներսիսյանը:**

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. **Դ. Ս. Հարությունյանը,** ժողովրդական դեպուտատների Երևանի քաղաքային սովետի գործկոմի նախագահ ընկ. **Մ. Հ. Մուրադյանը,** Կիրովականի Կամոյի անվան տրիկոտաժի արտադրական միավորման կարող բանվորուհի ընկ. **Գ. Ս. Ղազարյանը,** ՀԿԿ Լենինյան շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Ք. Լ. Մանդալյանը,** Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի լեռնային արտադրամասի էքսկավատորավարների բրիգադավար ընկ. **Պ. Մ. Դավթյանը,** ՀԿԿ Նաիրիի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Ն. Կ. Այվազյանը,** «Էլեկտրասարք» արտադրական միավորման փականագործների բրիգադավար ընկ. **Է. Թ. Հարությունյանը,** ՀԿԿ Սպանդարյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Գ. Ե. Ասատրյանը,** «Արթիկտուֆ» արտադրական միավորման քարհատ մեքենայի մեքենավար ընկ. **Մ. Վ. Երիցյանը,** ՀԿԿ Արարատի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Հ. Վ. Մինասյանը,** «Ալմաստ» գործարանի բանվորուհի ընկ. **Մ. Ս. Սահակյանը,** Հայկական ՍՍՀ առևտրի մինիստր ընկ. **Ս. Ռ. Սաֆարյանը,** Երևանի լոկոմոտիվային դեպոյի մեքենավար ընկ. **Ա. Հ. Պետրոսյանը,** «Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորման գլխավոր դիրեկտոր ընկ. **Ռ. Պ. Ամիրյանը,** Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի կուսկոմիտեի քարտուղար ընկ. **Ս. Գ. Փիլիպոսյանը:**

Պլենումում ընդարձակ ճառով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. Դեմիրճյանը:**

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ընդունեց համապատասխան որոշում:

Դրանով Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի սեկտորի վարիչ ընկ. **Վ. Ս. Կոնդրատևը:**

# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ՃԱՌԸ

Ընկերնե՛ր։

Սովետական Հայաստանի աշխատավորները, ինչպես բոլոր սովետական մարդիկ, կենսագործելով կուսակցության XXVI համագումարի որոշումները, ակտիվորեն, ուժերի և եռանդի լիակատար նվիրումով պայքարում են հանուն կոմունիստական շինարարության վիթխարի ծրագրի իրականացման։ Նրանք բարձր պատասխանատվության զգացումով աշխատում են հանրապետության հետագա համակողմանի առաջընթացի մեծ խնդիրների լուծման համար, արժանի ավանդ ներդնում մեր մեծ հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման գործում։

Այսօր, Կենտկոմի պլենումում, մենք հարկ ենք համարում առանձնապես ընդգծել Երևանի և երևանցիների բացառիկ կարևոր, շատ դեպքերում վճռական դերը դրանում, այն ուրախալի իրողությունը, որ մեր մայրաքաղաքի աշխատավորները կուսակցական կազմակերպության ղեկավարությամբ ընթանում են կուսակցության պլանների իրականացման համաժողովրդական պայքարի ավանգարդում, հանդես են գալիս որպես Սովետական Հայաստանի առաջադիմության հարվածային, առաջատար ուժ։

Մենք բոլորս, բնականաբար, հպարտանում ենք Հայաստանի պատմական նոր ճակատագրի, նրա բուռն ծաղկման մեջ Երևանի մեծ առաքելությամբ, մեր ժողովրդի նյութական և հոգևոր հարստությունների անշեղ աճի մեջ նրա ներդրած ավանդով։ Մեզ հատկապես ուրախացնում է Երևանի աշխատավորների հաջողությունների կայունությունը, այն, որ նրանք ահա արդեն յոթ տարի շարունակ հիանալի արդյունքների են հասնում համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, և քաղաքը պարգևատրվում է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով։

Ձեռք բերված հաջողությունները, Երևանի վստահ առաջընթացը, անշուշտ, պատահական չեն, խարսխվում են ամուր հիմքի վրա։ Այդ հաջողությունները մայրաքաղաքի բոլոր աշխատավորների ջանքերի և արգասավոր ստեղծագործության արդյունքն են, նրանց հայրենասիրության, բարձր գիտակցականության, իրենց պարտքի նկատմամբ պատասխանատու վերաբերմունքի, աշխատանքային անձնվիրության և արիության պերճախոս վկայությունը։ Դրանք կազմակերպչական ու քաղաքական այն մեծ աշխատանքի արդյունքն են, որ մայրաքաղաքի կուսակցական կազմակերպությունը, կուսակցության քաղկոմը, շրջկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները կատարել են աշխատավորական կոլեկտիվների ուժերը տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների լուծման, հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման համար մոբիլիզացնելու ասպարեզում։

* Տպագրվում է համառոտումներով։



Այս ամենը, պատկերավոր ասած, մարմնավորվել է մայրաքաղաքի արդյունաբերության, տրանսպորտի, կապի, սպասարկման ոլորտի, քաղաքային տնտեսության զարգացման մեջ, բնակչության բարեկեցության նշանակալի բարձրացման մեջ, որոնց մասին հանգամանորեն խոսվեց կուսակցության Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկեր Լ. Ներսիսյանի զեկուցման մեջ և ընկերների ելույթներում։ Ուստի, հանգամանորեն կանգ չառնելով նվաճումների վրա, ընդգծենք, որ է՛լ ավելի է աճել մայրաքաղաքի ժողովրդական տնտեսության արտադրական և գիտատեխնիկական պոտենցիալը, ստեղծվել է ամուր հիմք, ընդլայնվել են քաղաքական և տնտեսական հնարավորությունները էկոնոմիկայի զարգացման և կուլտուրական շինարարության խոշոր մասշտաբի խնդիրների լուծման, ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման համար։

Աշխատավորական Երևանը վատ չի սկսել նաև տասնմեկերորդ հնգամյակը։ Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 24-ին կատարեցին արտադրության ծավալի և կարևորագույն արտադրատեսակների թողարկման հնգամյակի առաջին տարվա պլանը։

Կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններն ուժեղացրել են ուշադրությունը թողարկվող արտադրանքի որակի նկատմամբ։ 1981 թվականին ավելի քան 700 արտադրատեսակների շնորհվեց պետական որականիշ, իսկ ատեստավորվող արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի բաժինը հասավ մոտավորապես 40 տոկոսի։ Որոշակի հաջողություններ են ձեռք բերվել նոր արտադրատեսակների մշակման և յուրացման գործում, որոնք իրենց տեխնիկական մակարդակով համապատասխանում են ժամանակակից պահանջներին։

Երևանցիները նկատելի առաջընթաց քայլ են կատարել նաև ժողովրդական սպառման ապրանքների արտադրության զարգացման գործում։ Որոշակի հաջողությունների են հասել երկաթուղու, ավտոտրանսպորտի, օդային տրանսպորտի, կապի աշխատավորական կոլեկտիվները։

Բարձր գնահատականի է արժանի կազմակերպչական ու քաղաքական այն մեծ աշխատանքը, որն իրականացրեց կուսակցության Երևանի քաղաքային կոմիտեն քաղաքի ինֆրակառուցվածքի որակապես նոր օղակի՝ մետրոպոլիտենի գործարկումն ապահովելու նպատակով։ Շարք է մտել «Զվարթնոց» օդանավակայանի նոր եղակի համալիրը, որը դարձել է ոչ միայն հարմար հանգրվան, այլև Երևանի յուրատեսակ այցետոմսը։

Կատարվել են մեծ ծավալի շինարարական աշխատանքներ։ Գործարկվել են բազմաթիվ արտադրական օբյեկտներ, բնակելի, դպրոցական, նախադպրոցական շենքեր և բժշկական սպասարկման ոլորտի օբյեկտներ։ Որոշակի տեղաշարժեր են կատարվել նաև քաղաքային տնտեսության զարգացման ասպարեզում։

Միջոցառումներ են իրականացվել սպասարկման ոլորտում աշխատանքը բարելավելու և սպասարկման կուլտուրան բարձրացնելու, առևտրի, հասարակական սննդի և կենցաղի ձեռնարկությունները ժամանակակից տեխնոլոգիական սարքավորումներով ու տեխնիկայով հագեցնելու համար։

Երևանի կուսակցական կազմակերպությունը, ղեկավարվելով ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներով, քիչ բան չի արել գաղափարախոսական աշխատանքի ձևերն ու մեթոդները կատարելագործելու, նրա գիտական մակարդակը, արդյունավետությունն ու նպատակասլացությունը բարձրացնելու, դաստիարակության ամբողջ գործի նկատմամբ կոմպլեքսային մոտեցում ցուցաբերելու, գաղափարախոսական և կազմակերպչական աշխատանքի սերտ միասնությունն ապահովելու նպատակով։ Պրոպագանդիստների, դասախոսների ու զեկուցողների, քաղինֆորմատորների, ագիտատորների, ժուռնալիստների մեծ բանակը մարքս-լենինյան գաղափարների ամբողջ հարստությունն ու խորությունը ակտիվորեն հասցնում է քաղաքի յուրաքանչյուր կոմունիստի, կոմերիտականի, յուրաքանչյուր աշխատավորի, նրանց զինելով հասարակական զարգացման օրենքների, կուսակցության տեսության ու քաղաքականության իմացությամբ։ Աշխատավորական շատ կոլեկտիվներում մարքս-լենինյան ուսուցումը սերտորեն շաղկապվում է հասարակական և արտադրական հրատապ պրոբլեմների,

այդ կոլեկտիվների առջև կանգնած խնդիրների, պրակտիկ գործերի հետ, մի բան, որ նպաստում է դրանցում բարոյաքաղաքական առողջ կլիմայի, ստեղծագործական աշխատանքի մթնոլորտի ապահովմանը, վերջնական բարձր արդյունքների ձեռքբերմանը։

Ակտիվացել է գրականության և արվեստի գործիչների մասնակցությունը կոմունիստական դաստիարակությանը։ Աշխատավորական կոլեկտիվների հետ նրանց ուղղակի շփումները, նոր ստեղծագործությունների, ցուցահանդեսների, ներկայացումների, երաժշտական գործերի համատեղ քննարկումները, սովետական բանակի մարտիկների և սահմանապահների հետ հանդիպումներն ավելի ու ավելի գործարար ու կոնկրետ բնույթ են ստանում։ Արվեստի և աշխատանքի դաշինքը մեր կյանքի ռեալ իրողությունն է։

Մի խոսքով, շատ բան է արվել։ Բայց առջևում են կուսակցության XXVI համագումարի որոշումների լիակատար կենսագործման պատասխանատու խնդիրները, տնտեսական ու սոցիալական զարգացման այն բարձր բնագծերը, որոնք մենք պետք է նվաճենք տասնմեկերորդ հնգամյակում։ Միանգամայն ակնհայտ է, որ այդ լուրջ խնդիրները հաջողությամբ կարելի է լուծել միայն այն դեպքում, եթե վերացվեն դեռևս առկա թերությունները ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում, կուլտուրական շինարարության մեջ, կուսակցական աշխատանքում։ Իսկ երևանցիների աշխատանքում թերությունները, ցավոք, քիչ չեն։

Տաշքենդում ունեցած իր ելույթում ընկեր Լ. Ի. Բրեժնևը հատուկ ուշադրություն հրավիրեց այն բանի վրա, որ անհրաժեշտ է ապահովել երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի հստակ աշխատանքը, ժամանակին և որակով կատարել միջհանրապետական մատակարարումները։ Դա հնարավոր է իրագործել պետական, պլանային կարգապահությունն ըստ ամենայնի ամրապնդելու, արտադրանքի թողարկման և իրացման պլանների, ինչպես նաև ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլանով նախատեսված բոլոր առաջադրանքների անվերապահ կատարման համար տնտեսական, սովետական և կուսակցական ղեկավար կադրերի. կուսակցական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների պատասխանատվությունը բարձրացնելու վերաբերյալ կուսակցության համագումարի պահանջները կատարելու դեպքում։

Իսկ Երևանում միայն անցած տարի յոթ արդյունաբերական ձեռնարկություններ և միավորումներ չեն կատարել արտադրանքի ծավալի և իրացման պլանային առաջադրանքները, քաղաքի 13 արդյունաբերական ձեռնարկություններ և միավորումներ թերակատարել են աշխատանքի արտադրողականության պլանը, իսկ 38-ը՝ անցյալ տարվա համեմատությամբ չունեն աճ։ Արդյունքներն ավելի լավ չեն առաջին եռամսյակում. 17 ձեռնարկություններ չեն կատարել ապրանքային արտադրանքի արտադրության և իրացման պլանները։ Ինչպես ամբողջությամբ վերցրած քաղաքի, այնպես էլ յուրաքանչյուր շրջանի մասշտաբով չի ապահովվել արդյունաբերական արտադրանքի իրացման պլանը՝ հաշվի առնելով պարտավորությունների կատարումը մատակարարումների գծով։

Տասներորդ հնգամյակում երևանցիները երեք տարի աշխատեցին առանց ետ մնացողների։ Աններելի է, որ նրանք զիջել են նվաճված դիրքերը։ Այստեղ հարկավոր է սուր քննադատության ենթարկել նաև հանրապետական մինիստրություններին ու գերատեսչություններին, քանի որ պլանները չկատարող ձեռնարկությունների ավելի քան 70 տոկոսը գտնվում է դրանց համակարգում։ Կուսակցության Սպանդարյանի շրջկոմը (ընկ. Գ. Ասատրյան), որտեղ հիմնականում կենտրոնացված են պետական հիմնարկները, պետք է բարձրացնի ապարատների կուսակցական կազմակերպությունների պատասխանատվությունն այդ գործում։

Կուսակցության քաղկոմը, շրջկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները պետք է խստորեն վերահսկեն պլանների կատարման ընթացքը։ Հարկավոր է, որ նրանք պլանային կարգապահության ամեն մի խախտում, պայմանագրային պարտավորությունների կատարման ամեն մի ձախողում դարձնեն մանրակրկիտ ուսումնասիրման, լուրջ քննարկման առարկա և ձեռնարկեն կոնկրետ, գործուն միջոցներ, հասնեն գործերի վիճակի շտկման։

Շատ ձեռնարկություններում այնքան էլ գոհացուցիչ չէ նաև ժողովրդական սպառման ապրանքների արտադրության վիճակը։ Չնայած Հայաստանի կոմկուսի XXVII համագումարում միութենական ենթակայության ձեռնարկություններին հասցեագրված քննադատությանը, նրանք այսօր էլ շարունակում են քիչ թողարկել ժողովրդական սպառման ապրանքներ։ Հանրապետության թեթև արդյունաբերության, տեղական արդյունաբերության, սննդարդյունաբերության մինիստրությունների մի շարք ձեռնարկություններ դեռևս արտադրում են բնակչության պահանջարկին չհամապատասխանող ապրանքներ, թույլ են տալիս կոպիտ շեղումներ ստանդարտներից ու տեխնիկական պայմաններից, մի բան, որ հանգեցնում է առևտրի ցանցում ապրանքների կուտակման, գերնորմատիվային մնացորդների ավելացման։

Դա պատիվ չի բերում Երևանի արդյունաբերությանը։ Քաղաքի կուսակցական և սովետական մարմինները պարտավոր են հասնել այն բանին, որ բոլոր ձեռնարկությունները անպայման կատարեն առաջին անհրաժեշտության և մասսայական պահանջարկ վայելող ապրանքների թողարկման սահմանված առաջադրանքները՝ լրիվ տեսականիով և բարձր որակով, բարձրացնեն տնտեսական ղեկավարների և կուսակցական կազմակերպությունների պատասխանատվությունն այդ գործում։

Ցավոք, կուսակցական շատ կոմիտեներում դեռևս գոյություն ունի ձեռնարկությունների աշխատանքի գնահատման սխալ պրակտիկա։ Բավական է, որ ձեռնարկությունը կատարի ապրանքային արտադրանքի թողարկման ու իրացման պլանը, և արդեն համարվում է առաջավոր։ Բայց չէ որ կուսակցության XXVI համագումարը սահմանեց, որ ձեռնարկությունների գործունեությունը գնահատելիս գլխավորը պետք է համարվի առաջադրանքների կատարումը ըստ տեսականու, արտադրանքի մատակարարումների լիակատար ապահովումը պայմանագրերի համաձայն։

Պետք է լրջորեն մտահոգվեն մետաքսի, ձեթ-օճառի, նուրբ բրդյա գործվածքների կոմբինատների, շամպայն գինիների գործարանի, ծխախոտի ֆաբրիկայի և այլ ձեռնարկությունների տնտեսական ղեկավարներն ու կուսակցական կազմակերպությունները, որոնք ապրանքային արտադրության պլանը ամբողջությամբ կատարելու հետ մեկտեղ չեն ապահովել արտադրանքի մատակարարման պլանների կատարումը ավելի քան 25 միլիոն ռուբլու չափով։ Այստեղ արդարացի քննադատության են արժանի նաև կուսակցության համապատասխան շրջկոմներն ու նրանց ղեկավարները։

Թեթև, սննդի, տեղական արդյունաբերության, բնակչության կենցաղային սպասարկման, առևտրի մինիստրությունների, «Հայկոոպի» ղեկավարներին՝ ընկ. ընկ. Ա. Գևորգյանին, Ա. Դանիելյանին, Մ. Զուրաբյանին, Ս. Թումանյանին, Ս. Սաֆարյանին, Է. Սարգսյանին, հարկ է ձեռնարկությունների ղեկավարներից ավելի խստորեն պատասխան պահանջել պլանների կատարման համար, ժողովրդական սպառման նոր, արդիական, բարձրորակ ապրանքները արտադրության մեջ ժամանակին ներդնելու և թողարկելու, պայմանագրային կարգապահությունը բարձրացնելու համար։

ՍՄԿԿ XXVI համագումարում, ընկ. Լ. Ի. Բրեժնևի՝ արհմիությունների XVII համագումարում արտասանած ճառում շեշտվեց աշխատանքի բրիգադային կազմակերպման և խթանման նոր ձևերի ներդրման կարևորությունը։ Քաղաքի ձեռնարկությունների և միավորումների տնտեսական ղեկավարներն ու կուսակցական կազմակերպությունները քիչ բան չեն արել այդ ասպարեզում։ Բայց, դրական արդյունքների հետ մեկտեղ, անհրաժեշտ է նշել, որ աշխատանքի կազմակերպման ու խթանման բրիգադային ձևի զարգացմանը ամենուրեք չէ, որ պատշաճ ուշադրություն է նվիրվում, իսկ տեղ-տեղ էլ այդ աշխատանքին գործնականորեն դեռ ձեռնամուխ չեն եղել։ Մի շարք ձեռնարկություններում և միավորումներում կատարված ուսումնասիրությունները ցույց են տվել, որ, ձգտելով արագ հաշիվ տալ, որոշ ձեռնարկությունների ղեկավարներ տարվել են «բրիգադացումով», դրանց մեջ ընդգրկված բանվորների թվաքանակի ցուցանիշ-

ներով, իսկ նորաստեղծ բրիգադները ամենուրեք չէ, որ նոր տիպի են։ Զգիտեմ հայտնի՞ է, արդյոք, կուսակցության Շահումյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ռ. Վարդանյանին, որ դեկորատիվ գործվածքների ֆաբրիկայում կազմակերպված 19 բրիգադներից, ուր ընդգրկված է 223 բանվոր, ոչ մեկում վաստակը չի բաշխվում՝ հաշվի առնելով աշխատանքային մասնակցության գործակիցը (ԱՄԳ)։

Աշխատանքի կազմակերպման բրիգադային եղանակի նկատմամբ ձևական մոտեցում գոյություն ունի նաև հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերության մի շարք ձեռնարկություններում։ Դրանց թվումն են Երևանի ֆրեզերային հաստոցների, «Հաստոցանորմալ», «Ալմաստ», Ջերժինսկու անվան և ուրիշ շատ գործարաններ։ Թող թույլ տրվի հարցնել՝ կուսակցության համապատասխան շրջկոմների քարտուղարները գիտե՞ն, արդյոք, այդ մասին, մի՞թե նրանք մոռացել են, որ կուսակցության համագումարը աշխատանքի կազմակերպման բրիգադային եղանակը հիմնականը համարեց տասնմեկերորդ հնգամյակում։

Կարևորագույն խնդիր է թողարկվող արտադրանքի որակի բարձրացումը և տեխնիկատնտեսական պարամետրերի բարելավումը։ Մայրաքաղաքի արդյունաբերությունը իրավունք չունի, չպետք է թողարկի իր պարամետրերով և շահագործական բնութագրերով ժամանակակից պահանջներից ետ մնացող, ցածրորակ արտադրանք, նյութատար, հատկապես մետաղատար, էներգատար, բարձր ինքնարժեք ունեցող, թանկ արտադրանք։ Բայց, դժբախտաբար, նման արտադրանքի թողարկման փաստերը մեզանում շատ են։

Արդարացի, սուր քննադատության են արժանի կուսակցության Օրջոնիկիձեի, Շահումյանի, 26 կոմիսարների, Լենինյան շրջկոմները այն բանի համար, որ այդ շրջանների մի շարք ձեռնարկություններ պատշաճ ուշադրություն չեն նվիրում թողարկվող արտադրանքի որակի բարձրացմանը և տեսականու նորացմանը։ Մի՞թե ճիշտ չէր լինի խիստ պատասխան պահանջել Ջերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի, Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանի, «Հայքիմմեքենա» արտադրական միավորման և այլ ձեռնարկությունների ղեկավարներից ու կուսակցական կազմակերպություններից այն բանի համար, որ դեռևս թողարկվում է տեխնիկատնտեսական ցածր պարամետրերով, ժամանակակից համանման տեսակներից 15—30 տոկոսով ավելի ծանր առանձին արտադրատեսակներ։

Սա պետք է լրջորեն մտահոգի կուսակցության համապատասխան շրջկոմների քարտուղարներին։

Հայաստանի կոմկուսի XXVII համագումարում ասվել է, և այսօր մեկ անգամ ևս ուզում ենք շեշտել. ներկա պայմաններում պարտադիր է դառնում տեխնիկատնտեսական բարձր պարամետրերով ժամանակակից, բարձրորակ, հուսալի և դիմացկուն արտադրանքի թողարկումը։ Ոչ ոք չի վերցնի հին արտադրանքը, ասենք, ոչ ոք չի էլ պլանավորի այդպիսի արտադրանքի թողարկում։ Ուրեմն, եթե երևանցիներն ուզում են, որ իրենց արդյունաբերությունը զարգանա կայուն և դինամիկ, կուսակցական կազմակերպությունը պետք է ընդհուպ զբաղվի արտադրանքը ժամանակին նորացնելու, այժմեական, հարկավոր արտադրանք թողարկելու հարցով։

Ելույթ ունենալով սովետական արհմիությունների XVII համագումարում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը հատկապես շեշտեց, որ անհրաժեշտ է նվազագույնի հասցնել ձեռքի աշխատանքը, արդյունավետ կազմակերպել աշխատանքը յուրաքանչյուր կոնկրետ տեղամասում, օգտագործել գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները ոչ թե ընդհանրապես, այլ կոնկրետ, տվյալ աշխատատեղի պայմաններին համապատասխան։ Եթե այս դիրքերից քննության առնենք մեր արդյունաբերության, շինարարության, ինչպես նաև ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի վիճակը, ապա կտեսնենք, որ դրությունը ամենևին էլ բարվոք չէ։ Ձեռքի աշխատանքի բաժինը, հատկապես օժանդակ և բեռնման-բեռնաթափման աշխատանքներում, դեռևս շատ բարձր է և արդյունաբերության առանձին ճյուղերում հասնում է 30—40 տոկոսի։



Մինչդեռ շատ ղեկավարներ հաճախ անխռով սպասում են, թե երբ կկառուցվի ու կգործարկվի ինչ-որ նոր, կատարյալ բան, միջոցներ չեն ձեռնարկում գոյություն ունեցող արտադրությունը կատարելագործելու, աշխատապայմանները բարելավելու համար։ Աշխատանքի հետևողական մեխանիկաէներգետիկ զինումը պետք է միշտ գտնվի կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։

Եվս մի հարցի՝ արդյունաբերության աշխատողների որակավորման բարձրացման մասին։ Ճիշտն ասած, սա վերաբերում է մեր կենսագործունեության բոլոր ոլորտներին։

Հատկապես հարկ է շեշտել, որ անհրաժեշտ է ըստ ամենայնի ակտիվացնել և բարելավել կառավարման կադրերի և արտադրության մասնագետների աշխատանքը։ Եթե կուսակցական կազմակերպությունները հասնեն այն բանին, որ յուրաքանչյուր մասնագետ իր տեղում աշխատի ավելի արդյունավետ, ավելի որակով, ապա արտադրության շատ պրոբլեմներ ավելի լավ կլուծվեն։ Բայց շատ ձեռնարկություններում և կազմակերպություններում, ցավոք, ուշադրություն չեն դարձնում այդ հանգամանքին, համապատասխան պայմաններ չեն ստեղծում մասնագետների արդյունավետ, ստեղծագործական աշխատանքի համար, անհրաժեշտ չափով պահանջկոտ չեն նրանց նկատմամբ։ Քիչ չեն նաև այն ձեռնարկությունները, որտեղ մասնագիտական կրթություն պահանջող պաշտոնները վարում են տվյալ մասնագիտության, իսկ առանձին դեպքերում նույնիսկ աշխատանքների ուղղության հետ առնչություն չունեցող մարդիկ։ Պետք է վերջ դնել այդ բանին։

Այս պրոբլեմների լուծումը չպետք է հանգեցվի լոկ առանձին միջոցառումների անցկացմանը։ Անհրաժեշտ է հասնել արտադրության մասնագետների և կառավարման կադրերի հետ տարվող աշխատանքի կոմպլեքսային կատարելագործման։ Եվ դա պետք է դառնա Կենտկոմի, հանրապետության կառավարության, կուսակցական կոմիտեների, սովետական, պլանային և տնտեսական մարմինների, կուսակցական կազմակերպությունների ընդհանուր գործունեության օրգանական մասը, մշտապես իրականացվող պրոցես, որն ընդգրկում է կադրային ռեսուրսների, նրանց պատրաստման ու վերապատրաստման վերլուծությունն ու պլանավորումը, որակավորման բարձրացումը, արտադրության տեխնիկայի և տեխնոլոգիայի, դրա կազմակերպման և կառավարման ընդհանուր կատարելագործումը, նոր տեխնիկայի և կառավարման եղանակների կիրառումը, կառավարման կազմակերպական կառուցվածքի բարելավումը։

Կառավարման մասնագետների կադրային պոտենցիալի ձևավորումն ու զարգացումը պետք է իրականացվեն՝ հաշվի առնելով հանրապետության էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման հեռանկարները, գիտատեխնիկական հեղափոխության պահանջները և այլն։ Այստեղ հարկավոր է ունենալ գործողությունների հստակ ծրագիր։ Հանրապետության պետպլանը պետք է ըստ ամենայնի բարելավի կադրային պոտենցիալի պրոգնոզավորման, պլանավորման և զարգացման գործը։

Խոսելով արտադրության մեջ կադրերի հետ տարվող աշխատանքի մասին, հարկավոր է հատկապես շեշտել վարպետների հետ տարվող աշխատանքը բարելավելու անհրաժեշտությունը։ Այդ խնդրի վրա ուշադրություն հրավիրվեց նաև Հայաստանի կոմկուսի XXVII համագումարում։

Ընկերնե՛ր։ Երևանի քաղկոմը պետք է լրջորեն զբաղվի մայրաքաղաքում տրանսպորտային գործի կուսակցական ղեկավարումը բարելավելու հարցով։ Մայրաքաղաքի քաղաքային և շրջանային կուսակցական կոմիտեները լրիվ չեն օգտագործում եղած հնարավորությունները տրանսպորտի ձեռնարկություններում տիրող վիճակի վրա սկզբնական կուսակցական կազմակերպությունների ազդեցությունն ուժեղացնելու, փոխադրումների գործում ժողովրդական տնտեսության և քաղաքի բնակչության պահանջմունքները ավելի լրիվ բավարարելու համար։

Որոշ սկզբնական կուսկազմակերպություններ լրիվ և ինչպես հարկն է չեն վերահսկում ադմինիստրացիայի գործունեությունը բեռների և ուղևորների փոխադրումների սահմանված պլանների կատարման, վագոնների, լոկոմոտիվ-

ների, ինքնաթիռների և ավտոմոբիլների արդյունավետ օգտագործման, աշխատանքի որակի բարձրացման բնագավառում, հետևողական պայքար չեն մղում սոցիալիստական սեփականության պահպանությունն ապահովելու համար, աշխատանքային կարգապահության խախտումների դեմ։

Սեփական մերձատար ուղիներ ունեցող արդյունաբերական մի շարք ձեռնարկություններում, շինարարության, առևտրի, մատակարարման ոչ քիչ կազմակերպություններում բեռնման գործողությունների ժամանակ թույլ են տրվում երկաթուղային վագոնների գերնորմատիվային մեծ պարապուրդներ։ Վագոնների գերնորմատիվային պարապուրդներ թույլ տված ձեռնարկությունների թվում են Քանաքեռի ալյումինի գործարանը, ձեթ-օճառի կոմբինատը, «Հայծխախոտարդ», «Հայքիմմեքենա» արտադրական միավորումները, առևտրական բազաները և այլն։ Անհրաժեշտ է նաև նշել, որ քաղաքի ձեռնարկությունների միայն տասը տոկոսն է վագոնները բեռնում ու բեռնաթափում գիշերվա ժամերին։ Վագոնների բեռնման ու բեռնաթափման գիշերային աշխատանքի մակարդակը չի անցնում օրական աշխատանքի 20 տոկոսից՝ պլանով նախատեսված 40 տոկոսի դիմաց, բեռնման-բեռնաթափման աշխատանքը խիստ կրճատվում է շաբաթ և կիրակի օրերին։

Դեռևս ցածր է բեռնման գործողությունների մեխանիկական զինվածությունը, թույլ է աշխատանքը մերձատար ուղիների վերակառուցման ասպարեզում։

Նեղ տեղերից մեկը կապիտալ շինարարությունն է։ Ուղղակի ասենք. շինարարության գործերը բարելավելու նպատակով քաղաքային ու հանրապետական մարմինների կողմից ձեռնարկվող միջոցները արդյունավետ չեն և մեզ ամենևին չեն գոհացնում։ 1981 թվականին կապիտալ ներդրումների հատկացված լիմիտը Երևան քաղաքը լրիվ չափով չի իրացրել։ Պլանով հատկացված 389,7 միլիոն ռուբլուց իրացվել է 370,9 միլիոն ռուբլի կամ 95,2 տոկոսը։ Չօգտագործված է մնացել գրեթե 19 միլիոն ռուբլի։ Այդ գումարը մոտավորապես հավասար է դպրոցների կառուցման նպատակով ամբողջ հնգամյակի համար մայրաքաղաքին հատկացվող կապիտալ ներդրումների ծավալին։

Հիմնական ֆոնդերի գործարկման պլանը կատարվել է ընդամենը 80,5 տոկոսով։ Ֆինանսավորման բոլոր աղբյուրների գծով բնակտարածության գործարկման պլանը թերակատարվել է 2,7 տոկոսով։ Ընդ որում Երքաղսովետի գործկոմի կապիտալ շինարարության գլխավոր վարչության գծով շահագործման չի հանձնվել ավելի քան 30 հազար քառակուսի մետր բնակմակերես։ Հանրապետության ամենախոշոր արտադրական շինմոնտաժային միավորումը՝ «Երևանշինը», կապալային աշխատանքների պլանը թերակատարել է 12,5 տոկոսով։

Կապիտալ շինարարության այսպիսի վիճակը բնականաբար վկայում է սկզբնական կուսակցական կազմակերպությունների, կուսակցության շրջկոմների և քաղկոմի կողմից շինարարական ու մոնտաժային կոլեկտիվներում, քաղաքի կապիտալ շինարարությամբ զբաղվող մյուս կազմակերպություններում տարվող կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի լուրջ թերությունների մասին։

Պետք է միանգամայն որոշակիորեն ասել՝ կուսակցության շրջկոմները կառույցների կուսակցական կազմակերպությունների հետ չեն աշխատում այնպես, ինչպես արդյունաբերական ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունների հետ, այստեղ բացակայում են անհրաժեշտ հետևողականությունն ու սերտ կապը։ Շրջկոմները կոնկրետ աշխատանք չեն տանում, որպեսզի շինարարական ու մոնտաժային կազմակերպությունների կոլեկտիվներին ոտքի հանեն, համախմբեն թերություններն ի հայտ բերելու և վերացնելու համար, հարկ եղած խստապահանջություն չեն ցուցաբերում ղեկավարների նկատմամբ՝ վստահված տեղամասերում տիրող վիճակի համար։

Խիստ անբավարար և անարդյունավետ են շինարարական և մոնտաժային աշխատանքների որակի բարձրացման միջոցառումները, մասնավորապես բնակարանային-քաղաքացիական օբյեկտների շինարարության ասպարեզում։ Արտադրական խիստ ցածր կարգապահության և աշխատանքի նկատմամբ պատ-



շաճ վերահսկողության բացակայության հետևանքով կառույցներում երբեմն կատարվում են նախագծային պահանջների, շինարարական նորմաների ու կանոնների կոպիտ խախտումներ։

Իմանալով այս ամենը, շինարարական ու մոնտաժային կազմակերպությունների, «Երևանշին» միավորման (ընկ. Է. Հակոբյան), արդյունաբերական շինարարության մինիստրության (ընկ. Է. Ավագյան), պետշինի (ընկ. Կ. Մարության) ղեկավարները վճռական միջոցներ չեն ձեռնարկում դրությունը շտկելու համար։

Պետական ընդունող հանձնաժողովները, որոնց գլուխ կանգնած են շրջանային սովետների գործկոմների նախագահները կամ գործկոմների այլ պատասխանատու աշխատողներ, շարունակում են շենքերը շահագործման ընդունել զգալի պակասություններով ու թերություններով։ Իսկ քաղկոմն ու քաղսովետը, կուսակցության համապատասխան շրջկոմները խիստ պատասխանատվության չեն ենթարկում կարգազանցներին։

Արմատական բարելավման կարիք ունի նաև քաղաքային տնտեսության աշխատանքը։ Կուսակցական ու սովետական մարմինները դեռևս ստանում են մեծ թվով նամակներ, որոնցով աշխատավորները գանգատվում են խմելու ջրի անկանոն մատակարարումից, ջեռուցման կայանքների աշխատանքի ու գազամատակարարման խափանումներից, վերելակների անսարքությունից և այլն։

Այս թերությունները պայմանավորված են երկակի բնույթի պատճառներով։ Թերությունների մի մասը բացատրվում է օբյեկտիվ պայմաններով և հետևանք է այն բանի, որ քաղաքային տնտեսության զարգացման տեմպերը տևականորեն ետ են մնացել քաղաքի աճի տեմպերից, բնակչության աճից, որը սովետական իշխանության տարիներին ավելացել է ավելի քան 40 անգամ։ Վերցնենք, թեկուզ, ջրմուղային տնտեսությունը, որի զարգացման հապաղումն արտահայտվում է ջրմուղի սիստեմի անբավարար գոտիավորմամբ, օրական կարգավորման ջրատարողությունների պակասով, ցանցի առանձին տեղամասերի սահմանափակ թողունակությամբ, զանազան կարգի պոմպակայանքների կողմից հիդրավլիկ ռեժիմների խախտումով, ցանցերում տեղի ունեցող ջրի մեծ կորուստներով և տեխնիկական այլ պատճառներով։ Եվ ահա քաղաքի տարբեր շրջաններում խմելու ջրի պակաս է զգացվում, բնակիչները ջուր են ստանում միայն որոշակի ժամերին։ Մինչդեռ բնակչության մեկ շնչին ընկնում է օրական շուրջ 500 լիտր ջուր, որն զգալիորեն գերազանցում է երկրի մի շարք խոշոր քաղաքների համանման ցուցանիշը։

Այս կարգի թերությունների վերացման նպատակով կուսակցության Երևանի քաղաքային կոմիտեն և քաղսովետը գովեստի արժանի, մեծ ու պլանաչափ աշխատանք են կատարում նոր հանգուցային կառուցվածքների ստեղծման, մագիստրալային գծերի ու ցանցերի շինարարության, ջրամատակարարման, կոյուղու, ջերմամատակարարման սիստեմների և քաղաքային տնտեսության այլ օբյեկտների վերակառուցման և ընդլայնման ուղղությամբ։

Թերությունների երկրորդ խումբը սուբյեկտիվ պատճառների հետևանք է, իրենց պարտականությունների կատարման նկատմամբ զանազան ծառայությունների աշխատողների անբարեխիղճ վերաբերմունքի հետևանք, նրանցից շատերի անձեռնհասության և, հետևաբար, քաղաքային տնտեսության մի շարք օղակներում արտադրական ու կատարողական կարգապահության ցածր մակարդակի հետևանք։ Եթե վերցնելու լինենք նույն ջրամատակարարման օրինակը, ապա աշխատավորները ամենից հաճախ գանգատվում են ոչ այնքան ջրի մատակարարման գրաֆիկով պայմանավորված ընդհատումներից, որքան նրանից, որ խախտվում են այդ գրաֆիկները։

Շատ բնակիչներ գանգատվում են, որ, դիմելով ջրմուղի, կոյուղու, ջեռուցման սիստեմների վարչությունների ստորաբաժանումներին, հանդիպում են գծային անձնակազմի և պաշտոնատար անձանց անտարբեր վերաբերմունքին, որ իրենց օգնելու բազում խնդրանքները լոկ արժանանում են բյուրոկրատական խուսագրության կամ էլ, առհասարակ, անպատասխան են մնում նույնիսկ շրջանային սովետների ու քաղսովետի գործկոմների կողմից։

Կուսակցության Երևանի քաղկոմն ու շրջկոմները պետք է ուժեղացնեն

պահանջկոտությունը ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմների նկատմամբ քաղաքային տնտեսության գործերում պատշաճ կարգ ու կանոն հաստատելու համար, թերությունների վերաբերյալ ստացվող ահազանգերին որոշակի պատասխան տալու և միջոցներ ձեռնարկելու համար, քաղաքային տնտեսության օղակների ղեկավարությունը այնպիսի բանիմաց աշխատողներով ամրապնդելու համար, որոնք ընդունակ լինեն վճռականորեն բարելավելու ստեղծված վիճակը։

Խոշոր թերություններ կան բնակարանային ֆոնդի շահագործման ու պահպանման գործում։ Քաղաքի վերանորոգող-շինարարական կազմակերպությունները սակավազոր են և հազիվ են հասցնում կատարել հասարակական նշանակության շենքերի նորոգման աշխատանքները, իսկ բնակելի տների նորոգմամբ գրեթե չեն զբաղվում։ Փաստորեն չկա այնպիսի կազմակերպություն, որը բնակարանային նորոգման աշխատանքներ կատարեր քաղաքացիների պատվերներով։ Կենցաղային սպասարկման մինիստրության՝ հատկապես այդ նպատակով ստեղծված կազմակերպությունը իր ֆունկցիաները ինչպես հարկն է չի կատարում։

Ժամանակն է, որ հանրապետության Մինիստրների խորհուրդը օգնի Երքաղսովետի գործկոմին՝ լուծելու բնակելի տների պահպանման ու շահագործման պրոբլեմը։

Կուսակցության քաղկոմը և Երևանի քաղաքային սովետը պարտավոր են գործուն միջոցներ ձեռնարկել քաղաքային մարդատար տրանսպորտի հետագա զարգացման, նրա ամբողջ համակարգի օպտիմալ գործունեության կարգավորման, երևանցիների տրանսպորտային սպասարկման կուլտուրայի կոմպլեքսային բարձրացման ու բարելավման նպատակով։

Իրավիճակը թելադրում է, որպեսզի Երքաղսովետի գործկոմը և ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրությունը (ընկ. Խ. Դրամբյան) ուշադրությունը բևեռեն հանրապետության մայրաքաղաքում մարդատար փոխադրումների պրոբլեմների լուծման կառավարչական հարցերի վրա։

Քաղաքի տրանսպորտային պրոբլեմի վերլուծությունը ցույց է տալիս, որ մարդատար տրանսպորտի աշխատանքում տիրող լարվածությունը և թերությունները, որոնք շարունակում են հարուցել բնակչության դժգոհությունը, ոչ միայն և ոչ այնքան մարդատար տրանսպորտային միավորների պակասի հետևանքն է, որքան տրանսպորտի աշխատանքը ոչ բավականաչափ արդյունավետ կազմակերպելու, դիսպետչերական ծառայությունների անբավարար աշխատանքի, տրանսպորտային միջոցների անկանոն երթևեկության հետևանքը։

Հարկավոր է էապես բարելավել քաղաքի առևտրի նյութատեխնիկական բազան, որն իր առանձին ցուցանիշներով զգալիորեն ետ է մնում միութենական շատ հանրապետությունների մայրաքաղաքներից և սահմանված նորմատիվներից։ Այսպես, քաղաքի արդյունաբերության, շինարարության ու տրանսպորտի կազմակերպությունների ապահովվածությունը ճաշարանային նստելատեղերով նախատեսված նորմատիվների փոխարեն կազմում է մոտավորապես 75 տոկոս, իսկ առանձին ձեռնարկություններում ավելի ցածր է։

Հանրապետության պետպլանը, առևտրի մինիստրությունը (ընկ. ընկ. Հ. Սաղոյան, Ս. Սաֆարյան) պետք է անհրաժեշտ կապիտալ ներդրումներ հատկացնեն սպասարկման ոլորտի նյութատեխնիկական բազայի ամրապնդման համար։ Երևանի քաղսովետի գործկոմը (ընկ. Մ. Մուրադյան) պետք է գործնական միջոցներ ձեռնարկի այդ նպատակով բնակարանային շինարարության ընդհանուր գումարներից կատարվող հինգ տոկոսանոց մասհանումները օգտագործելու համար, հասնելու այդ գումարների ամենամյա և լիակատար իրացման։

Տակավին լրիվ չեն բավարարվում աշխատավորների հարաճուն պահանջմունքները կենցաղային սպասարկման ոլորտում, վատ են օգտագործվում յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում աշխատավորների սպասարկման անհրաժեշտ պայմաններ ստեղծելու հնարավորությունները։ Բնակչության կենցաղային սպասարկման մինիստրությունը մինչև օրս էլ չի կարողացել լվացքատների աշխատանքը այնպես կազմակերպել, որ մայրաքաղաքի բնակիչները



լայնորեն օգտվեն դրանց ծառայություններից, որ մեքենայացված լվացքը մուտք գործի կենցաղ այնպես, ինչպես քիմիական մաքրումը։

Չնայած սպասարկման ոլորտում նկատվող բացասական երևույթների դեմ վերջին ժամանակներս ուժեղացված պայքարին, առևտրի, հասարակական սննդի ցանցում, կենցաղային ծառայության օբյեկտներում դեռևս շարունակում են տեղ գտնել թերակշռելու, դրամաշորթության, պատվերներն անորակ կատարելու և դրանց ժամկետները ձգձգելու դեպքեր։ Թույլ պայքար է տարվում սոցիալիստական սեփականության հափշտակումների, կաշառակերության, սպեկուլյացիայի և զանազան կարգի չարաշահումների դեմ։

Սպասարկման ոլորտում ամեն կարգի չարաշահումների դեմ պայքարն ուժեղացնելու հարցը առաջնահերթ նշանակություն ունի։ Այս գործում կարևոր դեր է տրված բանվորական վերահսկողությանը։ Անհրաժեշտ է ըստ ամենայնի պաշտպանել և քաջալերել բանվորական վերահսկիչների ջանքերը, բարձրացնել նրանց հեղինակությունը, ամենայն սրությամբ և գործուն արձագանքել ահազանգերին, հաշիվ պահանջել բնակչության սպասարկման համար պատասխանատու պաշտոնատար անձանցից։

Աշխատավորության ջանքերն ուղղելով հնգամյա պլանի կատարմանը, հիշատակված բոլոր խնդիրների ու պրոբլեմների լուծմանը, քաղաքային կուսակցական կազմակերպությունը պետք է հասնի այն բանին, որ չլինի ոչ մի ետ մնացող ձեռնարկություն, ոչ մի ետ մնացող կազմակերպություն, որ յուրաքանչյուր ամիս ու եռամսյակ և ամբողջ տարին պլանը կատարվի ու գերակատարվի բոլոր կոլեկտիվների կողմից, բոլոր ցուցանիշներով, պետք է աշխատավորական կոլեկտիվներին նպատակամղել աշխատանքի արդյունավետությունն ու որակը բարձրացնելու, խնայողության ռեժիմը խստագույնս պահպանելու, հումքային, վառելիքաէներգետիկ, նյութական, ֆինանսական ու աշխատանքային ռեսուրսները ռացիոնալ օգտագործելու խնդրին, ամրապնդի գիտության կապն արտադրության հետ, հաստատակամորեն լուծի քաղաքի տնտեսության հետագա վերելքի խնդիրները, պարզորոշ տեսնի քաղաքի վաղվա օրը, հստակ պատկերացնի այն ուղիները, որոնցով պետք է զարգանա Երևանն ապագայում։

Ընկերնե՛ր։

Երևանի հետագա ճիշտ զարգացումը, նրա համակողմանի բարգավաճումն ապահովելու, մեր մայրաքաղաքը ավելի բարեկարգ դարձնելու համար անհրաժեշտ է, որ մենք ամենայն լրջությամբ ձեռնամուխ լինենք մի ամբողջ շարք ընդհանուր պրոբլեմների լուծմանը։ Դրանցից մի քանիսի վրա հարկ է հրավիրել պլենումի մասնակիցների ուշադրությունը։

Երևանի զարգացումն ընթացել է շատ արագ տեմպերով։ Այսպես, եթե քաղաքը 1950 թվականի հունվարի 1-ին ունեցել է 301,3 հազար բնակիչ, ապա արդեն 1978 թվականին այդ թիվն անցել է մեկ միլիոնից, իսկ 1982 թվականի հունվարի 1-ին Երևանն ունեցել 1092,4 հազար բնակիչ։ Ընդ որում բնակչության աճը տեղի է ունեցել ինչպես բնական աճի հաշվին, այնպես էլ հանրապետության և առհասարակ երկրի այլ քաղաքներից ու շրջաններից կատարված ներհոսի հետևանքով։

Այսօր մեր առջև ամբողջ հասակով ծառանում են քաղաքի զարգացման, նրա բնակչության թվական աճի պրոցեսը գիտականորեն, հիմնավորված կառավարելու և կարգավորելու պրոբլեմը, մայրաքաղաքի մեխանիկական աճը հնարավորին չափով նվազագույնի հասցնելու, ներհոսը խստիվ սահմանափակելու, Երևանը որոշ չափով բեռնաթափելու աշխատանքների իրականացման, քաղաքի ինֆրակառուցվածքը շուտափույթ բարելավելու հարցերը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հանձնարարությամբ հանրապետության կառավարությունը հատուկ որոշումով Հայկական ՍՍՀ պետպլանին ու պետշինին, Երևանի քաղաքային սովետի գործկոմին, նրանց գիտահետազոտական և նախագծային կազմակերպություններին պարտավորեցրել է համապատասխան ծրագիր մշակել այդ խնդրի իրականացման համար։ Տվյալ ծրագիրը պետք է սերտորեն շաղկապված լինի հանրապետությունում տարաբնակեցման երկարաժամկետ քաղաքականության և ծրագրի հետ։

Այս կապակցությամբ արդյունաբերության, ինչպես նաև ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատողների և կուսակցական կազմակերպությունների առջև այսօր խնդիր է դրվում ապահովել արտադրանքի թողարկման ծավալների հետագա աճը՝ առանց աշխատողների թվի ավելացման։ Ավելին, անհրաժեշտ է դրան հասնել՝ կրճատելով աշխատողների թիվը։

Վերջին տարիներս մենք բազմիցս նշել ենք, որ հանրապետության արդյունաբերությունը պետք է զարգանա առավելապես սակավնյութատար, սակավէներգատար, ինչպես նաև աշխատատար ճյուղերի զարգացման ուղղությամբ։ Այս բանաձևը կիրառելի է այն ռեգիոններում, ուր թե՛ այժմ և թե տևական ժամանակաշրջանում առկա կլինեն հավելյալ ազատ աշխատանքային ռեսուրսներ։

Իսկ Երևանի, Լենինականի, Կիրովականի և հանրապետության մյուս խոշոր քաղաքների ու կենտրոնների արդյունաբերությունը պետք է զարգանա նաև նյութեր, էներգիա և աշխատուժ խնայող արտադրությունների ուղղությամբ։ Այդ քաղաքների հետագա հեռանկարային զարգացումը անհրաժեշտ է որոշել՝ ելնելով աշխատանքային ռեսուրսներով դրանց ինքնաապահովման սկզբունքից, հիմք ընդունելով բնակչության թվի բնական աճը, բացառելով դրսից կատարվող ներհոսը, ընդհակառակը, հաշվի առնելով այդ քաղաքների աշխատանքային ռեսուրսների հնարավոր օգտագործումը համապատասխան ագլոմերացիաներում։

Նոր աշխատատեղեր պետք է ստեղծել այն ժամանակ և այնտեղ, երբ և որտեղ առկա կլինեն ազատ աշխատանքային ռեսուրսներ։

Հեռանկարային պլանավորման ժամանակ պետք է նկատի ունենալ այս հանգամանքները, որպեսզի հանրապետության ժողովրդական տնտեսությունը զարգանա ճիշտ ուղղությամբ։ Աշխատուժի խնայողության գործոնը Երևանի համար հենց այսօր իսկ հրատապ բնույթ է կրում, քանի որ քաղաքում շարունակվում է աշխատանքային ռեսուրսների ներհոսը, մեծացնելով բնակչության թիվը։ Իսկ աշխատուժի խնայողության մենք կարող ենք հասնել բացառապես գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու, արտադրության կազմակերպումը կատարելագործելու, տեխնոլոգիան բարելավելու և այդ հիման վրա աշխատանքի արտադրողականությունը կտրուկ բարձրացնելու ուղիով։ Մյուս կողմից, մենք պետք է աշխատանքի արտադրողականության աճի հասնենք սարքավորումներն ավելի արդյունավետ օգտագործելով, կցաններ, ավտոմատ մանիպուլյատորներ, ռոբոտներ կիրառելու միջոցով և այլն։

Սակայն աշխատուժի խնայողության, աշխատողների թիվը չավելացնելու կենսական անհրաժեշտությունը մայրաքաղաքի ղեկավար շատ կադրեր բավարար չափով չեն գիտակցում, նրանց համար դա հոգեբանություն չի դարձել։

Այսօր էլ մեր արդյունաբերության դրոշակակիր Լենինյան շրջանի ղեկավար աշխատողները որպես դրական փաստ նշում են այն հանգամանքը, թե արտադրության ծավալի աճի 70 տոկոսը ստացվել է աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու հաշվին։ Իսկ ուրիշ շրջաններում այդ մասին պարզապես չեն խոսում միայն այն պատճառով, որ իրենց մոտ այդ ցուցանիշը անհամեմատ ցածր է։ Օրինակ՝ Շահումյանի շրջանում 1981 թվականին այն կազմել է 25 տոկոս։ Իհարկե, սրա կողքին 70 տոկոսը, ինչ խոսք, շատ լավ է դիտվում։

Բայց հարց տանք ընկ. Ք. Մանդալյանին, թե այդ ցուցանիշը և ընթացիկ տարվա առաջին եռամսյակում արդյունաբերական անձնակազմի թվի ավելացումը 2,2 տոկոսով համապատասխանո՞ւմ են արդյոք 11-րդ հնգամյակում արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման նպատակով կուսակցության Լենինյան շրջկոմի մշակած միջոցառումների պլանին։

Արտադրանքի ծավալի ամբողջ աճը ստանալ աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին, ավելին՝ աշխատողների թվի կրճատումով հանդերձ՝ ահա այս է արտադրության արդյունավետության բարձրացման իրոք արդյունավետ աշխատանքը։ Սա է խնդիրը։

Օրինաչափ կլինի, եթե կուսակցության Երևանի քաղկոմը աշխատանք տանի այն ուղղությամբ, որ ձեռնարկություններն ու կազմակերպությունները



պլանով սահմանված քանակից ավելի աշխատողներ չընդունեն, իսկ լրացուցիչ կարիքներն ապահովեն միայն իրենց իսկ աշխատողների վերաբաշխման միջոցով, նրանց հաշվին, ովքեր արտադրողականության բարձրացման, նոր տեխնիկայի, տեխնոլոգիայի արմատավորման, աշխատանքի ավելի լավ կազմակերպման շնորհիվ կազատվեն այս կամ այն տեղամասում։ Դա տնտեսական ու տեխնիկական ղեկավարներին կստիպի ավելի լրջորեն վերաբերվել այդ կարևորագույն հարցերին։

Աշխատախնայողության նպատակով մենք պետք է ակտիվ կերպով ավտոմատացված սիստեմներ ներդնենք ոչ միայն նյութական արտադրության, այլև սպասարկումների ամենատարբեր ոլորտներում։

Կարևոր է ինչպես հանրապետության, այնպես էլ նրա մայրաքաղաքի արդյունաբերության ճյուղային կառուցվածքի բարելավումը։ Ընկեր Ներսիսյանի զեկուցման մեջ ճիշտ դրվեց մայրաքաղաքից մի շարք ձեռնարկություններ դուրս բերելու անհրաժեշտության հարցը։ Իսկապես, Երևանում կան ձեռնարկություններ, որոնք, նախ, չեն համապատասխանում քաղաքի արդյունաբերության կառուցվածքին, երկրորդ, մի շարք ձեռնարկություններ իրենց նշանակությամբ, իսկ մի քանիսն էլ իրենց տեխնոլոգիայի մակարդակով այնպիսին են, որ կարող են տեղադրվել քաղաքից դուրս։

Մայրաքաղաքում այդպիսի արտադրությունների ստեղծումը ժամանակին բացատրելի էր, քանի որ պահանջված որակավորման աշխատուժը կենտրոնացված էր միայն Երևանում, բացի այդ ուրիշ շրջանների տնտեսական զարգացման աստիճանն էլ այլ հնարավորություն չէր ընձեռում։ Բայց, ցավոք, Երևանի արդյունաբերության հետագա զարգացումն էլ բավարար շրջահայաց չէր կատարվում, որը հանգեցրեց արդյունաբերության խայտաբղետության և ավելորդ բազմաճյուղության, էլ չենք ասում էկոլոգիական պահանջները քամահրելու մասին։ Կարծում եմ, ժամանակն է շտկելու վիճակը, լրջորեն ձեռնամուխ լինելու Երևանի արդյունաբերության կառուցվածքի կատարելագործման հեռանկարային պլանի մշակմանը՝ նկատի ունենալով դրա իրագործումը մինչև 2000 թվականը։

Երևանի արդյունաբերական կառուցվածքի փոխակերպումը պետք է կատարվի խելամտորեն, գիտական հիմքի վրա, խստիվ հաշվի առնելով պետական շահերը, արդյունաբերության, ամբողջությամբ վերցրած հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարները։ Այն պետք է կողմնորոշվի դեպի նվազ նյութատարություն, նվազ էներգատարություն, դեպի աշխատախնայողություն, էկոլոգիապես մաքուր տեխնիկայի ու տեխնոլոգիայի կիրառություն, գիտատար արտադրանքի թողարկում։

Երևանի քաղկոմը, կուսակցության շրջկոմները դեռևս չեն հասել գիտատեխնիկական առաջընթացի անհրաժեշտ արագացման, արտադրության մեջ կառավարման ավտոմատացված սիստեմների, տեխնոլոգիական պրոցեսների կառավարման ավտոմատացված սիստեմների և այլ համակարգերի ակտիվ ներդրման, որոնք աշխատանքի արտադրողականության և աշխատանքի որակի բարձրացման, կառավարման բարելավման գլխավոր գործոններն են։

Այդ ասպարեզում նրանք արդյունավետ չեն օգտագործում մայրաքաղաքում առկա գիտական ու տեխնիկական հզոր պոտենցիալը։ Արդարացի քննադատության են արժանի ինչպես ակադեմիական, այնպես էլ ճյուղային գիտահետազոտական ինստիտուտների, կազմակերպությունների ղեկավարներն ու կուսակցական կազմակերպությունները արտադրության հետ ունեցած թույլ կապերի, կատարվող հետազոտությունների դեռևս ոչ բարձր արդյունավետության համար։

Դեռևս 1973 թվականին կուսակցության 26 կոմիսարների շրջանային կազմակերպության կոնֆերանսում խստիվ քննադատվեց այն իրողությունը, որ առկա գիտական ուժերը վատ են ներգրավվում շրջանի ձեռնարկություններում տեխնիկական առաջընթացն արագացնելու կոնկրետ խնդիրների լուծման մեջ, որ շրջանում մաթեմատիկական մեքենաների ինստիտուտի, այլ գիտահետազոտական ինստիտուտների և գիտական կազմակերպությունների առկայության պայմաններում շրջանի ոչ մի ձեռնարկությունում չեն ներդրվել կառավարման





ավտոմատացված ոչ մի սիստեմ։ Խոսքը վերաբերում էր սիստեմի կոմպլեքսային ներդրմանը և ոչ թե նրա մասնակի կիրառմանը։

Իսկ ինչպիսի՞ն է վիճակն այսօր։ Կարծում եմ, ընկ. Ս. Մելքոնյանը կհամաձայնի, եթե ասենք՝ գրեթե նույնը։ Ճիշտ է, մի քանի ձեռնարկություններում, ինչպիսին օրինակ, «Հայէլեկտրալույս» միավորումն է, աշխատանք կատարվել է էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, կառավարման ավտոմատացված սիստեմ ներդնելու նպատակով։ Սակայն դրանց թիվն աննշան է, իսկ արտադրական ձեռնարկությունների հետ շրջանի գիտնականների կապերը այնպես էլ չեն ամրապնդվել, նրանց միջև չկա անհրաժեշտ ու ցանկալի արգասավոր համագործակցություն։

Կամ՝ քանի անգամ է ասվել, որ անհրաժեշտ է ակտիվացնել բուհական գիտության ջանքերը, ուսանողների ուժերը ծառայեցնել ժողովրդական տնտեսության այս կամ այն խնդրի լուծման, արտադրական կոլեկտիվներին գիտական և տեխնիկական օգնություն ցույց տալու գործին։ Կուսակցության Մյասնիկյանի շրջկոմը (ընկ. Գ. Մուրադյան) կոնկրետ և լուրջ չի զբաղվում այդ հարցերով, հանդես չի բերում գործնական նախաձեռնություն, մինչդեռ բուհերի գերակշռող մեծամասնությունը գտնվում է այդ շրջանում։

Ցանկանում ենք քաղաքի, հատկապես Օրջոնիկիձեի ընկերների ուշադրությունը սրել Երևանում բնապահպանական միջոցառումների իրականացման, կառավարման և կոորդինացման գործում եղած զգալի թերությունների վրա։

Բնակչության բարձր խտությունը, քաղաքի հիմնական տարածքի՝ փոսորակում գտնվելը, արդյունաբերության և ավտոտրանսպորտի համակենտրոնացումը, մեծ թվով մանր կաթսայատների առկայությունը, կլիմայական և տեղագրական յուրահատուկ պայմանները, որոնք դժվարացնում են ջրամբարների և մթնոլորտի ինքնամաքրման պրոցեսները, նպաստում են Երևանի շրջակա բնական միջավայրի աղտոտման աճին։

Երևանի բնական միջավայրի առողջացման նպատակով իրականացվում են միջոցառումներ, որոնք նախատեսված են բնության պահպանության պլաններով և վերադաս մարմինների սահմանած առաջադրանքներով։ Գործարկվել է աերացիայի կայանը, որ տարեկան մաքրում է 195 միլիոն խորանարդ մետր ջուր, մեկուսի մաքրման կառուցվածքներ են ստեղծվել թեթև և տեղական արդյունաբերության, ավտոտրանսպորտի մի շարք ձեռնարկություններում։

Շրջանառու ջրամատակարարման սիստեմ է գործում առանձին քիմիական ձեռնարկություններում, վերակառուցվել են օդափոխման սիստեմները, հերմետիկացվել են էլեկտրոլիզի վաննաները և գործարկվել է գազամաքրիչ կայանքը Քանաքեռի ալյումինի գործարանում, փակվել է կալցիումի կարբիդի արտադրությունը, կառուցվում է գազամաքրման կայանք «Պոլիվինիլացետատ» արտադրական միավորումում, ստեղծվել են ավտոմոբիլների արտանետած գազերի թունավորվածության աստիճանն ստուգելու և նվազեցնելու 57 ստուգիչ-կարգավորիչ կետեր կամ տեղամասեր և այլն։

Այնուամենայնիվ, Երևանի շրջակա միջավայրի վիճակը դարձյալ շոշափելիորեն չի բարելավվում։

Օրջոնիկիձեի գործկոմը, ավտոտրանսպորտի մինիստրությունը, բնակարանային-կոմունալ տնտեսության մինիստրությունը, «Հայգունմետը», շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը և այլ գերատեսչություններ՝ որպես պատվիրատուներ, ինչպես նաև կապալային շինարարական կազմակերպությունները՝ արդյունաբերական շինարարության մինիստրությունը, «Հայմոնտաժհատուկշինը», «Հայգունմետշինը» և այլն, պատշաճ պատասխանատվություն չեն դրսևորում բնապահպանական օբյեկտների կառուցման համար հատկացվող միջոցների իրացման գործում։ Հիշյալ մինիստրությունների և գերատեսչությունների ոչ բավարար պատասխանատու վերաբերմունքի ուղղակի հետևանքն այն է, որ բնապահպանական ոչ մի օբյեկտ չի գործարկվել ժամանակին և առանց էական թերությունների։ Ջեռուցման միացյալ կայանի կառուցումը ձգձգելու պատճառով չի լուծվում քիմիական արդյունաբերության մի խումբ ձեռնարկությունների կեղտաջրերի մաքրման հարցը։ Անբավարար է



իրականացվում վերահսկողությունը ավտոտրանսպորտի արտանետումների նորմաների պահպանման նկատմամբ, ձևական բնույթ են կրում արտանետվող գազերի ստուգումները պետավտոտեսչության և տեխսպասարկման կայանների կողմից։

Մի՞թե այս ամենը չեն տեսնում այնպիսի մասնագիտացված կազմակերպություններ, ինչպիսիք են հիդրոօդերևութաբանության և բնական միջավայրի վերահսկողության վարչությունը, գազամաքրման Հայաստանի ռեգիոնալ տեսչությունը, պետստանդարտի Հայաստանի հանրապետական վարչությունը, պետսանվերահսկողությունը և պետավտոտեսչությունը։ Իսկ ինչո՞ւ նրանք ինչպես հարկն է չեն իրագործում Երևանի բնական միջավայրի առողջացման նպատակին ուղղված իրենց վերահսկչական ֆունկցիաները։

Այս բոլոր հարցերը պետք է գտնվեն Հայաստանի կոմկուսի Երևանի քաղկոմի և Օրջոնիկիձեի գործկոմի սևեռուն ուշադրության կենտրոնում։

Ընկերնե՛ր։ Հայտնի է, թե կուսակցությունն ու կառավարությունը ինչպիսի մեծ նշանակություն են տալիս բնակարանային շինարարության հարցերին։ Սակայն մեր մայրաքաղաքում բնակարանային շինարարության իրականացումն ունի լուրջ թերություններ ու վրիպումներ, և մենք, խոսելով այդ բնագավառում ձեռք բերած խոշոր նվաճումների մասին, պարտավոր ենք միևնույն ժամանակ քաղաքի կուսակցական կազմակերպության, համապատասխան մինիստրությունների և գերատեսչությունների, վերջապես՝ հանրապետության Մինիստրների խորհրդի ուշադրությունը սրել այս կարևոր հարցի վրա։

Այսօր հարկավոր է ամբողջ ուշադրությունն ուղղել տարեկան պլաններով նախատեսված բնակարանների շահագործումն ապահովելուն։ Իսկ ինչպիսի՞ն է պատկերն իրականում։ Տասներորդ հնգամյակի բոլոր հինգ տարիներին բնակարանների գործարկման պլանը ձախողվել է և պակաս է հանձնվել զգալի քանակությամբ բնակելի տարածություն։

Այստեղ մեղքը, ինչպես արդեն ասվեց, առաջին հերթին շինարարներինն է, որոնք տարեցտարի ձախողում են բնակելի շենքերի գործարկման պլանները։

Բայց, միևնույն ժամանակ, գործարկվելիք բնակտարածության պլանավորված ծավալն ինքը, ընդհանուր առմամբ, անբավարար է։ Պատճառը թե՛ պետական կապիտալ ներդրումների անբավարար ծավալներն են և թե միութենական կազմակերպությունների միջոցների թույլ ներգրավումը։

Բնակարանային շինարարության անմխիթար վիճակը բացատրվում է նաև նրանով, որ շինարարության պլանները պատշաճ ձևով չեն համաձայնեցվում կոմպլեքսային նախագծային-նախահաշվային փաստաթղթերը ժամանակին նախապատրաստելու հետ, կապալային կազմակերպությունների ու շինարարական ինդուստրիայի կարողությունների և նյութատեխնիկական ապահովման հնարավորությունների հետ։

Միասնական պատվիրատուի՝ Օրջոնիկիձեի գործկոմի կապիտալ շինարարության գլխավոր վարչության աշխատանքի թերությունները և ակտիվության պակասը խաթարումներ և դժվարություններ են ստեղծում բնակարանային շինարարության հեռանկարային ու ընթացիկ կոմպլեքսային պլանների մշակման գործում, անընդհատ պլանավորման և հարահոս շինարարության սիստեմի արմատավորման ասպարեզում։

Հիշյալ թերությունների վերացումը պահանջում է սիստեմատիկորեն կատարելագործել բնակարանային շինարարության պլանավորումը, վերահսկողությունն ու կառավարումը։ Հարկավոր է խստիվ կանոնարկել նաև բնակարանային հաշվառման, բնակմակերեսի պլանավորման ու բաշխման, բնակեցման ողջ գործը, կազմակերպել դրա կառավարման և ճշտիվ կատարման խիստ վերահսկողությունը։

Մինչդեռ ո՛չ հանրապետության պետպլանը, ո՛չ պետշինը, ո՛չ Օրջոնիկիձեի, ո՛չ էլ գլխավոր կապալառուն՝ արդյունաբերական շինարարության մինիստրությունը, չեն մշակել քաղաքի կապիտալ շինարարության մեջ տիրող վիճակը բարելավելու կոնկրետ ծրագիր, իսկ հանրապետության Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ ընկ. Հ. Ա. Հայրապետյանը պատշաճ պահանջկոտություն չի ցուցաբերում նրանց նկատմամբ։

ներ, պահանջում է հետևողական, համառ դաստիարակչական աշխատանքի, ստույգ կշռադատված քաղաքականության, հստակ մշակված մայրաքաղաքային վարվեցողության նորմերի ու կանոնների արմատավորման միջոցով հասնել երևանյան բնավորության, երևանյան սոցիալիստական ավանդույթների ձևավորման, որոնք պիտի ներառնեն այն ամեն արժեքավորը, լավը, վսեմը, ինչը բովանդակում են մեր հնօրյա առաջադիմական ժողովրդական ավանդույթները, արմատավորել նիստուկացի մայրաքաղաքային կուլտուրա, ուր քաղքենիության նշույլ անգամ չլինի։ Հարկավոր է հիշել, որ ոչ մի ճարտարապետությամբ չես փոխարինի քաղաքի կենցաղի, նրա ավանդույթների գեղեցկությունը, նիստուկացի գեղեցկությունը, քաղաքի բնակիչների բարոյական վեհ նկարագիրը։

Հարկավոր է վճռական կռիվ հայտարարել մեր առանձին քաղաքացիների ինքնագոհությանը, գավառայնությանը, ինքնահիացմանը և սնապարծությանը։ Երևանցին պետք է ունենա արժանապատվության վեհ զգացում, լինի բարձր կուլտուրայի տեր, բարոյապես վսեմ, բարեկիրթ քաղաքացի։ Սա բարդ խնդիր է։ Այս պրոցեսը պետք է առաջ մղել և ղեկավարել սովետական ապրելակերպի, մեր բարոյական կոդեքսի հստակ չափանիշների հիման վրա։

Ուստի շատ կարևոր է, որ կուսակցության քաղկոմն ու շրջկոմները, քաղսովետն ու շրջսովետները ավելի ակտիվորեն զբաղվեն այդ հարցերով, մշտապես բարելավեն կոմունիստական դաստիարակության գործը։

Եվ ապա։ Կուսակցության Երևանի քաղկոմը, շրջկոմները, քաղսովետի ու շրջսովետների գործկոմները պետք է կշռադատված և հետևողական աշխատանք տանեն մայրաքաղաքում աշխատավորների հանգստի և խելացի ժամանցի հնարավորություններ ստեղծելու համար։ Խոսքը վերաբերում է հանգստի ու ժամանցի ինդուստրիա ստեղծելու անհրաժեշտությանը։ Դրա համար պետք է օգտագործել զբոսայգիները, պուրակները, համապատասխան շինությունները և այլն։ Անհրաժեշտ ենք համարում ուշադրություն հրավիրել Հրազդանի ձորի՝ որպես հանգստի ու ժամանցի գոտու նկատմամբ եղած աններելի վերաբերմունքի վրա։ Բնության այդ պարգևից երևանցիները գրեթե չեն օգտվում։ Եվ իզուր։ Այս հարցում քաղկոմն ու քաղսովետը պետք է հանդես բերեն գործարար նախաձեռնություն, ստեղծեն հանգստի զանգվածային գոտի, որն ընդգրկի Հրազդանի ձորը, Ծիծեռնակաբերդը, Արարատյան զանգվածի դաշտերը՝ ընդհուպ մինչև Երևանյան լիճը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության կառավարությունը, վստահ եմ, կպաշտպանեն այդ նախաձեռնությունը և կապահովեն դրա իրացումը։

Մեր ժողովրդի պատմական դժվարին ճակատագիրը իր արտահայտությունն է գտել նաև այն բանում, որ նա կառուցել է շատ մայրաքաղաքներ։ Մեծ Հոկտեմբերով վերածնված ժողովրդի ամենախոշոր և ամենագեղեցիկ մայրաքաղաքն է Երևանը, հայկական սոցիալիստական պետության հավերժական քաղաքամայրը։ Եվ նա պետք է իր մշտական, ներդաշնակ զգացումով, իր տեսքով պայծառորեն մարմնավորի հայ ժողովրդի հուժկու ծաղկումը, նրա երջանիկ, նորոգ կյանքի, հիասքանչ սոցիալիստական ոգին և բովանդակությունը։

Ընկերնե՛ր։

Հանրապետության հասարակական-քաղաքական, տնտեսական ու մշակութային կյանքում Երևանի առաջատար դերով է պայմանավորվում նաև քաղաքային կուսակցական կազմակերպության, նրա բոլոր օղակների կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի բացառիկ կարևորությունը։

Կուսակցության Երևանի քաղկոմի խնդիրն է՝ հենվելով կուտակված հարուստ փորձի վրա, է՛լ ավելի բարձր աստիճանի հասցնել տնտեսության ղեկավարման մակարդակը, աշխատավորների դաստիարակության ամբողջ գործը, կազմակերպչական ու քաղաքական ողջ աշխատանքը, որպեսզի հնարավորին չափ կարճ ժամկետում վերացվեն թերությունները, լուծվեն այն հարցերն ու պրոբլեմները, որոնց մասին խոսվեց պլենումում, հաջողությամբ կատարվեն կուսակցության XXVI համագումարի որոշումները, քաղաքի առջև ծառացած տնտեսական ու կուլտուրական շինարարության մեծ ու պատասխանատու խնդիրները։



Նախ և առաջ անհրաժեշտ է ըստ ամենայնի բարելավել կադրային աշխատանքը, որը, ինչպես հայտնի է, կուսակցական ու պետական ղեկավարման հիմնական օղակն է։ Կուսակցությունը բազմիցս նշել է, որ իր կադրային քաղաքականությունը հզոր լծակ է, որի միջոցով նա ներգործում է հասարակական զարգացման ընթացքի վրա։ Դա աշխատանքի այն տեղամասն է, որը պահանջում է կուսակցական բոլոր օղակների՝ սկսած սկզբնական կուսակցական կազմակերպություններից և վերջացրած Կենտկոմով, ամենօրյա սևեռուն ուշադրությունը։

Եթե ընդհանրապես ասելու լինենք, ապա Երևանի քաղաքային կազմակերպությունը հասել է գործերի վիճակի որոշակի բարելավման։ Շատ տեղամասեր ամրապնդված են փորձառու ընկերներով, որոնք խորապես կողմնորոշվում են էկոնոմիկայում, ընդունակ են իրենց ետևից տանելու աշխատավորական կոլեկտիվներին, հաջողությամբ լուծելու տնտեսական-քաղաքական ավելի բարդ խնդիրներ, հասնելու կայունորեն բարձր վերջնական արդյունքների։

Դրա հետ մեկտեղ, կադրերի հետ տարվող աշխատանքում դեռևս քիչ չեն թերությունները։ Մեզանում երբեմն ստացվում է այնպես, որ այս կամ այն ընկերոջը, առաջ քաշելով ղեկավար աշխատանքի, հաճախ չեն զբաղվում նրա դաստիարակությամբ, որը համապատասխաներ նրա նոր մակարդակին, նոր պաշտոնին, պահանջներ չեն ներկայացնում նրան, չեն ուղղում ժամանակին։ Այդ պատճառով աշխատանքում եղած թերություններն ու սխալները երբեմն խորանում են, և դա էլ հանգեցնում է անցանկալի հետևանքների։

1979 թվականին «Պլաստիկ» արտադրական միավորման գլխավոր դիրեկտոր նշանակվեց ընկ. Մ. Նազարյանը։ Դառնալով դիրեկտոր, նա անտեսեց այն կանոնը, որը պահանջում էր խորապես ուսումնասիրել տվյալ արտադրության յուրահատկությունները, աշխատողների, հատկապես նյութապես պատասխանատու անձանց բնութագրերը։ Կուսակցության Լենինյան շրջկոմը, քաղաքային կոմիտեն ևս, նրան համարելով փորձառու ղեկավար, չաշխատեցին հետը, թողեցին տեսադաշտից դուրս։ Եվ դրա հետևանքը եղան դիրեկտորի՝ ժամանակին չշտկված սխալ գործողությունները, որ սոցիալիստական սեփականության հափշտակման նախադրյալ ստեղծեցին ձեռնարկությունում։

Ընկ. Նազարյանը և միավորման կադրերի բաժնի պետ, նույն ինքը՝ կուսկազմակերպության քարտուղար ընկ. Գ. Խուդաղյանը, անպատասխանատվություն և անսկզբունքայնություն դրսևորեցին կադրերի ընտրության գործում։ Պոլիէթիլենային թաղանթի արտադրամասի պետ նշանակվեց ՍՄԿԿ անդամ Մ. Գևորգյանը, որը մինչ այդ, որպես «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման արտադրամասի պետ աշխատելիս, շահադիտական նպատակներով չարաշահել էր իր պաշտոնական դիրքը, որի համար 1979 թվականի հուլիսին ազատվել էր զբաղեցրած պաշտոնից և կուսակցական խիստ նկատողություն ստացել՝ հաշվառման քարտում գրանցմամբ հանդերձ։ Պատրաստի արտադրանքի պահեստի վարիչ էր ձևակերպվել ոմն Ավալյան (ի դեպ, առանց շրջգործկոմի աշխատանքի տեղավորման բաժնի գործուղման), որը 1979 թվականի դեկտեմբերից մինչև 1981 թվականի մայիսը առհասարակ ոչ մի տեղ չէր աշխատել։ Հենց սրանք էլ ոտնձգություն էին կատարել ժողովրդական բարիքի նկատմամբ։

Հասկանալի է, երկուսն էլ քրեական պատասխանատվության ենթարկվեցին, իսկ ընկ. Նազարյանին կուսակցության Լենինյան շրջկոմը հայտարարել է նկատողություն, գրանցելով հաշվառման քարտում։

Կուսակցության վերահսկողությունից, ազդեցությունից ու դաստիարակությունից դուրս չպետք է մնա ոչ մի ղեկավար աշխատող։ Կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների խնդիրն է՝ կուսակցության XXVI համագումարի պահանջների լույսի ներքո մշտապես բարելավել կադրերի ընտրության ու տեղաբաշխման, նրանց դաստիարակման գործը։

Մեզ հարկավոր են կազմակերպչական ընդունակություններով օժտված ղեկավարներ, որոնք բանիմաց են, ունեն կամային բարձր հատկություններ, գիտեն աշխատել մարդկանց հետ, նրանց ջանքերն ու ստեղծագործական եռանդը արդյունավետորեն նպատակամղել աշխատավորական կոլեկտիվների առջև դրված բարդ ու պատասխանատու խնդիրների լուծմանը։ Ժամանակակից ղեկավարի մեջ պետք է օրգանապես միահյուսվեն կուսակցականությունը, սկզբ-

թյունը։ Անհրաժեշտ է հետևողականորեն ձգտել յուրաքանչյուր ձեռնարկությունում և կազմակերպությունում հաշվառման ու հաշվետվության գործի բարելավմանը, փակել ժողովրդական բարիքի հափշտակմանը նպաստող սողանցքները։ Այդ գործում պետք է անձնապես պատասխանատվություն կրեն մինիստրությունների և գերատեսչությունների, ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարները։

Այժմ կազմակերպական-կուսակցական աշխատանքի ամենակարևոր հարցի՝ կուսակցական կոմիտեների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների ղեկավարման բարելավման հարցի մասին, որոնց, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, առաջնակարգ դեր է պատկանում կոմունիստական շինարարության մեծ ու բազմազան խնդիրների լուծման գործում։

Սկզբնական կազմակերպություններն այն հիմքն են, որի վրա, ինչպես ասում էր Վ. Ի. Լենինը, կառուցված է մեր կուսակցության ամբողջ շենքը։ Պլենումում ելույթ ունեցողները մանրամասն պատմեցին, թե Երևանի կուսքաղկոմը և կուսշրջկոմներն ինչպիսի աշխատանք են տանում սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակությունը բարձրացնելու, կուսակցության այդ կարևորագույն օղակների ղեկավարումը կատարելագործելու համար։

Ընդհանուր, առավել բնորոշ թերությունն այն է, որ բոլոր սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման նպատակով քաղկոմների ու շրջկոմների ծավալած աշխատանքում բացակայում է հետևողականությունը։ Գրեթե ամենուրեք նկատվում է, որ այս կամ այն կուսշրջկոմի տեսադաշտում հայտնվում են սահմանափակ թվով կազմակերպություններ։ Մյուս, առանձնապես սակավանդամ սկզբնական կուսկազմակերպություններով խիստ հազվադեպ են զբաղվում։ Ասվածը հատկապես բնորոշ է Սպանդարյանի, Մյասնիկյանի կուսշրջկոմներին։ Շրջկոմների, քաղկոմների, մեր ընդհանուր առաջնահերթ խնդիրն է՝ հասնել այն բանին, որպեսզի բոլոր սկզբնական կազմակերպությունները լինեն կուսակցության բարձր պահանջների մակարդակին, միշտ և ամեն ինչում հանդես բերեն ավելի շատ նախաձեռնություն և առավել սկզբունքայնություն։

Յուրաքանչյուր աշխատավոր մարդու մոտիկ ու հասկանալի դարձնել կուսակցության տնտեսական քաղաքականության պահանջները, համոզիչ ցույց տալ, որ հենց այդ քաղաքականությունն է համապատասխանում նրա կենսական շահերին, ուստի և յուրաքանչյուրի պարտքն է սեփական նախաձեռնությամբ, ստեղծագործական որոնումով նպաստել այդ քաղաքականության լիակատար հաջողությանը՝ այս է հրատապ խնդիրը։

Այդ դրույթները պետք է դրվեն մեր կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների գործունեության հիմքում։ Դրան պետք է նպատակամղեն իրենց աշխատանքը նաև ժողովրդական դեպուտատների մեր սովետները, արհմիությունները։

Այս խնդիրների կատարման ապահովումը նաև գաղափարախոսական ճակատի աշխատողների պարտքն է։

Գաղափարախոսական աշխատանքի ներգործունությունը մեծապես որոշվում է ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերի բովանդակած գաղափարների հարստությամբ։ Լավ հիմքերի վրա դրված պրոպագանդան, համագումարի, կուսակցության Կենտկոմի 1981 թվականի նոյեմբերյան պլենումի փաստաթղթերի խոր ուսումնասիրությունը դաստիարակչական ջանքերի արդյունավետության կարևորագույն գործոններն են։ Դրա հետ մեկտեղ, գաղափարական ներգործության արդյունավետությունը որոշվում է ոչ միայն պրոպագանդայի բովանդակությամբ, այլև այն վարելու արվեստով։ Կուսակցության XXVI համագումարը հարց դրեց՝ ամբողջ գաղափարական և դաստիարակչական աշխատանքը մղել «կենդանի ու հետաքրքրական ձևերով, առանց կաղապարած ֆրազների և պատրաստի բանաձևերի ստանդարտ հավաքածուի»։ Այստեղից էլ հենց բխում է վերակառուցման ուղղություններից մեկը՝ աշխատանքի ձևերի կատարելագործումը, հնացած, քարացած ձևերի փոխարինում նոր, արդի պայմաններին համապատասխանող ձևերի ներդրում։ Հարկավոր է վճռականապես հրաժարվել այն ամենից, ինչը հնացել է, վերացնել գործի նկատմամբ շաբլոն մոտեցման,



հաշվետվությունների մեջ «ընդգրկումներով» և կատարման ձևական նշումներով հրապուրվելու դրսևորումները։ Նոր ձևերն ու միջոցները պետք է հասցեագրվեն անմիջականորեն մարդուն, նրա մեջ դաստիարակեն ակտիվ կենսադիրք։

Յուրաքանչյուր կոլեկտիվի կյանքում հաստատել բոլշևիկյան սկզբունքայնության, ստեղծագործական ակտիվության ոգին, մարդկանց մեջ դաստիարակել անհաշտվողականություն թերությունների նկատմամբ, անհանդուրժողականություն մեր ապրելակերպից և մեր բարոյականությունից ամեն կարգի նահանջների նկատմամբ՝ սա է գաղափարախոսական աշխատողների ռեալ ներդրումը կուսակցության XXVI համագումարի առաջադրած տնտեսական, սոցիալական և այլ հարցերի լուծման գործում։

Ընկերնե՛ր։

Ընթացիկ տարին առանձնահատուկ տարի է, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 60-ամյակի տարի։ Սովետական մարդիկ պատրաստվում են մեր բազմազգ հայրենիքի պանծալի հոբելյանը նշելու որպես սովետական ժողովուրդների անխախտ բարեկամության ու եղբայրության մեծ ու պայծառ տոն, կուսակցության լենինյան ազգային քաղաքականության, ինտերնացիոնալիզմի հաղթահանդես։ Տոնակատարության ամբողջ նախապատրաստական աշխատանքը, որն այժմ ընթանում է հանրապետությունում, նախ և առաջ պետք է նպատակամղվի աշխատավորներին սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, սովետների մեր մեծ երկրի ժողովուրդների բարեկամության ու եղբայրության հետագա ամրապնդման ոգով դաստիարակելու վեհ գործի ըստ ամենայնի բարելավմանը, սոցիալիստական մրցության է՛լ ավելի լայն ծավալմանը՝ հանուն աշխատանքում, ժողովրդական տնտեսության զարգացման ասպարեզում նոր հաջողությունների ձեռքբերման։

Հարազատ կուսակցության շուրջը սերտ համախմբված՝ Երևանի, հանրապետության աշխատավորները, ինչպես բոլոր սովետական մարդիկ, ակտիվորեն պայքարում են ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների իրականացման, ընթացիկ տարվա և ամբողջությամբ վերցրած հնգամյակի պլանների կատարման ու գերակատարման համար, ձգտում են իրենց ծանրակշիռ ավանդը ներդնել մեր սովետական հայրենիքի հետագա ծաղկման գործում։

Մենք վստահ ենք, որ Հայաստանի կուսակցական կազմակերպության ղեկավարությամբ աշխատավորական Երևանը, հանրապետության բոլոր աշխատավորները պատվով կկատարեն իրենց առջև ծառացած բոլոր խնդիրները, նոր նվաճումներով կդիմավորեն սովետների երկրի փառապանծ հոբելյանը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության 60-ամյակը։ (Բուռն ծափահարություններ)։




ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները գործողության մեջ

# ՀՆԳԱՄՅԱԿՆԵՐԻ ՍՏԵՂԾԱՐԱՐ ԵՐԹՈՎ

**Ա. Մ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ**
Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի
նախագահի առաջին տեղակալ

ԱՅՍ ՏԱՐԻ ՄԵՐ ՄԵԾ ՀԱՅՐԵՆԻՔԸ նշում է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 60 տարին՝ պանծալի մի տարելից, որը բացառիկ նշանակություն ունի սովետական բազմազգ ժողովուրդների ճակատագրում։ Այդ տարեգրության պայծառ էջերից մեկը սոցիալ-տնտեսական այն փիթխարի նվաճումներն են, որին մեր երկիրը հասել է հնգամյակների ընթացքում։

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, իրականացնելով լենինյան իմաստուն ազգային քաղաքականությունը, ապահովեց մեր երկրի բոլոր ազգերի ու ժողովուրդների ներդաշնակ զարգացումը սոցիալ-տրնտեսական ու քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում։

Հայ ժողովուրդը սեփական փորձից գիտե, թե որքան դժվար էր առաջին համաշխարհային պատերազմի, ցեղասպանության, սովի ու համաճարակի հետևանքով ամայացած Հայաստանում նոր հասարակարգի հիմնադրումը։

Լենինը 1919 թվականի ապրիլին գրել է. «Մենք ուզում ենք անհապաղ սոցիալիզմ կառուցել այն նյութից, որը մեզ թողել է կապիտալիզմը՝ երեկվանից այսօր…»։ Բայց քայքայված հինավուրց Հայաստանում՝ ցարական Ռուսաստանի այդ ծայրամասային գավառում, թշվառությունն էր իշխում, և ամեն ինչ պետք է սկսվեր սկզբից, ոչնչից։

Եվ եթե բազմաչարչար հայ ժողովուրդը տնտեսական առումով խիստ անբարենպաստ պայմաններում սկսեց իր սոցիալ-տնտեսական զարգացման առաջին քայլերը, ապա քաղաքական ու հոգեբանական իմաստով այդ պայմանները շատ բարենպաստ էին։ Հայ աշխատավորությունը գրկաբաց ընդունեց սովետական իշխանության հաստատումը։

Չէ՛ որ մեր ժողովուրդը վերջապես ազատագրվեց ազգային ու սոցիալական դարավոր կեղեքումից, ստեղծեց սովետական սոցիալիստական նոր պետություն և տոգորվեց երկիրը շենացնելու խանդավառությամբ ու նոր կյանք կերտելու վճռականությամբ։ Հայ ժողովրդի դարերով կուտակված շինարարական եռանդը, ստեղծագործական ձիրքը ելք էին որոնում և շնորհիվ սոցիալիստական կարգերի՝ գտան այդ ելքը։ Լենինյան գաղափարների և վերածնվող ազգերի ջերմ եղբայրության հովանու տակ ընդմիշտ ազատագրված Հայաստանի աշխատավորությունը, եղբայրական Ռուսաստանի անտրիտուր օգնությամբ, կոմունիստական կուսակցության լենինյան ղեկավարությամբ վերականգնեց ավերված հայրենիքը։

Դժվար է այսօր առանց հուզմունքի թերթել ժամանակի պարբերական մամուլը և չզգալ այն լուսաշող մթնոլորտը, այն բուռն խնդությունը, որով հա-



մակված հանրապետության աշխատավորությունն ընձեռնեց սոցիալիզմի կառուցման առաջին հնգամյա պլանի կենսագործումը։

Եվ ահա, Սովետական Հայաստանը, կամավոր կերպով դառնալով Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների հզոր Միության իրավահավասար անդամ, սկսեց սոցիալիզմի կառուցման հիմքերն արկանել։

Աշխատանքային այդ խանդավառությունը, ստեղծարար հուժկու ջանքերը հայ ժողովրդի անբաժան ուղեկիցները եղան անցած տասը հնգամյակների վերընթացում, որոնց հանրագումարը ժողովրդական տնտեսության, գիտության, մշակույթի այն վառ ծաղկումը եղավ, որն այսօր բնորոշում է մեր հանրապետության սոցիալական կերպարը։

Սովետական Սոցիալիստական Հայաստանն այսօր իր տնտեսական, գիտատեխնիկական, հասարակական ու մշակութային զարգացմամբ ընթանում է կոմունիզմի կառուցման ուղիով, ՍՍՀՄ եղբայրական ազգերին ու ժողովուրդներին համաքայլ։

Հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման յուրաքանչյուր հնգամյակ իր առջև ծառացած խնդիրների բարդությամբ ու բազմազանությամբ տարբեր է եղել։ Ընդ որում յուրաքանչյուր նոր հնգամյակ առավել խոշոր քայլ է եղել հանրապետության արտադրաուժերի զարգացման, արտադրական ու գիտատեխնիկական պոտենցիալի հզորացման գործում։

Արդ, համառոտակի քննարկենք հանրապետության տասներորդ հնգամյակի արդյունքները, նշելով այն առաջնահերթ խնդիրները, որոնք սահմանված են հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման տասնմեկերորդ հնգամյակի պլաններով։

Հանրապետության էկոնոմիկայի զարգացման համար բացառիկ նշանակություն ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1975 թվականի ապրիլի 16-ի՝ «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» հայտնի որոշումը, որում մշակված էին մեր հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման բոլոր հիմնական հարցերը տասներորդ հնգամյակում և հեռանկարում։

Անհրաժեշտ է շեշտել, որ տասներորդ հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքները հաջողությամբ կատարված են։ Հնգամյակի բոլոր տարիներին հանրապետությունը պարգևատրվել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշներով։

Հանրապետության նյութական արտադրության դեմքը, ըստ էության, արդյունաբերությունն է ներկայացնում։

Տասներորդ հնգամյակի տարիներին արդյունաբերության արտադրանքը, օժանդակ ձեռնարկությունների արտադրանքի հետ միասին, ավելացավ 46,3 տոկոսով, հասարակական ամբողջական արդյունքի արտադրությունը (համադրելի գներով) ավելացավ 40,6 տոկոսով՝ նախատեսված 38 տոկոսի և ազգային եկամուտը՝ 43,8 տոկոսով՝ նախատեսված 37,7 տոկոսի փոխարեն։ Ազգային եկամտի բացարձակ հավելաճը կազմեց 1,4 միլիարդ ռուբլի՝ իններորդ հնգամյակի 1 միլիարդ ռուբլու փոխարեն։

Հնգամյակում լուրջ տեղաշարժեր կատարվեցին հասարակական արտադրության ճյուղային կառուցվածքում։

Հասարակական արտադրության ճյուղային կառուցվածքի փոփոխությունները *(տոկոսներով)*

| | Հասարակական արդյունքում | | Ազգային եկամտում | |
|---|---|---|---|---|
| | 1975 թ. | 1980 թ. | 1975 թ. | 1980 թ. |
| Արդյունաբերություն | 69,0 | 71,6 | 59,4 | 62,4 |
| Գյուղատնտեսություն | 9,9 | 8,0 | 13,2 | 10,3 |
| Շինարարություն | 12,6 | 10,7 | 13,2 | 11,1 |
| Նյութական արտադրության այլ ճյուղեր, այդ թվում՝ արտաքին առևտրի գործարքներից մուծումներ | 8,5 | 9,7 | 14,2 | 16,5 |

Այս աղյուսակից հետևում է, որ հնգամյակի ընթացքում հասարակական արտադրության ճյուղային կառուցվածքում կատարված այդպիսի տեղաշարժերը պայմանավորված են հիմնականում արդյունաբերության արագ և գյուղատնտեսության ու շինարարության զարգացման համեմատաբար ավելի դանդաղ տեմպերով: Հինգ տարվա ընթացքում հասարակական արդյունքի կազմում նման տեղաշարժերը տնտեսագիտորեն դժվար է հիմնավորված համարել: Առաջիկա երկու հնգամյակներում թերևս հնարավոր կլինի կանխել գյուղատնտեսության և շինարարության տեսակարար կշռի նվազման տեմպերը:

Հնգամյակում աշխատատար ճյուղերի արագ զարգացումը հնարավորություն ընձեռեց հասարակական արտադրության մեջ լրացուցիչ ներգրավելու 198 հազար մարդ, որից 78 հազարն արդյունաբերության մեջ: Չնայած աշխատատար ճյուղերի արագ զարգացմանը, հնգամյակում հասարակական աշխատանքի արտադրողականությունը աճեց 24,2 տոկոսով: Ազգային եկամտի աճի 63,4 տոկոսն ապահովվեց ի հաշիվ աշխատանքի արտադրողականության բարձրացման:

Որոշակի նվաճումներ կան նաև նյութական ծախսումների տնտեսման բնագավառում: Մեկ ռուբլի հասարակական ամբողջական արդյունքի վրա (շրջանառության հարկի և ամորտիզացիայի հետ միասին) նյութական ծախսերը կազմեցին 53,4 կոպեկ՝ 1975 թվականի 54,4 կոպեկի փոխարեն: Այս հոդվածով միայն հարաբերական տնտեսումը հնգամյակում կազմեց 250 միլիոն ռուբլի:

Տասներորդ հնգամյակում կարևոր քայլ կատարվեց ինչպես հասարակական արտադրության աճի, այնպես և նրա տեխնիկական մակարդակի բարձրացման գործում: Ժողովրդատնտեսության հիմնական ֆոնդերը (տարեվերջին) ավելացան 42,9 տոկոսով և հասան 14,4 միլիարդ ռուբլու: Ըստ որում արտադրաֆոնդերի աճը կազմեց 49 տոկոս և հասավ 9 միլիարդ ռուբլու:

Աշխատանքի ֆոնդազինվածությունը ժողովրդական տնտեսության մասշտաբով աճեց 30,5 տոկոսով: Բայց ֆոնդազինվածության բարձրացումը չզուգակցվեց աշխատանքի արտադրողականության համապատասխան աճով: Ֆոնդազինվածության և աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի նման հարաբերակցությունը հանգեցրեց ֆոնդահատույցի որոշ նվազման, որի հետևանքով ֆոնդահատույցը հանրապետության ժողովրդատնտեսության մասշտաբով 1975 թվականի 57,8 կոպեկից 1980 թվականին իջավ 55,0 կոպեկի:

Հնգամյակում հանրապետության արդյունաբերության զարգացումը զուգակցվեց մի շարք առանձնահատկություններով: Արտադրության արտադրանքի 1,8 միլիարդ ռուբլի հավելաճի 87 տոկոսը կատարվեց ի հաշիվ գործող ձեռնարկությունների ընդլայնման, վերակառուցման, տեխնիկական վերազինման ու գործող կարողությունների օգտագործման գործակցի բարձրացման և միայն 13 տոկոսը՝ ի հաշիվ նոր օբյեկտների կառուցման:

Տասներորդ հնգամյակում հանրապետության արդյունաբերության «Բ» խմբի ճյուղերի արտադրանքի աճն ավելի մեծ եղավ, քան «Ա» խմբինը: Արդյունաբերության «Բ» խմբի ճյուղերի արտադրանքի ծավալը հնգամյակում ավելացավ 52,4 տոկոսով, իսկ «Ա» խմբինը՝ 43,2 տոկոսով: Ընդ որում, զգալիորեն ավելացավ նաև հանրապետության ծանր արդյունաբերության ձեռնարկություններում լայն սպառման և կուլտուր-կենցաղային նշանակության ապրանքների թողարկումը: Նման տեղաշարժերը թելադրված էին բնակչության կենսամակարդակի բարձրացմանը վերաբերող ՍՄԿԿ XXV և ՀԿԿ XXVI համագումարների որոշմամբ:

Անցած հնգամյակում հանրապետության արդյունաբերության զարգացման մյուս առանձնահատուկ կողմը կարելի է համարել արտադրանքի բարձրացումը: 1980 թվականին հանրապետությունում թողարկվել է որակի բարձրագույն կատեգորիայի 2.600 անուն արտադրանք, որն ավելի քան 4 անգամ գերազանցում է 1975 թվականի մակարդակը: Պետական որականիշով արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը 1980 թվականին կազմեց 16,2 տոկոս՝ 1975 թվականի 6,5 տոկոսի փոխարեն: Այդպիսի հաջողությունը պայմանավորված էր այն լուրջ ուշադրությամբ, որ նվիրվեց որակի կառավարման համակարգին: Տասներորդ հնգամյակի վերջում սկսվեցին արտադրանքի կառավարման հանրապետական կոմպլեքսային համակարգի առաջին փուլի մշակումը և ներդրումը: Սրա հետ մեկտեղ, հնգամյակում էական տեղաշարժեր կատարվեցին հանրապետության արդյունաբերության ճյուղային կառուցվածքում: Այս բնագավառում հատկանշականն այն է, որ առավել արագ զարգացան ատոմային էներգետիկայի, էլեկտրոնային, ռադիոտեխնիկական, սարքաշինական արդյունաբերության, ճշգրիտ հաստոցաշինության ճյուղերը, որոնց արտադրանքի տեսակարար կշիռը հանրապետության արդյունաբերական արտադրանքի ծավալի մեջ (1980 թվականին) հասավ 21,7 տոկոսի՝ 1975 թվականի 17,8 տոկոսի փոխարեն: Նման տեղաշարժի շնորհիվ հանրապետությունն այդ բնագավառում Միության մեջ գրավեց իր որոշակի տեղը:

Արդյունաբերության ճյուղային կառուցվածքի տեղաշարժի արդյունքներից է աշխատատար ճյուղերի տեսակարար կշռի էական բարձրացումը: Այդ առումով նշված ճյուղերի զարգացման կողմնորոշումը տասներորդ հնգամյակում, ինչպես նաև հետագա տարիներին, պայմանավորված է հանրապետությունում բավականաչափ աշխատանքային ռեսուրսների առկայությամբ: Աշխատանքային ռեսուրսների լրիվ և ռացիոնալ զբաղվածության պրոբլեմը թելադրում է հետայսու ևս մեծ տեղ տալ հիշատակված ճյուղերի զարգացմանը: Անցած հնգամյակում լուրջ ուշադրություն հատկացվեց նաև մեքենաշինության նվազ մետաղատար ճյուղերի զարգացմանը: Հնգամյակում մեքենաշինության այդ ճյուղերի արտադրանքի տեսակարար կշիռը 7,4 տոկոսից հասավ 12,1 տոկոսի: Անհրաժեշտ ենք համարում այստեղ շեշտել, որ հնգամյակի տարիներին շարունակվեց արդյունաբերության կառավարման կազմակերպման եղանակի կատարելագործումը՝ ձեռնարկությունների համակենտրոնացումը և միավորումների ստեղծումը: 1981 թվականի սկզբին հանրապետությունում գործում էին 73 արտադրական և գիտաարտադրական միավորումներ, որոնց բաժինն արտադրանքի ընդհանուր ծավալում կազմեց 54 տոկոս: Ի դեպ, հնգամյակի սոցիալ-տնտեսական ծրագրի իրականացման գործում հանրապետության տարածքում կարևոր դեր կատարեց արդյունաբերության ռացիոնալ տեղաբաշխումը:

Արդյունաբերական արտադրանքի ծավալի 46,3 տոկոս աճի պայմաններում փոքր քաղաքների և բանավանների արդյունաբերության արտադրանքի ծավալն ավելացավ 71 տոկոսով, իսկ Երևան, Լենինական և Կիրովական քաղաքներինը՝ 35 տոկոսով: Այսուհանդերձ հարկ է նշել, որ արդյունաբերության բնագավառում դեռևս ունենք չգործադրված ռեզերվներ մասնավորապես արտադրակարողությունների ու աշխատանքային ռեսուրսների օգտագործման բնագավառներում: Բայց ցավոք, հաճախ խախտվում են կարողությունների գործարկման նորմատիվային ժամկետները. դա առանձնապես նկատելի էր Երևանի ավտոդողերի, էլեկտրաշարժիչների գործարաններում, «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումում, Երևանի տնաշինական կոմբինատում, Հոկտեմբերյանի և Երևանի պահածոների, Սպիտակի շաքարի գործարաններում և այլ ձեռնարկություններում: Արդյունաբերության մեջ համարյա 3 անգամ ավելացավ չտեղակայված սարքավորումների քանակը:

Հանրապետությունում անբավարար են զարգացել մասնագիտացված միջճյուղային պատրաստուկի և վերանորոգման արտադրությունները, մեքենաշինության ներճյուղային կոոպերացիան, որը և կյանքի է կոչել բազմաթիվ չարդարացված օժանդակ արտադրամասեր և ծառայություններ: Ուստի արդյունաբերության մեջ դեռևս շատ բարձր է օժանդակ բանվորների թիվը, որը կազմում է աշխատողների ընդհանուր թվի մոտ 40 տոկոսը: Չմոռանանք, որ հնգամյակի տարիներին լուրջ թերություններ կային ժողովրդատնտեսության նյութատեխնիկական մատակարարման բնագավառում:

Հանրապետության նյութական արտադրության երկրորդ ճյուղը գյուղատնտեսությունն է, որի առանձնահատկությունը ոչ թե նրա արտադրության ծավալային, այլ բնակլիմայական յուրահատուկ պայմաններում արտադրվածի որակական ցուցանիշներն են: Իրականում, հանրապետության գյուղատնտեսության արտադրանքը տասներորդ հնգամյակում, միջին տարեկան հաշվարկով, իններորդ հնգամյակի համեմատությամբ, ավելացավ 24,1 տոկոսով, այդ

թվում բուսաբուծությունը՝ 25,2, անասնաբուծությունը՝ 23,1 տոկոսով։ 1976—1980 թվականներին, 1971—1975 թվականների համեմատությամբ, արտադրվել են 760 միլիոն ռուբլու ավելի գյուղատնտեսական մթերքներ։

Հնգամյակի տարիներին ցանքատարածությունները ավելացան 21,7 հազար հեկտարով և 1980 թվականի վերջին հասան 442 հազար հեկտարի։ Որոշակի աշխատանքներ կատարվեցին այգեգործության և պտղաբուծության զարգացման մարզում։ Կոլտնտեսություններում և սովխոզներում տնկվեցին 10,4 հազար հեկտար խաղողի և պտղի նոր այգիներ, ինչպես նաև վերափոխվեցին 3,9 հազար հեկտար խաղողի այգիներ։

Հանրապետության գյուղատնտեսության զարգացման արմատական հարցերից մեկը մելիորատիվ աշխատանքների ծավալումն է։ Իններորդ և տասներորդ հնգամյակներում շահագործման են հանձնվել 70,5 հազար հեկտար նոր ոռոգելի հողեր, ջրարբիացվել են 193 հազար հեկտար արոտավայրեր, 40,4 հազար հեկտարի վրա վերաշինվել են ոռոգման սիստեմներ, կառուցվել է 120 կմ ոռոգման փակ ցանց, 241 հազար հեկտարի վրա կատարվել են կուլտուր-տեխնիկական աշխատանքներ։ 196 հազար հեկտար ներտնտեսային ոռոգման ցանց ջրային տնտեսության մինիստրության կողմից վերցված է տեխնիկական սպասարկման։ Միայն տասներորդ հնգամյակում մելիորատիվ աշխատանքների վրա պետական կապիտալ ներդրումներից ծախսվել է ավելի քան 421 միլիոն ռուբլի։ 1981 թվականի հունվարի 1-ի դրությամբ՝ ոռոգելի հողատարածությունները հանրապետությունում կազմել են 278 հազար հեկտար։

Հայաստանում մելիորացիայի հետագա զարգացման գործում ծրագրային փաստաթուղթ հանդիսացավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1977 թվականի հոկտեմբերի՝ «Հայկական ՍՍՀ ոռոգելի հողատարածության արդյունավետության բարձրացման և հետագա զարգացման միջոցառումների մասին» որոշումը։ Ըստ որի նախատեսված է իրականացնել ջրատնտեսական շինարարության մեծ ծրագիր։

Հանրապետության գետերի բնական հոսքը կարգավորելու և օգտավետ շահագործելու նպատակով նախատեսված է կառուցել 16 ջրամբարներ մոտ 1 միլիարդ խմ ջրատարողությամբ, այդ թվում Հրազդանի, Հեր-Հերի, Գետիկի, Հոկտեմբերյանի ջրամբարները, Ռանչպարի ջրհան կայանը։ Կատարվելու են Արարատյան դաշտավայրի աղակալած հողերի աղազերծման և գերխոնավ հողերի բարելավման մեծածավալ աշխատանքներ։ Սակայն ջրատնտեսական շինարարության և մելիորատիվ աշխատանքներում դեռևս կան բազմաթիվ թերություններ և չլուծված հարցեր։

1971—1980 թվականների ընթացքում հանրապետության կոլտնտեսություններին ու սովխոզներին է հանձնվել 70,5 հազար հեկտար նոր ոռոգելի հողեր, սակայն փաստորեն օգտագործվում է միայն 23,7 հազար հեկտարը։ Լինում են ոռոգելի հողերի անհիմն դուրսգրման և այլ նպատակների օգտագործման փաստեր։ Մինչև այժմ լուծված չէ գյուղատնտեսական կազմակերպությունների հաշվեկշռում գտնվող ոռոգման ցանց ունեցող 13 հազար հեկտար հողերի օգտագործման հարցը։

Ոռոգման ցանցերի տեխնիկական անսարքության հետևանքով ոռոգման սիստեմներում տեղի են ունենում ջրի զգալի կորուստներ։ Այժմ հանրապետությունում ոռոգման համար իրացվում է մոտ 2,5 միլիարդ խմ ջուր, իսկ տնտեսություններին է տրվում շուրջ 2 միլիարդ խմ ջուր։ Այսինքն՝ ջրի կորուստները միայն միջտնտեսային ցանցում տարեկան կազմում են մոտ 500 միլիոն խմ։ Տարբեր ժամանակներում շահագործման հանձնված 62 մեծ ու փոքր ջրամբարներից միայն 29-ն են համապատասխանում տեխնիկական օգտագործման նորմալ պահանջներին։

Հնգամյակում զգալիորեն ընդլայնվեց գյուղատնտեսության տեխնիկական բազան։ Բարձրացվեց անասնաբուծության աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը։ 1976—1980 թվականներին գյուղատնտեսությունն ստացել է 422 հազար տոննա հանքային պարարտանյութ (սննդարար հատկության վերածած), որը մոտ 16 տոկոսով ավելի է, քան 1971—1975 թվականներին։ Գյուղատնտեսության մեջ կատարվել է 1.150 միլիոն ռուբլու կապիտալ ներդրում։



Շահագործման են հանձնվել գյուղատնտեսական մի շարք օբյեկտներ՝ խոշոր եղջերավոր անասունների, խոզաբուծական կոմպլեքսներ, թռչնաբուծական ֆաբրիկաներ, բանջարեղենի, կարտոֆիլի, պարարտանյութերի և թունաքիմիկատների պահպանման պահեստներ։

Հնգամյակում որոշ հաջողություններ ունեցանք տրանսպորտի զարգացման բնագավառում։ Շահագործման հանձնվեցին 121 կմ երկարությամբ Սևան—Շորժա—Զոդ և 49 կմ երկարությամբ Մասիս—Նուռնուս նոր երկաթուղիները, Երևանի մետրոպոլիտենի առաջին հերթը։ Շարունակվում է Իջևան—Հրազդան երկաթուղու շինարարությունը, որը շահագործման է հանձնվելու այս հնգամյակում։

Ճանապարհաշինության պլանային առաջադրանքների հաջող կատարումը հնարավորություն ընձեռեց ապահովելու Երևանի անընդհատ կապը Լենինականի, հանրապետության հյուսիս-արևմտյան և հարավային շրջանների, Սևանի ավազանի շրջանների հետ, Մեղրիի շրջանի կապը՝ Զանգեզուրի արդյունաբերական կենտրոնների հետ։

Ժողովրդական տնտեսության առաջընթացի գրավականը, ինչպես հայտնի է, կապիտալ շինարարության ծրագրի հաջող կենսագործումն է։ Կապիտալ շինարարության ընդհանուր ծավալը ֆինանսավորման բոլոր աղբյուրներով հնգամյակի տարիներին կազմեց ավելի քան 5 միլիարդ ռուբլի։ Կառուցվել և շահագործման են հանձնվել 95 խոշոր ձեռնարկություն և կառույց, այդ թվում՝ Հայկական ատոմային էլեկտրակայանը, Արփա—Սևան ջրատարը, Շամբի ՀԷԿը, Երևանի մաքուր երկաթի փորձնական գործարանը, երկաթ-բետոնե կոնստրուկցիաների գործարանը, թեթև, սննդի, փայտամշակման, տեղական արդյունաբերության և ուրիշ կառույցներ։ Գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինման ու վերակառուցման վրա ծախսվել է 997 միլիոն ռուբլի։

Մեծ աշխատանք է կատարվել նաև սոցիալական ոլորտի օբյեկտների շինարարական ծրագրի իրականացման բնագավառում։ Ֆինանսավորման բոլոր աղբյուրներով շահագործման է հանձնված 5.549 հազար քմ ընդհանուր բնակելի տարածություն (այդ թվում պետական կապիտալ ներդրումների հաշվին՝ 3.879 հազար քմ), հանրակրթական դպրոցներ՝ 141,5 հազար աշակերտական տեղով, նախադպրոցական հիմնարկություններ՝ 30,5 հազար տեղով և հիվանդանոցներ՝ 3,78 հազար մահճակալով։ Ավարտվեցին մի շարք կուլտուրական օջախների շինարարական աշխատանքները։ Հնգամյակում առաջընթաց քայլ կատարվեց նաև հանրապետության գիտական պոտենցիալի զարգացման բնագավառում։ Ձեռք բերված հաջողությունները հանրապետության բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության, բոլոր աշխատավորների անձնուրաց աշխատանքի, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների կազմակերպչական ու քաղաքական մեծ աշխատանքի արգասիք են։

Այսպիսով, հանրապետությունը տնտեսական ու սոցիալական զարգացման տասներորդ հնգամյակի հիմնական առաջադրանքների հաջող կատարումով դիմավորեց Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 60-րդ տարեդարձը և ամուր նախադրյալներ ստեղծեց տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների իրագործման համար։

ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներին համապատասխան, ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման տասնմեկերորդ հնգամյակի գլխավոր խնդիրը ժողովրդական տնտեսության հաստատուն զարգացման գիտատեխնիկական առաջընթացի, տնտեսությունն ինտենսիվ եղանակով վարելու, երկրի արտադրական պոտենցիալն առավել ռացիոնալ օգտագործելու, բոլոր ռեսուրսների տնտեսման և աշխատանքի որակի բարելավման բազայի վրա սովետական մարդկանց բարեկեցության հետագա բարձրացումն է։

Հնգամյակի գլխավոր խնդրի լուծման նպատակով հանրապետությունում 1981—1985 թվականների համար մշակվել և իրականացվում են համապա-

տասխան միջոցառումներ։ Հայկական ՍՍՀ սոցիալ-տնտեսական զարգացման նոր հնգամյակի հիմնական ուղղությունները և խնդիրները ամբողջությամբ բխում են Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVII համագումարի որոշումներից։ Հանրապետության տասնմեկերորդ հնգամյակի հիմնական խնդիրներն են՝

ապահովել ժողովրդական տնտեսության դինամիկ, նրա բոլոր ճյուղերի և ենթաճյուղերի համամասնական և հաշվեկշռված զարգացում.

գիտատեխնիկական պոտենցիալի լայն օգտագործման, կառավարման ավտոմատացված համակարգերի ներդրման, կառավարման բոլոր օղակների կատարելագործման հիման վրա նյութական արտադրության արդյունավետության բարձրացում.

կարևորագույն սոցիալ-տնտեսական, առաջին հերթին պարենային, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացման պրոբլեմների մշակում ու լուծում.

հանրապետության էներգետիկ բազայի հետագա զարգացում։ Էներգիայի և ջերմամատակարարման ժողովրդական տնտեսության ու բնակչության պահանջմունքների հուսալի բավարարում.

արդյունաբերության աշխատատար և քիչ նյութատար ճյուղերի արտադրությունների առաջանցիկ զարգացման ապահովում արդյունաբերական մյուս ճյուղերի նկատմամբ.

քաղաքների և շրջանային կենտրոնների զարգացում՝ ձեռնարկությունների և միավորումների մասնաճյուղեր և նոր արտադրություններ ստեղծելու միջոցով, որը նպատակ ունի արգելակել միջհանրապետական միգրացիան, մասնավորապես բնակչության հոսքը գյուղից դեպի քաղաք.

ագրոարդյունաբերական կոմպլեքսի զարգացում, գյուղատնտեսական արտադրության համակենտրոնացում և մասնագիտացում.

նոր մասնագիտացված տնտեսությունների ստեղծում շահագործման հանձնվող ջրամբարների գոտիներում՝ մասնավորապես Ախուրյանի ջրամբարի ոռոգման սիստեմների շրջանում.

խաղողագործական և պտղաբուծական նոր տնտեսությունների ստեղծում։ Կերի բազայի հետագա ամրապնդման միջոցով անասնաբուծության մթերքների, մասնավորապես մսի և կաթի արտադրության զգալի ավելացում։ Բանջարաբուծության հետագա զարգացում.

ջրատնտեսական և մելիորատիվ աշխատանքների ծավալների զգալի մեծացում, Սևանի բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործում՝ նպատակ ունենալով նաև բարձրացնել Սևանա լճի մակարդակը.

կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացում և հատկացված միջոցների լրիվ օգտագործում.

սոցիալական լայն ծրագրի իրականացում, ազգաբնակչության կենսամակարդակի զգալի բարձրացում։

Տասնմեկերորդ հնգամյակում շարունակվելու է հանրապետության տարածքում արտադրաուժերի տեղաբաշխման տասներորդ հնգամյակում իրագործված կուրսը։ Նախատեսվում է խոշոր քաղաքների, հատկապես Երևանի հետագա աճի սահմանափակում։

Ընդ որում խոշոր քաղաքներում նախատեսվում է գործող ձեռնարկությունների վերակառուցում և տեխնիկական վերազինում, իսկ նոր ձեռնարկությունների կառուցումը կատարվում է՝ ելնելով արտադրական ինֆրակառուցվածքի ստեղծման անհրաժեշտությունից։

Աշխատանքային ռեսուրսներ ունեցող փոքր քաղաքներում, շրջկենտրոններում և մասնավորապես գյուղերում ստեղծվում են նոր արտադրություններ, ձեռնարկությունների և միավորումների մասնաճյուղեր, որը նպատակ ունի արգելակել միջհանրապետական միգրացիան, մասնավորապես բնակչության հոսքը գյուղից դեպի քաղաք։ Հետագա զարգացում են ստանալու ձևավորված այնպիսի արդյունաբերական հանգույցներ, ինչպիսիք են Հրազդանը, Չարենցավանը, Աբովյանը, Էջմիածինը, Մասիսը։ Արդյունաբերական հանգույցներ են գոյավորվում նաև Մարտունու, Սիսիանի և այլ շրջաններում։



Արդյունաբերական արտադրանքի ծավալն այս հնգամյակի տարիներին Հրազդանի շրջանում կավելանա ավելի քան 2,2 անգամ, Մարտունու, Ապարանի, Անիի շրջաններում՝ մոտ 2 անգամ, Աբովյանի, Ազիզբեկովի, Վարդենիսի, Կալինինոյի, Ղափանի, Թալինի շրջաններում՝ 1,5 անգամ։

Արդյունաբերության զարգացման բարձր տեմպ է նախատեսված նաև Սյունիքի տնտեսական շրջանում, որտեղ նախատեսվում է թեթև արդյունաբերության խոշոր ձեռնարկությունների ստեղծում։ Այն հնարավորություն կընձեռի արմատապես լուծելու կանանց աշխատանքի կիրառման պրոբլեմը։ Հնգամյակի ընթացքում արդյունաբերության մեջ լրացուցիչ ներգրավվում է 58 հազար աշխատող, որից 40 հազարը՝ փոքր քաղաքներում և շրջաններում։

Նախատեսվում է Հայաստանի ատոմային էլեկտրակայանի ընդլայնում, շահագործման կհանձնվեն Որոտանի հիդրոէլեկտրակայանը, Հրազդանի «Մեքենաշինարար» արտադրամիավորման կարողությունները, կկառուցվեն ավտոբեռնիչների գործարանը Չարենցավանում, «Հայկենցաղքիմ» արտադրամիավորման մաքրող նյութերի գործարանը Ապարանում, քիմռեակտիվների գործարանի երկրորդ հերթը, կվերակառուցվեն ու կընդլայնվեն Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատը, «Երևանվիտամին» արտադրամիավորումը։

Սոցիալական և տնտեսական զարգացման տասնմեկերորդ հնգամյակում, ինչպես և նախորդ հնգամյակներում, աճի միութենական միջին ցուցանիշների համեմատությամբ, դարձյալ նախատեսված են բարձր տեմպեր։

1981—1985 թվականներին արդյունաբերական արտադրանքի ծավալը նախատեսվում է ավելացնել 31 տոկոսով։ Հնգամյակում աշխատատար, քիչ նյութատար ճյուղերի առավել արագ զարգացումը, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության զգալի ավելացումը հնարավոր է դարձնում համարակական ամբողջական արդյունքի համեմատությամբ ազգային եկամտի արտադրության առաջընթաց աճի ապահովում։

Ինչպես նախորդ, այնպես էլ տասնմեկերորդ հնգամյակում ծրագրային հարցերից մեկը արդյունաբերության գիտատեխնիկական առաջընթացը որոշող առաջնային ճյուղերի՝ մեքենաշինության, էլեկտրոնային, ռադիոտեխնիկական արդյունաբերության, հաշվիչ մեքենաների արտադրության, սարքաշինության հետագա աճի բարձր տեմպերն են։ Անհրաժեշտ է նշել, որ տասնմեկերորդ հնգամյակի պլանի կարևոր առանձնահատկություններից մեկն այն է, որ առաջին անգամ հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման պլաններում միութենական, հանրապետական և ճյուղային խնդիրների լուծումը իրականացվում է ծրագրանպատակային պլանավորման մեթոդով։ Նախատեսվում է գիտահետազոտական աշխատանքներ տանել հանրապետական 9 գիտատեխնիկական նպատակային-կոմպլեքսային և միութենական 24 ծրագրերի ուղղությամբ։

Այս հնգամյակում նախատեսվում է «Ա» խմբի նկատմամբ արդյունաբերության «Բ» խմբի ճյուղերի առաջանցիկ աճ։ Նախատեսվում է արդյունաբերության ընդհանուր ծավալի մեջ զգալիորեն ավելացնել լայն սպառման ապրանքների տեսակարար կշիռը։ Այս առաջադրանքի կատարումը պահանջում է հանրապետության արդյունաբերության բոլոր ճյուղերի և ձեռնարկությունների կարողությունների միավորում և ֆունկցիաների հստակ բաժանում ու կառավարման սկզբունքների զուգակցում։

Հանրապետության մասշտաբով սպառման առարկաների արտադրության այդպիսի կոմպլեքսային մոտեցումը հնարավորություն կընձեռի լուծելու բնակչության հարաճուն պահանջմունքների բավարարման և ձեռնարկությունների մասնագիտացման ու հնարավորություններին համապատասխան արտադրության ավելացման ինչպես ընթացիկ, այնպես էլ հեռանկարային հարցերը։

Նման մոտեցումը կենսականորեն անհրաժեշտ է ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «1981—1985 թվականներին առաջին անհրաժեշտության ապրանքների արտադրության ավելացման և այդ ապրանքներով բնակչության պահանջարկի ավելի լրիվ բավարարման միջոցառումների մասին» և «1981—1985 թվականներին մասսայական սպառման ապրանքների արտադրության ավելացման, որակի բարձրացման և տեսականու բարելավման մասին»

որոշումների կատարման համար: Ընթացիկ հնգամյակում, ինչպես նաև հետագայում, հանրապետության կարևոր պրոբլեմներից է սեփական հումքային ռեսուրսների կոմպլեքսային օգտագործման բազայի վրա արտադրությունների զարգացումը: Այս առումով հատկապես կարևորվում է ոչ հանքային հումքի կոմպլեքսային օգտագործման հետ կապված անմիջական, ինչպես նաև հարակից արտադրությունների կազմակերպումը:

Հայկական ՍՍՀ-ն ունի ոչ հանքային հումքի 350 հանքավայր՝ 23 տեսակի հումքով: Բայց, այդուհանդերձ, հանրապետությունն ապահովված չէ որոշ շինանյութերով՝ երեսպատման սալիկներով (գրանիտ, մարմար և այլն), ֆելզիտային տուֆով, կերամիկայի և աղյուսի արտադրության կավով: Եվ դա այն դեպքում, երբ հանրապետությունն ունի համապատասխան քանակով հումքի պաշարներ:

Հումքային ռեսուրսների կոմպլեքսային օգտագործումն այսօր դարձել է մեր արտադրաուժերի զարգացման գլխավոր ուղղություններից մեկը: Մենք պետք է հասնենք սեփական հումքի անմնացորդ օգտագործման գիտական հիմքերի մշակմանը, տեխնոլոգիայի ստեղծմանը և արտադրության ճիշտ կազմակերպմանը: Դա հանրապետության արտադրաուժերի համար սեփական հումքի վրա հաստատուն առաջընթաց ապահովող ուղի է:

Մեզ համար կարևոր նշանակություն ունի ո՛չ միայն շինանյութերի կոմպլեքսային օգտագործումը, այլև հողերի ռեկուլտիվացիան: Միայն հանրապետության շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը շինանյութի հանույթ է կատարել 740 հեկտարի վրա: 1976—1979 թվականներին ռեկուլտիվացիայի աշխատանք է կատարվել 211 հեկտարի վրա, որից միայն 64 հեկտար տարածություն է հատկացվել գյուղատնտեսական օգտագործման, իսկ 147 հեկտարի վրա կատարվել է ռեկուլտիվացիայի աշխատանքների առաջին փուլը:

Ռեկուլտիվացիայի աշխատանքներ կատարելու համար հույժ կարևոր է, որ հումքն անմնացորդ օգտագործվի: Բանն այն է, որ ժամանակակից տեխնիկական միջոցները դեռևս հնարավորություն չեն տալիս նաև հանքի ստորին շերտերը մշակելու: Այսպես, տուֆի հանքավայրերի օգտակար շերտի հաստությունը հաճախ հասնում է 20—25 մետրի, բայց ներկայումս մշակումը կատարվում է ընդամենը 7—8 մետրի վրա: Նման պարագաներում ռեկուլտիվացիայի աշխատանքներն արդյունավետ լինել չեն կարող: Ուստի հրատապ է մեծ խորությունների վրա հանքերի մշակման տեխնոլոգիայի ստեղծումը:

Հողային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը պայմանավորված է մի կողմից հանրապետության լեռնային տարածքով, գյուղատնտեսական օգտագործելի վարելահողերի սակավությամբ և մյուս կողմից՝ բնակչության խտության բարձր աստիճանով: Հնգամյակի վերջում հանրապետության բնակչությունն ավելանալու է 9,6 տոկոսով կամ 299 հազար մարդով (միջին տարեկան հաջվառքով): Միջին խտությունը մեկ f. կմ-ի վրա կազմելու է 114 մարդ, որը զգալիորեն բարձր է, քան միջին միութենականը (13 մարդ): Իսկ եթե հաշվի առնենք, որ հանրապետության տարածքի 16 տոկոսը գտնվում է ծովի մակերևույթից ավելի քան 2.500 մետր բարձրության վրա և բնակլիմայական դժվարին պայմանների պատճառով բնակչության համար պիտանի չէ, ապա բնակչության միջին խտությունը մարդկային կյանքի համար կենսունակ տարածքում ավելի մեծ կլինի:

Գյուղատնտեսական օգտագործելի հողատարածությունը բնակչության մեկ շնչի հաշվով Հայկական ՍՍՀ-ում կազմում է 0,5 հեկտար, իսկ վարելահողինը՝ 0,17 հեկտար (միջին միութենական 2,3 և 0,85 հեկտարի պայմաններում): Գյուղատնտեսական շրջանառության մեջ եղած հողերի ընդհանուր տարածությունը 1985 թվականին կազմելու է 1349,1 հազար հեկտար՝ 1980 թվականի 1339,6 հազար հեկտարի փոխարեն:

Հնգամյակում գյուղատնտեսության զարգացման հիմնական խնդիրը պարենային պրոբլեմի լուծումն է: Տրամաբանական է, որ հանրապետության գյուղատնտեսության զարգացման հիմնական ուղին հանդիսանալու է արտադրության ինտենսիվության բարձրացման միջոցով գյուղատնտեսական մթերքների մեծ չափով ավելացումը:



Այդ խնդրի լուծման բնագավառում առաջնահերթ նշանակություն է ձեռք բերում մելիորատիվ և ջրաշինարարական աշխատանքների հետագա ծավալումը: Տասնմեկերորդ հնգամյակում նախատեսված մելիորատիվ աշխատանքները կազմում են վերոհիշյալ ծրագրի մի մասը: Ընթացիկ հնգամյակում նոր հողերի ոռոգման ու իրիգացիոն-մելիորատիվ միջոցառումների իրականացման համար նախատեսվում են 525 միլիոն ռուբլու պետական կապիտալ ներդրումներ: Նախատեսվում է ոռոգելի դարձնել ևս 30 հազար հեկտար նոր հողեր, 60 հազար հեկտար արոտավայրերի ջրարբիացում, ոռոգման սիստեմների վերակառուցում, ջրապահովվածության բարձրացում 50 հազար հեկտարի վրա, 20 հազար հեկտար գերխոնավ հողերի մելիորատիվ վիճակի բարելավում, 9 հազար հեկտար աղակալած հողերի քիմիական մելիորացիա, 140 հազար հեկտարի վրա կուլտուր-տեխնիկական աշխատանքներ և 30 հազար հեկտար գոյություն ունեցող հողերի կապիտալ հարթեցում:

Ընթացիկ հնգամյակում շահագործման կհանձնվեն Հեր-Հերի, Ախուրյանի, Հալլավարի, Դավիթ Բեկի և Սևաբերդի ջրամբարները, սկսվում են Գետիկի և Հրազդանի ջրամբարների, Որոտան գետի հոսքը Արփա գետի ավազանն ուղղելու հիդրոտեխնիկական կառուցվածքների կոմպլեքսի, Թալինի ոռոգման սիստեմի երրորդ հերթի և այլ օբյեկտների շինարարական աշխատանքները: Նախատեսվում են նաև ջրհան կայանների կառուցում, գործող ջրամբարների վերակառուցում՝ նրանց տեխնիկական վիճակը բարելավելու նպատակով, ինչպես նաև ոռոգման նոր առաջավոր մեթոդների ներդրում՝ ոռոգման սիստեմների վերակառուցմանը զուգընթաց: Առաջին անգամ մելիորատիվ շինարարությունը կիրականացվի կոմպլեքսային եղանակով, այսինքն մելիորատիվ և ջրատնտեսական աշխատանքներին զուգահեռ կկառուցվեն սովխոզային բնակավայրեր՝ նոր շահագործման հանձնվող հողերի գյուղատնտեսական յուրացումն ապահովելու նպատակով: Նշված միջոցառումների իրականացման շնորհիվ հնգամյակի վերջում վարելահողերի ընդհանուր տարածությունը կհասնի 483,7 հազար հեկտարի, որից 301,4 հազար հեկտարը ոռոգելի: Որոշակի փոփոխություններ կկատարվեն նաև ցանքատարածությունների կառուցվածքում: Նախատեսվում է զգալիորեն ընդլայնել կերային կուլտուրաների ցանքատարածությունները, ինչպես նաև բարձր սննդարար հատկություններ ունեցող, սպիտակուցներով հարուստ այնպիսի կուլտուրաների ցանքատարածությունները, ինչպիսիք են սիսեռը, ոսպը, լոբին:

Խաղողագործության և պտղաբուծության զարգացման նպատակով ընդլայնվելու են նաև խաղողի և մրգատու այգիների տարածությունները:

Հնգամյակում առանձնահատուկ ուշադրություն է դարձվում անասնաբուծության զարգացմանը: Ինչպես արդեն նշվեց, անասնաբուծության զարգացումը նախատեսվում է դնել արդյունաբերական հիմքերի վրա, ամուր կերային բազայի ստեղծման, հողերի կառուցվածքի և ցեղի բարելավման միջոցով հասնել անասունների և թռչունների մթերատվության բարձրացման առավել բարձր արդյունքների: Հնգամյակում մսի արտադրությունն ավելանալու է 9,5 հազար տոննայով և 1985 թվականին կազմելու է 162 հազար տոննա, կաթի արտադրությունը համապատասխանաբար՝ 62 հազար տոննայով և 550 հազար տոննա, ձվինը՝ 108,9 միլիոն հատով և 575 միլիոն հատ:

Հանրապետության գյուղատնտեսության զարգացմանը նախատեսվում է հատկացնել 1432,9 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ, որից շինարարական-մոնտաժային աշխատանքներին՝ 861,6 միլիոն ռուբլի: Նախատեսվում է ավարտել այնպիսի խոշոր օբյեկտների շինարարությունը, ինչպիսիք են Լուսակերտի թռչնաբուծական ֆաբրիկան, Հրազդանի ջերմոցային կոմբինատի առաջին և երկրորդ հերթը, միաժամանակ ծրագրված է սկսել 10 խոշոր կաթնային համալիրների շինարարությունը: Ընդլայնվում են Ջրառատի և Սյունիքի թռչնաբուծական ֆաբրիկաները, Լենինականի գոտում խոզերի աճեցման և բտման համալիրի շինարարությունը և այլն: Գյուղատնտեսության բնագավառում նախատեսված ծրագրերի իրականացումը հնարավորություն կընձեռի լուրջ ներդրում կատարելու պարենային պրոբլեմի լուծման գործում:

*Հանրապետության հեռանկարային ու կոմպլեքսային զարգացման համար կարևոր նշանակություն է ձեռք բերում նաև անտառապատումը։*

*Հանրապետության ջրային ռեսուրսների խիստ սահմանափակությունը, նրա հարավային, հարավ-արևելյան և հարավ-արևմտյան շրջանների խիստ չոր կլիման թելադրում է անտառապատման միջոցով ստեղծել համապատասխան միկրոկլիմա։ Դա կենսական նշանակություն ունի մի կողմից՝ առողջ կենսոլորտ ստեղծելու, իսկ մյուս կողմից՝ խոնավության աստիճանը բարձրացնելու միջոցով գյուղատնտեսությանը հատկացվող ջրի նորման կրճատելու համար։*

*Տասնմեկերորդ հնգամյա պլանով նախատեսվում է բնակչության կենսամակարդակի հետագա բարձրացման լայն ծրագիր։*

*Հանրապետությունում օգտագործվող ազգային եկամուտը այս հնգամյակում կաճի 31,3 տոկոսով և կկազմի 5.325 միլիոն ռուբլի։ Ազգային եկամտի երեք քառորդը հատկացվում է սպառման համար, իսկ բնակարանային և սոցիալ-կուլտուրական ծախսերի հաշվառմամբ, անմիջականորեն ժողովրդական բարեկեցության համար նախատեսված է ազգային եկամտի չորս հինգերորդը։*

*Նախատեսվում է շահագործման հանձնել ֆինանսավորման բոլոր աղբյուրներով՝ 5,66 միլիոն քմ ընդհանուր բնակելի տարածություն և կապիտալ ներդրումների հաշվին՝ 68,5 հազար տեղով հանրակրթական դպրոցներ, 35,7 հազար տեղով մանկական նախադպրոցական հիմնարկություններ, 5 հազար մահճակալով հիվանդանոցներ և հերթափոխում 5,55 հազար հաճախմամբ պոլիկլինիկաներ։*

*Բնակչության կենսամակարդակի բարձրացման բնորոշ ցուցանիշներից մեկը ապրանքաշրջանառության դինամիկ աճն է հնգամյակի ընթացքում։ 1985 թվականին ապրանքաշրջանառության ծավալը հանրապետությունում կկազմի 3.500 միլիոն ռուբլի, կամ նախորդ հնգամյակի համեմատությամբ համադրելի գներով աճը կկազմի մոտ 30 տոկոս։ Նույն թվականին մեկ շնչին ընկնող մանրածախ ապրանքաշրջանառությունը կկազմի 1.029 ռուբլի՝ 1980 թվականի 869 ռուբլու փոխարեն։ Արագ տեմպերով է զարգանում նաև բնակչության կենցաղսպասարկումը, որի աճը հնգամյակի ընթացքում կկազմի 45,6 տոկոս։*

*Հանրապետության աշխատավորները գոհունակությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Ի նշանավորումն Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 60-ամյակի համամիութենական սոցիալիստական մրցության արդյունքներն ամփոփելու կարգի և այդ մրցության հաղթողներին խրախուսելու միջոցառումների մասին» որոշումը։ Սովետական Հայաստանի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և մտավորականությունը, ոգեշնչված կուսակցության կոչով, պատվով կկատարեն հնգամյակի պլանային առաջադրանքները և համաժողովրդական մեծ տոնը կդիմավորեն աշխատանքային նորանոր նվաճումներով։*

---

# ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԽՈՍՔԻ ԵՎ ԳՈՐԾԻ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ

**Պ. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
ՀԿԿ Թալինի շրջկոմի առաջին քարտուղար

*ՎԵՐՋԻՆ 15—20 ՏԱՐԻՆԵՐԻՆ հիմնովին փոխվել է Թալինյան անապատի տեսքը։ Շրջանի ցածրադիր գոտում ընկած դարավոր խոպանը, ուր միայն փուշ ու տատասկ էր աճում և օձն ու կարիճը բնակվում, վերածվել է ծաղկուն բուրաստանի, դարձել բարիքների արարման անսպառ աղբյուր։ Խոպանը նվաճողների առաջին շարքերում էին 1955 թվականին ստեղծված Արագածի այգեգործական սովխոզին անդամագրված մարդիկ։ Նրանցից շատերը մասնակցել էին Թալինի ջրանցքի առաջին հերթի շինարարությանը, իրենց համառ ու քրտնաջան աշխատանքով կենարար ջուր հասցրել պապակ հողերին։ Քարից հող նվաճելը և հաց ստեղծելը թալինցու համար նորություն չէր, բայց ծառ ու վազ առաջին անգամ պետք է աճեցնեին։ Տարիների հետ այդ էլ սովորեցին։ Արագածի այգեգործական սովխոզն այժմ ոչ միայն շրջանի, այլև հանրապետության առաջավոր այգեգործական տնտեսություններից մեկն է։ Այն տարեկան 3.500—4.000 տոննա խաղող և շուրջ 2.000 տոննա պտուղ է արտադրում։*

*Անցած՝ տասներորդ հնգամյակում Արագածի այգեգործական սովխոզը խաղողի արտադրության պլանը կատարեց 105 տոկոսով (այդ այն դեպքում, երբ 1979 և 1980 թթ. Արագածի, ինչպես և շրջանի մյուս այգեգործական տնտեսությունների այգիները ցրտահարվեցին ու կարկտահարվեցին ու չնչին բերք ստացվեց)։*

*Արագածի այգեգործական սովխոզի կոլեկտիվը մեծ նվաճումների հասավ տասնմեկերորդ հնգամյակի անդրանիկ տարում։ Գործարար սոցիալիստական մրցություն ծավալելով ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների որոշումներն անթերի կատարելու համար՝ արագածցիները 1981 թվականին պլանավորված 2.340-ի դիմաց արտադրեցին 5.070 տոննա խաղող կամ առաջադրանքը կատարեցին 216 տոկոսով, 1.526-ի դիմաց ստացան 2.765 տոննա պտուղ, խոտի կուտակման պլանը կատարեցին 127, սիլոսինը՝ 148, սենաժինը՝ 152 տոկոսով։ Այգեգործներից ետ չմնացին անասնապահները, որոնք խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի առաջադրանքը կատարեցին 107, հորթատվությանը՝ 104, կաթի արտադրությանը՝ 115, մսինը՝ 146 տոկոսով։ Ավելի բարձր տոկոսներով կատարվեցին պետությանը գյուղատնտեսական մթերքներ վաճառելու առաջադրանքները։ Կուսակցությունն ու կառավարությունը բարձր գնահատեցին կոլեկտիվի հայրենանվեր աշխատանքը։ Արագածի այգեգործական սովխոզը ճանաչվեց համամիութենական սոցիալիստական մրցության հաղթող և պարգևատրվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով։ Նման բարձր պարգևի կոլեկտիվը արժանացել էր 1973 թվականին, իսկ 1977 թ. նրան շնորհվել էր Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, հանրապետության Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշ։*

*Ինչ խոսք, այս բնագծերն ինքնաբերաբար չեն նվաճվել։ Դա սկզբնական*

կուսակցական կազմակերպության, սովխոզի դիրեկցիայի համառ ջանքերի արդյունքն է։ Նրանք համագործակցված աշխատանքով կարողացել են ստեղծել կուռ ու համերաշխ կոլեկտիվ, որն ունակ է լուծելու իր առջև ծառացած սոցիալ-տնտեսական բարդ խնդիրները։ Ի դեպ, սկզբնական կուսակցական կազմակերպության քարտուղար Արտուշ Սարգսյանը այս կազմակերպությունը, փոքր ընդմիջումներով, գլխավորում է կազմակերպման օրից։ Աշխատելով անասնապահական ֆերմայի վարիչ, նա հեռակայել է Երևանի անասնաբուժական-անասնաբուծական ինստիտուտում, ստացել անասնաբույժի մասնագիտություն և լավագույն աշխատանքի համար պարգևատրվել Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով, մի շարք մեդալներով։

Արագածի սովխոզային սկզբնական կուսկազմակերպության 42 անդամների գերակշռող մեծամասնությունն ընդգրկված է անմիջականորեն նյութական արտադրության ոլորտում և իր լավ աշխատանքով օրինակ ծառայում մյուսներին։

Կուսակցության կազմակերպությունը, նրա բյուրոն մշտապես հոգում են արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման մասին։ Կուսկազմակերպությունը մասնագետների, տնտեսական ղեկավարների, բոլոր կոմունիստների ուշադրությունը բևեռում է այն բանին, որպեսզի նրանք հենվեն առաջավոր փորձի, գիտության հասումների, նյութատեխնիկական բազայի վրա։

Տարիներ առաջ արագածցիներին անհանգստացնում էր այգիների ոչ լիարժեքությունը։ Այս հարցը քննարկվեց կուսկազմակերպության ժողովում։ Ընդունվեց գործնական որոշում և միջոցառումներ մշակվեցին այն կատարելու նպատակով։ Այժմ պտղատու և խաղողի այգիների լիարժեքությունը 95—96 տոկոս է, առաջիկա մեկ երկու տարում այն կհասնի 100 տոկոսի։ Սա այն գործոններից մեկն է, որոնց շնորհիվ այստեղ խաղողի ու պտղի յուրաքանչյուր հեկտարից ամենաբարձր բերքն է ստացվում շրջանում։ Արագածի սովխոզի հաջողությունների հիմնական գրավականն այն է, որ կուսկազմակերպության ու սովխոզի դիրեկցիայի ուշադրության կենտրոնում է կադրերի ընտրության, տեղաբաշխման, ուսուցման և դաստիարակության կարևոր գործը։ Տնտեսական բոլոր տեղամասերը գլխավորում են պատրաստված և եռանդուն աշխատողներ, լավ կազմակերպիչներ, որոնք կարողանում են հաջողությամբ կատարել իրենց խնդիրները։

Սովխոզի ստեղծման օրից նրա անփոփոխ դիրեկտորն է արտադրության հմուտ կազմակերպիչ Սարգիս Խանոյանը, որը 1973 թ. արժանացել է սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչման։ 1958 թվականից սովխոզի գլխավոր գյուղատնտեսն է բանիմաց և եռանդուն Անդրանիկ Գալստյանը։ Տնտեսության բոլոր գլխավոր մասնագետներն ունեն բարձրագույն մասնագիտական կրթություն։ Կուսկազմակերպությունը լուրջ աշխատանք է կատարել «Միջին օղակի մեխանիզատորների և մասսայական մյուս մասնագիտությունների կադրերով գյուղատնտեսությունն ամրապնդելու ուղղությամբ ՍՄԿԿ Ռոստովի մարզկոմի աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման (1976 թ.) պահանջները կատարելու նպատակով։ Սովխոզի միջին օղակի կադրերի չորսն ունեն բարձրագույն, մյուսները՝ միջնակարգ մասնագիտական կրթություն։ Տնտեսությունն ապահովված է որակյալ մեխանիզատորներով, այգեգործներով, անասնապահներով։ Ամեն տարի նրանց համար կազմակերպվում են որակավորման բարձրացման դասընթացներ։

Արտադրության կազմակերպման, ռեսուրսների ճիշտ օգտագործման, սոցիալիստական սեփականության պահպանման, առաջավոր փորձի արմատավորման, աշխատատար պրոցեսների մեքենայացման նպատակով լուրջ աշխատանք է կատարում կուսկազմակերպության՝ ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հանձնաժողովը։

Կուսկազմակերպությունը ձգտում է տնտեսական խնդիրների լուծումը սերտորեն շաղկապել աշխատավորների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքների հետ։ Շեշտը դրվում է այն բանի վրա, որ յուրաքանչյուր աշխատող խորապես գիտակցի իր անձնական պատասխանատվու-



թյունը ընդհանուր գործի համար։ Հասարակության մեջ մարդու հեղինակությունը որոշվում է աշխատանքի նկատմամբ նրա ունեցած վերաբերմունքով։ Այս ճշմարտությունն է ողջ քաղաքական-մասսայական աշխատանքի հիմքը։

Աշխատավորների գաղափարաքաղաքական դաստիարակությունն իրականացնող մարդիկ պարզաբանում ու պրոպագանդում են կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության հարցերը, մասնակցում սոցիալիստական պարտավորությունների մշակմանն ու ընդունմանը, օգնում մրցողներին՝ դրանք կատարելու գործում։ Ի դեպ, այստեղ կուսբյուրոյին հաջողվել է արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների օգնությամբ բարձր հիմքերի վրա դնել գործարար սոցիալիստական մրցությունը, որով և պայմանավորված է կոլեկտիվի առջև դրված տնտեսական ու սոցիալական խնդիրների հաջող կատարումը։

Մրցության արդյունավետության, նրա ներգործունության բարձրացմանը նպաստում են խրախուսման միջոցների ճիշտ կիրառումը, նյութական և բարոյական խթանների ճիշտ զուգակցումը։ Պարբերաբար ամփոփելով մրցության արդյունքները՝ հաղթողներին գրանցում են պատվո տախտակին, հանձնում փոխանցիկ կարմիր դրոշներ ու վիմպելներ, պատվոգրեր, դրամական և անվանական պարգևներ։

1981 թվականին սովխոզի եկամուտները կազմեցին 3 միլիոն 100 հազար ռուբլի, օգուտները՝ 972 հազար ռուբլի։ Այդ նույն տարում սովխոզի բանվոր-ծառայողները ստացան 725 հազար ռուբլի պարգև հավելում։ Միջբրիգադային մրցության հաղթողներին և այգեբացի, էտի, բուժման, բերքահավաքի ընթացքում առավել աչքի ընկած շուրջ 150 բանվորների խրախուսման միջոցների հաշվին տրվել է 66.400 ռուբլու դրամական պարգև։

Կուսակցական կազմակերպությունը, սովխոզի դիրեկցիան, արհմիութենական կազմակերպությունը տնտեսական խնդիրների լուծման համահավասար ուշադրության կենտրոնում են պահում աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման հարցերը, մտահոգվում նրանց կարիքների և պահանջների բավարարմամբ։

Անցած հնգամյակի տարիներին սովխոզի միջոցներով 20 ընտանիքի համար կառուցվել են գեղեցիկ առանձնատներ։ Տնտեսությունը շուրջ մեկ մլն ռուբլի է հատկացրել ավանի փողոցների ասֆալտապատման, լուսավորության համար։ Կառուցվել են կուլտուրայի տան, կապի հանգույցի, արդյունաբերական և մթերային ապրանքների խանութների շենքեր։ Ավանում գործում են երկու միջնակարգ դպրոց, երեք մանկապարտեզ, հասարակական սննդի օբյեկտներ։ Կուսկազմակերպությունը տարիներ շարունակ ավանի բնակիչներից բազմաթիվ դիմումներ էր ստանում այն մասին, որ անհրաժեշտ է ավանում ունենալ երաժշտական դպրոց։ Այս հարցը քննարկվեց կուսկազմակերպության ժողովում։ Ավելի քան 5.000 բնակիչ ունեցող ավանի պահանջը տեղին էր։ Կուսակցության շրջանային կոմիտեն և շրջսովետի գործադիր կոմիտեն օգնեցին կուսկազմակերպությանը։ Արդեն երրորդ տարին է արագածցի երեխաները երաժշտական դպրոց են հաճախում։

Տնտեսության տարեցտարի աճող եկամուտները հնարավորություն կտան ավելի շատ միջոցներ հատկացնել ավանի բարեկարգմանն ու գեղեցկացմանը։ Մասնավորապես, կլուծվեն բոլոր ընտանիքները բնական գազով և խմելու ջրով ապահովելու հարցերը։

Տնտեսական ու սոցիալական խնդիրների լուծման ուղղությամբ Արագածի այգեգործական սովխոզի կոլեկտիվի ձեռք բերած հաջողություններն ակնհայտ են։ Սակայն այս կազմակերպությանը խորթ է ձեռք բերածով հանգստանալը։ Կուսկազմակերպությունը կոմունիստների, մասնագետների, բոլոր աշխատողների ջանքերը կենտրոնացնում է տնտեսության առջև ծառացած խնդիրները լուծելու վրա։ Իսկ Արագածում ավելի բարձր արդյունքներ ստանալու հնարավորություններ կան։ Այդ են վկայում առաջավորների ցուցանիշները։ Փորձառու բրիգադավարներ՝ Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանի ասպետ Լենիկ Հարթենյանը, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Սուրիկ Սահակյանը, «Պատվո նշանի» շքանշանակիր Մերուժան Մարգոյանը, Իսրայել Խոյեց-

յանը, Գագիկ Գաբրիելյանը մեկ հեկտարից 140—150 ցենտներ խաղող և 180—200 ցենտներ պտուղ են ստանում, որը, ինչ խոսք, բարձր ցուցանիշ է։ Առաջավոր կթվորուհիներ Հայաստան Եփրիկյանը, Վիկտոր Կարապետյանը, Մարուս Ներսիսյանը յուրաքանչյուր կովից 3.100—3.250 կգ կաթ են ստանում, որը միջինից բարձր է 250—350 կգ-ով։

Կուսբյուրոյի նախաձեռնությամբ բոլոր բրիգադներում ուսումնասիրում և արմատավորում են առաջավորների փորձը, ինչպես և գիտության հասումները։ Խնդիր է դրված առաջիկայում ամենուրեք հասնել աշխատանքային փարոսների ցուցանիշներին։ Կասկածից վեր է, որ փառաբանված կոլեկտիվն այդ բարձունքին ևս կհասնի։ Դրա երաշխիքը բարձր կարգապահությունն ու կազմակերպվածությունն է, կոլեկտիվում ստեղծված առողջ մթնոլորտը։

Գյուղատնտեսական արտադրության հիմնական միջոցը՝ հողը, տեխնիկան, պարարտանյութերը, ոռոգման ջուրը ռացիոնալ օգտագործելու, անասունների մթերատվությունն ավելացնելու, արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու գործում լուրջ հաջողությունների է հասել նաև Արտենիի սովխոզ-գործարանի կոլեկտիվը։

Տնտեսությունը տասներորդ հնգամյակն ավարտեց առաջադրանքները գերակատարած։ Կուսկազմակերպությունն ու սովխոզի դիրեկցիան ուշադրության կենտրոնում են պահում սեփական արտադրության կերի կայուն բազա ստեղծելու, խաղողի ու պտղատու այգիների բարձր բերք ստանալու հարցերը։ 1981 թվականին, պլանավորված 2.100-ի փոխարեն, յուրաքանչյուր կովից ստացվեց 2.800 կգ կաթ, 900-ի դիմաց արտադրվեց 1.200 ցենտներ միս։ Մթերակայան հանձնվող խոշոր եղջերավոր անասունների միջին կենդանի քաշը հասել է 360 կգ-ի։ Սրանք լուրջ հասումներ են, եթե հաշվի առնենք, որ ընդամենը մի քանի տարի առաջ մեկ կովից ստացվում էր 1.500—1.600 կգ կաթ, իսկ անասունների միջին քաշը 260—270 կգ-ից չէր անցնում։

Մեծ աշխատանք է կատարվել սոցիալական զարգացման մարզում։ Բարեկարգվել ու գեղեցկացել է երբեմնի անհրապույր Արտենի ավանը։ Կազմվել է ավանի զարգացման գլխավոր հատակագիծը, կառուցվել են կուլտուրայի տուն, դպրոց, մանկապարտեզ, բաղնիք, սովխոզի վարչական շենք, տիպային անասնագոմեր։ Ասֆալտապատվել են ավանի փողոցները, անցկացվել է լուսավորություն, ընթացքի մեջ են բնակելի և մի շարք կուլտուր-կենցաղային բնույթի օբյեկտների կառուցման աշխատանքները։ Այս հաջողությունները պայմանավորված են նրանով, որ կուսկազմակերպությունը, սովխոզի դիրեկցիան ամենօրյա ուշադրություն են դարձնում աշխատավորների շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքներին, մարդկանց տոգորում պարտքի ու պատասխանատվության վեհ զգացումներով։

Տնտեսական ու սոցիալական խնդիրների լուծման գործում լուրջ հաջողությունների են հասել նաև Քարակերտի, Դալարիկի, Դավթաշենի, Մաստարայի սովխոզային, Սուսերի, Ցամաքասարի կոլտնտեսային և շրջանի այլ սկզբնական կուսակցական կազմակերպություններ։

ՀԿԿ Թալինի շրջանային կոմիտեն տնտեսական, գաղափարախոսական, ներկուսակցական այս կամ այն հարցը քննարկելիս միշտ որոշում է նաև սկզբնական կուսակցական կազմակերպությունների անելիքները դրանց իրականացման ասպարեզում։ Եվ դա բնական է, քանի որ ոչ մի խոշոր հարց հնարավոր չէ լուծել առանց սկզբնական կուսկազմակերպությունների գործուն մասնակցության։

ՍՄԿԿ XXVI համագումարին Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ կոմունիստական շինարարության մեծ ու բազմազան խնդիրների լուծման գործում առաջնահերթ դեր է պատկանում սկզբնական կուսակցական կազմակերպություններին։ Կարելի է առանց չափազանցնելու ասել, որ վերջին ժամանակներս կուսկազմակերպությունների մարտունակությունը, նրանց կազմակերպող ու մոբիլիզացնող դերն իրենց կոլեկտիվներում նկատելիորեն աճել են։ Դրանց մեծ մասը հաջողությամբ է լուծում տնտեսական-քաղաքական խնդիրները, դժվարությունների հանդիպելիս ցուցաբերում հաստատակամություն ու ճկունություն, կուսակցական ակտիվ աշխա-



տանքի ներգրավում կոմունիստներին։ Սկզբնական կուսկազմակերպությունների մոբիլիզացնող ու կազմակերպող դերը մեծ չափով կախված է դրանց ղեկավարներից, և շրջանային կոմիտեն վարում է սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների կազմը հետևողականորեն բարելավելու կուրս։ Ներկայումս նրանց գերակշռող մասն ունի բարձրագույն, թերի բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթություն, շատերը գյուղատնտեսության մասնագետներ են։ Նրանք լավ գիտեն արտադրությունը, կարողանում են համոզել մարդկանց, բարձրացնել նրանց տրամադրությունը և աշխատանքային ակտիվությունը։

ՀԿԿ շրջանային կոմիտեն լուրջ ուշադրություն է դարձնում կուսկազմակերպությունների քարտուղարների, ինչպես և ողջ ակտիվի ուսուցմանը, աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործմանը՝ հաշվի առնելով կուսակցական շինարարության արդի խնդիրները։

Աշխատանքում մենք ձգտում ենք նպատակասլացության ու հետևողականության։ Ավելի կոնկրետ ու օպերատիվ է դարձել սկզբնական կուսկազմակերպությունների ղեկավարումը, իսկ դա նշանակում է, որ բարելավվում են շրջկոմի աշխատանքի մեթոդներն ու ձևերը։

Վերջին տարիներին մեզ մոտ զգալիորեն կրճատվել են տարբեր բնույթի նիստերն ու խորհրդակցությունները, պլենումներում ու բյուրոներում քննարկվող հարցերի քանակը։ Որպես կանոն, քննարկման համար ընտրվում են այնպիսի էական հարցեր, որոնք կարևոր նշանակություն ունեն շատ կազմակերպությունների համար։

Շրջկոմի ապարատի աշխատողները, կուսակցական ակտիվն այժմ ավելի հաճախակի են լինում տեղերում, խորամուխ լինում կոլեկտիվների գործերի վիճակին, խորհրդակցում կոմունիստների հետ, օգնում արտադրության կազմակերպմանը, աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը, նրանց աշխատանքներում տեղ գտած թերությունների վերացմանը։

Մեզ մոտ պրակտիկա է դարձել սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետվությունների քննարկումը շրջանային կոմիտեի պլենումներում և բյուրոների նիստերում։ Քննարկվել է Թալինի անասնապահական սովխոզի, Զարինջայի կոլտնտեսության և մի շարք այլ տնտեսությունների հարցը։ Նման քննարկումներն օգնում են շրջանային կոմիտեին ստանալու կոլեկտիվներում գործերի իրական վիճակի մասին ճիշտ ինֆորմացիա, ընդունել գործի շահերից բխող որոշումներ և ապահովել դրանց կատարումը։ Կուսակցության XXVI համագումարում սկզբնական կուսկազմակերպությունների առջև խնդիր դրվեց լրիվ չափով օգտագործել ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու իրենց տրված իրավունքը։ Վերահսկողությունը պետք է ընդգրկի և՛ կադրային, և՛ արտադրական հարցերը, մարդկանց աշխատանքի ու կենցաղի պայմանները։ Կուսշրջկոմը որոշակի գործ է արել համագումարի այդ դիրեկտիվը կատարելու ասպարեզում։ Սկզբնական կուսկազմակերպությունները, իրագործելով վերահսկողության իրավունքը, իրենց ժողովներում քննարկում են տնտեսական ղեկավարների հաշվետվությունները, առավել կոնկրետ ուսումնասիրում գործերի վիճակն առանձին տեղամասերում, միջոցներ ձեռնարկում թերությունները վերացնելու համար։

Հաշվի առնելով շրջանի առանձնահատկություններն ու պայմանները՝ կուսակցության շրջանային կոմիտեն շրջսովետի գործկոմի, սկզբնական կուսկազմակերպությունների հետ մշակել ու իրագործում է շրջանի սոցիալ-տնտեսական զարգացման հեռանկարային պլանը։

Շրջկոմի պլենումներում, կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովներում քննարկվել են հողագործության կուլտուրայի բարձրացմանը, այգեգործության հետագա զարգացմանը, կերի կայուն բազայի ստեղծմանը, անասունների մթերատվության ավելացմանը, արդյունաբերական արտադրանքի և շինարարության որակի բարելավմանը վերաբերող հարցեր, դրանց լուծման համար որոշվել են յուրաքանչյուր կազմակերպության անելիքները։ Նշված միջոցառումների շնորհիվ զգալիորեն ակտիվացել է շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը։

Շրջանային կոմիտեի, սկզբնական կուսկազմակերպությունների ջանքերի շնորհիվ շրջանը հաջողությամբ կատարեց անցած հնգամյակի, ինչպես նաև 1981 թվականի բոլոր առաջադրանքները թե՛ գյուղատնտեսական մթերքների արտադրության ու վաճառքի, թե՛ արդյունաբերական արտադրանքի թողարկման ու իրացման, թե՛ կապիտալ շինարարության բնագավառում։

ՀԿԿ շրջկոմի պլենումը, 1978 թ. քննարկելով կապիտալ շինարարության վիճակը և դրա հետագա բարելավման հարցը, որոշեց վերադաս կազմակերպությունների միջոցով լուծել շրջանում շինարարական տրեստ ստեղծելու խնդիրը, քանի որ շրջանում տարեկան ավելի քան 25 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ և շուրջ 16 միլիոն ռուբլու շինմոնտաժային աշխատանքներ են կատարվում։ Շրջկոմի որոշումը պաշտպանեցին վերադաս կազմակերպությունները, և 1980 թ. կազմակերպվեց գյուղշինմինիստրության № 9 տրեստը, որը մեծապես նպաստեց ինչպես արտադրական, այնպես էլ կուլտուր-կենցաղային և բնակարանային շինարարության արագ ծավալմանը։ 1981 թ. շրջկենտրոնում շահագործման հանձնվեցին ծածկած շուկայի, ավտոկայանի, կենցաղի տան հարմարավետ շենքերը, որոնց կառուցման պահանջը տարիներ շարունակ բարձրացնում էին շրջանի աշխատավորները։ Ներկայումս ընթացքի մեջ է նոր հանրախանութի, պանրագործարանի, բնակելի և այլ շենքերի կառուցումը։

Կոլտնտեսային ու սովխոզային կուսկազմակերպությունների մարտունակության ու նախաձեռնության բարձրացումը նպաստեց շրջանի գյուղատնտեսության դինամիկ զարգացմանը։ Չնայած Թալինի շրջանին այնքան բնորոշ բնակլիմայական դժվարություններին, գյուղատնտեսության համախառն արտադրանքն ավելացավ շուրջ 15 մլն ռուբլով։ Նոր հնգամյակի մեկնարկային տարում շրջանը մսի հանձնման առաջադրանքը կատարեց 103, կաթինը՝ 122, բրդինը՝ 101, ձվինը՝ 143 տոկոսով։ Մեկ կովի կաթնատվությունը, նախորդ տարվա համեմատությամբ, ավելացավ 108, մթերակայան հանձնվող խոշոր եղջերավոր անասունների քաշը՝ 12 կգ-ով։ Գյուղատնտեսության աշխատողները պետությանը վաճառեցին 2.800 տոննա հացահատիկ, 18.730 տոննա խաղող, 5.000 տոննա պտուղ, որոնք զգալիորեն ավելի էին պլանավորվածից։ Անցյալում արդյունաբերական ձեռնարկություններ չունեցող Թալինն այժմ թողարկում է տարեկան մոտ 50 մլն ռուբլու արդյունաբերական արտադրանք։

Արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունների գործունեությունը շրջկոմը նպատակամղում է ամենից առաջ ներքին ռեզերվների առավել լրիվ օգտագործմանը, արտադրանքի որակի բարձրացմանը, հումքի և ռեսուրսների արդյունավետ ծախսմանը։

Քարակերտի պահածոների գործարանի կուսկազմակերպությանը բնորոշ է տեխնիկական պրոգրեսի հարցերի համարձակ առաջադրումն ու լուծումը։ Անցած հնգամյակի տարիներին գործարանում արմատավորվեց որակի կոմպլեքս կառավարման համակարգը, որը շատ բանով նպաստեց բարձրորակ և մեծ պահանջարկ վայելող պահածոների թողարկմանը։ Պահածոների 10—12 տեսակ արտադրվում է պետական որականիշով։ Պահածոյագործների կոլեկտիվը տասներորդ հնգամյակի առաջադրանքները կատարեց չորս տարում և պարտավորվել է նոր հնգամյակը ևս կատարել նույն ժամկետում։

Գործարանի կուսկազմակերպությունն ու դիրեկցիան, ճիշտ ըմբռնելով ձեռնարկություններին կից օժանդակ տնտեսություններ կազմակերպելու կուսակցության պահանջը, ստեղծել են խոզաբուծական ֆերմա,, մեղվանոց, որոնք բանվոր-ծառայողների սննդամթերքի պահանջները բարելավելու լրացուցիչ միջոց են։ Այստեղ լավ են լուծվում նաև աշխատավորների բնակարանային և կուլտուր-կենցաղային մյուս պահանջները։

Տնտեսական ու սոցիալական խնդիրների լուծումը ճիշտ են կազմակերպում Թալինի կենցաղային էլեկտրասարքավորումների, Արագածի պեռլիտի գործարանների, № 9 շինարարական տրեստի և այլ սկզբնական կուսակցական կազմակերպություններ։ Այդ ձեռնարկությունները սիստեմատիկաբար կատարում ու գերակատարում են պետական առաջադրանքներն ու ստանձնած պարտավորությունները, բավարարում են աշխատողների բնակարանային պահանջները և մյուս կարիքները։



Շրջանի կուսակցական կազմակերպությունը մեծ աշխատանք է տանում աշխատավորների բարեկեցության բարձրացման, նրանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման, առողջապահության, կրթության, կուլտուրայի, սպորտի զարգացման ասպարեզում։ Անցած հնգամյակի տարիներին շրջանում պետական ներդրումների հաշվին կառուցվել են շուրջ 45.000 քմ օգտակար տարածությամբ բնակելի տներ։ Արագած, Քարակերտ, Դալարիկ, Լեռնագոգ ավաններում, շրջկենտրոնում, Ագարակ, Եղնիկ, Ակունք, Զարնիջա, Ոսկեթաս, Ն. Բազմաբերդ և այլ գյուղերում կառուցվել են բարեկարգ դպրոցական շենքեր, շրջանի ավելի քան 10 գյուղերում և ավաններում շահագործման են հանձնվել կուլտուրայի նոր տներ։ Աշխատավորների բուժսպասարկմանն է տրամադրված Թալինում կառուցված շրջանային կենտրոնական հիվանդանոցը, որը կահավորված է ժամանակակից սարքավորումներով և ունի լավագույն հարմարություններ։ Շրջանի ազգաբնակչության արտահոսքը կանխելու, ազատ աշխատուժն արդյունավետ օգտագործելու, առանձնապես երիտասարդության համար աշխատանքի ու հանգստի նորմալ պայմաններ ստեղծելու նպատակով լուծվեց շրջանի գյուղերում արդյունաբերական մասնաճյուղեր կազմակերպելու անչափ կարևոր հարցը։

Անճանաչելիորեն փոխվել, բարետես են դարձել շրջկենտրոնը, շրջանի գյուղերն ու ավանները։ Համարյա բոլոր բնակավայրերը շրջկենտրոնի հետ կապված են ասֆալտապատ ճանապարհներով։

Գյուղատնտեսության, շրջանի սոցիալ-տնտեսական զարգացման գործում հզոր խթան կհանդիսանա Թալինի ջրանցքի երրորդ հերթի կառուցումը։ Արդեն ավարտին է մոտենում շուրջ 7 կմ երկարությամբ թունելի շինարարությունը, որով Ախուրյանի ջրամբարի ջուրը կյանքի կկոչի հազարավոր հեկտար խոպան հողեր, կստեղծվեն մի շարք նոր այգեգործական տնտեսություններ։ Կկրկնապատկվի խաղողի ու պտղի արտադրությունը, շրջանում կլուծվի կերի կայուն բազա ստեղծելու հարցը։ Ջրանցքից հզոր պոմպակայանների միջոցով ջուրը կմղվի նաև շրջանի նախալեռնային ու լեռնային գոտու մի շարք տնտեսություններ, որի շնորհիվ շուրջ 5.000 հեկտար հողեր կջրարբիացվեն։ Ոռոգելի կդառնան հացահատիկային կուլտուրաների, բազմամյա խոտադաշտերի մեծ տարածություններ, կտնկվեն պտղատու այգիներ, զարկ կտրվի բանջարաբուծությանը։ Անհամեմատ կավելանան կոլտնտեսությունների ու սովխոզների եկամուտները, որը հնարավորություն կտա լուծելու մի շարք սոցիալական հարցեր, առաջին հերթին՝ երիտասարդությանը գյուղատնտեսական արտադրության հետ կապելու կարևոր խնդիրը։

Կուսակցության շրջանային կոմիտեն, սկզբնական կուսկազմակերպությունները լուրջ ուշադրություն են դարձնում աշխատավորների գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության բարելավմանը։ Մեզ համար գաղափարական աշխատանքի բարելավման հզոր խթան հանդիսացան ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին», ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների որոշումները։

Շրջանում ստեղծված է կուսակցական, կոմերիտական քաղաքական ուսուցման, աշխատավորների տնտեսագիտական կրթության, կոմունիստական աշխատանքի դպրոցների, ժողովրդական համալսարանների լայն ցանց։ Աշխատավորական կոլեկտիվներում պրոպագանդիստական, ագիտացիոն-մասսայական աշխատանքներ են կատարում 560 պրոպագանդիստներ, 23 քաղինֆորմատորներ, 485 ագիտատորներ, կուսշրջկոմի և «Գիտելիք» ընկերության շրջանային վարչության հարյուրավոր դասախոսներ, կուլտուր-լուսավորական հիմնարկների բազմաթիվ աշխատողներ։ Այս կարևոր գործում խնդիր է դրված ապահովել գաղափարադաստիարակչական աշխատանքների կոմպլեքս իրականացումը։

Հիրավի, շրջանի կուսակցական կազմակերպությունները որոշակի հաջողություններ են ձեռք բերել տնտեսական ու սոցիալական խնդիրների լուծման գործում։ Սակայն կատարվածը, երբ մենք այն գնահատում ենք ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների բարձր պահանջների տեսանկյունից, հեռու է

բավարար լինելուց։ Գյուղատնտեսության մեջ, հատկապես անասնապահության բնագավառում, դեռևս ոչ բոլոր ռեզերվներն են արդյունավետ օգտագործվում։ Մի շարք կոլտնտեսություններ, սովխոզներ, անասնապահական համալիրներ չեն ապահովում անասունների բարձր քաշաճը, վատ են պայքարում անասնապահական մթերքների ինքնարժեքի իջեցման համար, անբավարար ուշադրություն է հատկացվում կերարտադրությանը։ Անցած տարի կուսշրջկոմը միջոցառումներ մշակեց կերարտադրությունն ավելացնելու, անասունների ցեղայնությունը բարելավելու, նախրում կովերի գլխաքանակն ավելացնելու, անասունների մթերատվությունը բարձրացնելու նպատակով և սկզբնական կազմակերպություններին նպատակամղեց դրանց կենսագործմանը։ Այս ասպարեզում արդեն լուրջ քայլեր են ձեռնարկել Դալարիկի, Մաստարայի սովխոզների, Արեգի կոլտնտեսության և այլ կուսկազմակերպություններ։ Նրանք ձեռք են բերել բարձր մթերատու անասուններ, լուրջ ուշադրություն են դարձնում տոհմային գործի կազմակերպմանը, վերակառուցել են ցանքաշրջանառությունները, մեծ տեղ հատկացրել կերային կուլտուրաների ավելացմանը։

Այգեգործական տնտեսությունների կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրվել է այգիների նոսրության վերացմանը, մշակության ու բուժման աշխատանքների բարելավմանը, աշխատատար պրոցեսների մեքենայացմանը, բարձր բերքատու և մաքրասորտ տեսակների արմատավորմանը։

Բոլոր հիմքերը կան ասելու, որ առաջիկա տարիներին գյուղատնտեսության մթերքների արտադրությամբ շրջանը կարող է ո՛չ միայն հասնել հանրապետության միջին ցուցանիշներին, այլև գերազանցել դրանք։

Արդյունաբերական և շինարարական ձեռնարկությունների կուսկազմակերպությունները մեծ անելիքներ ունեն պլանավորումն ու կառավարումը կատարելագործելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արդյունաբերական արտադրանքի ու շինարարության որակը բարելավելու, հումքը, նյութերն ու ռեսուրսները արդյունավետ օգտագործելու, օբյեկտները ժամանակին շահագործման հանձնելու բնագավառում։ Մենք չենք մոռանում նաև, որ շրջանի մի շարք գյուղերում դեռ չունենք դպրոցական հարմարավետ շենքեր, որ շրջանում քիչ են սպորտային հրապարակներ, բաղնիքներ, որ շրջանում քիչ են սպորտային հրապարակ-կուլտուրայի տներ, բաղնիքներ, որ շրջանում քիչ են սպորտային հրապարակները, լողավազաններն ու մարզադահլիճները, որոշ բուժմանկաբարձական կետեր ու խանութներ տեղավորված են հարմարեցված շենքերում։ Այս հարցերը գտնվում են կուսշրջկոմի, շրջանի համապատասխան կազմակերպությունների ուշադրության կենտրոնում, և դրանք աստիճանաբար կլուծվեն։

Հանրագումարի բերելով աշխատավորական կոլեկտիվների աշխատանքի արդյունքները, գոհունակությամբ նշում ենք, որ նոր առաջընթաց քայլ է կատարվել շրջանի սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման գործում։ Անցած տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ զգալիորեն ավելացել են կաթնատվությունը, մթերակայան հանձնվող կենդանիների միջին քաշը։ Իրենց առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները հաջողությամբ են կատարում արդյունաբերության ու շինարարության աշխատողները։

Մեր խնդիրն է՝ հմտորեն գլխավորել աշխատավորների քաղաքական և աշխատանքային խանդավառությունը, նրանց ողջ ուժերն ու կարողությունները նպատակամղել 1982 թ. և ամբողջությամբ վերցրած տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների անթերի կատարմանը, արժանի գործերով դիմավորել ՍՍՀՄ կազմավորման պանծալի 60-ամյակը։

---

# ՃՅՈՒՂԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՌԵԶԵՐՎՆԵՐԸ

**Մ. Ս. ՇԱՀԲԱԶՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ տնտեսական արդյունավետության բարձրացման կարևորագույն պրոբլեմներից մեկը առավել հեռանկարային և շահավետ ճյուղի՝ խաղողագործության հետագա զարգացման խնդիրն է։ Տասներորդ հնգամյակի տարիներին իրականացվել են մի շարք էական միջոցառումներ. հիմնված են 5.043 հեկտար խաղողի այգիներ, որոնց հիմնական մասը հին, արդեն հյուծված այգիների փոխարինումն է նորով, իսկ խաղողի այգիների ընդհանուր տարածությունը, այդ թվում նաև պտղատու մասը, հնգամյակում չի ավելացել։ Վերակառուցվել են նաև չորս հազար հեկտար այգիներ։ Այսպիսով, նոսրությունը զգալիորեն նվազեց, խոշորացվեցին այգիների զանգվածները, նկատելիորեն պակասեց դրանց կտրտվածությունը։ Դա, անշուշտ, դրականորեն անդրադարձավ համախառն արտադրանքի վրա։ 1981 թ. արդյունքներով, իրականացված միջոցառումները լիովին հատուցվեցին։ Պետությանը վաճառվեց 335 հազար տոննա խաղող։ Հանրապետությունն այդպիսի ցուցանիշի դեռ երբեք չէր հասել։ Նախորդ բոլոր տարիներին միայն մեկ անգամ է խաղողի վաճառքը հասել 230 հազար տոննայի։ Նշված ձեռքբերումը, անշուշտ, վերոհիշյալ միջոցառումների և հանրապետության գյուղատնտեսության աշխատողների անձնվեր աշխատանքի արդյունքն է, կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների կազմակերպչական և քաղաքական եռանդուն գործունեության արգասիքը։ Տպավորիչ են նաև արտադրական այդ նշանակալից հաջողության տնտեսական արդյունքները։

Սակայն առկա ձեռքբերումները նույնպես չի կարելի բավարար համարել։ Հայաստանը հնուց ի վեր հայտնի է եղել խաղողի քաղցր և բուրավետ տեղական տեսակներով։ Դա պայմանավորված է շոգ կլիմայով, ակտիվ ջերմաստիճանների առատությամբ, որոնք նպաստում են պտղի մեջ շաքարի և բուրավետ նյութերի կուտակմանը։ «Ոսկեհատ», «Ջիլար», «Գառան դմակ» տեսակների մեջ ֆիզիոլոգիական հասունացման շրջանում կուտակվում է մինչև 20—24 տոկոս շաքար, իսկ մասսայական բերքահավաքի վերջում «Ոսկեհատի» շաքարայնությունը երբեմն հասնում է 28—30 տոկոսի։ Հենց այդպիսի հումքային բազայի վրա է հանրապետության գինեգործությունը մասնագիտացել թնդացված, ուժեղ սպիրտային սեղանի գինիների և կոնյակների խաղողանյութերի պատրաստման մեջ։

Սակայն պետք է նկատի ունենալ, որ նույնիսկ ամենաբարենպաստ կլիմայական պայմաններում լավորակ խաղող կարելի է ստանալ միայն այգիների խնամքն օրինակելիորեն կազմակերպելով, այնպիսի պայմաններ ստեղծելով, որ հնարավոր լինի հասնել առավելագույն արդյունավետության։ Դրանք են՝ այգիների պարարտացման արդյունավետ եղանակների կիրառումը, վազի բարձրորակ ձևավորումը, ոռոգման և բերքահավաքի լավագույն ժամկետների ընտրությունը։ Կարևոր նշանակություն ունի նաև խաղողի տեսակների խելացի տեղաբաշխումը ըստ հանրապետության բնական գոտիների և ենթագոտիների՝ հաշվի առնելով ինչպես գյուղատնտեսական արտադրության, այնպես էլ գինեգործության շահերը։

Իսկ ինչպես են իրականացվում այդ միջոցառումները մեզ մոտ։ Պետք է

խոստովանել, որ դեռևս խախտվում են այգիների խնամքի ագրոտեխնիկայի կանոնները, երբեմն նույնիսկ գիտակցաբար ձգձգվում է այգիների միջշարային մշակությունը՝ այդ տարածություններում խոտը հնձելու համար։ Լիովին չի վերացված խաղողի արժեքավոր տեղական տեսակների տարածությունների կրճատման արատավոր պրակտիկան։ Ժամանակին Աշտարակի, Էջմիածնի և Շահումյանի շրջաններում առաջատար տեսակը «Ոսկեհատն» էր («Խարջի»), որը, ինչպես նշվեց, միանգամայն հաղվագյուտ է իր շաքարայնությամբ և բուրմնավետությամբ։ Այժմ նշված շրջաններում այն դուրս է մղվում նվազ արժեքավոր տեսակներով, ինչպիսին է, օրինակ, «Ռկածիթելին», միայն այն պատճառով, որ վերջինս համեմատաբար բարձր բերք է տալիս և ավելի քիչ խնամք է պահանջում։

Առավել վատ է վիճակը եվրոպական այնպիսի արժեքավոր տեսակների գծով, ինչպիսիք են «Մուսկատը», «Ֆուրմինտը», «Պինոն»։ Մինչդեռ Հայաստանի գինեգործության համար դրանց նշանակությունը դժվար է գերագնահատել։ Էջմիածնի և Աշտարակի շրջաններում չեն ընդարձակվում նաև «Սապերավի» տեսակի տարածությունները, չնայած դրանից պատրաստվող գինու բարեմասնությունները և բուժիչ նշանակությունը հանրահայտ են։

Խախտվում են խաղողի ջրման և բերքահավաքի ժամկետները։ Դա հետևանք է այն բանի, որ պետությանը խաղողի վաճառքի պլանների կատարումը հաշվարկվում է միայն քաշով, առանց հաշվի առնելու արտադրանքի որակը։ Տեղին է մեջ բերել ՍՄԿԿ XXVI համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտահայտած այն միտքը, թե նշված բնագծերին չհասնելու գլխավոր պատճառը թերևս այն է, որ լիովին չի հաղթահարված իներցիայի, ավանդույթի, սովորույթի ուժը, որը մեզ մոտ արմատավորվել է այն ժամանակներից, երբ առաջին պլան էր մղվում գործի ոչ այնքան որակական, որքան քանակական կողմը։

Հենց այսպիսի տեսանկյունով պետք է գնահատել խաղողագործության պլանների կատարման արդյունքները։ Այդ պրոբլեմները, ինչպես նաև դրանց հետ առնչվող մյուս հարցերը՝ խաղողագործության տեղաբաշխումը, տեսակային կազմի կատարելագործումը, արտադրանքի որակի բարձրացումը, արտացոլվեցին խաղողագործության և այգեգործության զարգացման գլխավոր սխեմայում, որի մասին ՀԿԿ XXVII համագումարում ասաց ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը։

Հանձնվող արտադրանքի որակը կարող է նկատելիորեն անդրադառնալ ստացվող եկամտի, հետևաբար և խաղողագործության շահութաբերության վրա։ Սակայն շատ տնտեսությունների ղեկավարներ հաճախ անտեսում են այդ հանգամանքը, ըստ երևույթին մտածելով, որ գլխավորը վաճառքի պլանի կատարումն է, իսկ մնացածն այնքան էլ կարևոր չէ։ Երբեմն ականատես ենք լինում այնպիսի փաստերի, երբ այգիները ջրվում են անմիջապես բերքահավաքի նախօրյակին, հանձնվող խաղողի քաշն ավելացնելու նպատակով՝ ի վնաս որակի։ Խաղողի որակին վնասում է նաև ագրոտեխնիկական ընդունելի ժամկետներից ավելի վաղ բերքի հավաքումն ու հանձնումը։

Արարատյան հարթավայրում խաղողի բերքահավաքն սկսելու լավագույն ժամկետը սեպտեմբերի երկրորդ կեսն է, քանի որ միայն այդ ժամանակ է ողկույզը հասնում առավելագույն շաքարայնության, ինչպես նաև գլյուկոզայի, ֆրուկտոզայի, բուրմնավետ, ներկող, ազոտական նյութերի, օրգանական թթուների ֆերմենտների այնպիսի բաղադրության, որն ապահովում է գինիների անհրաժեշտ որակի ու համային արժանիքների ձևավորումը։ Չհասունացած, նվազ շաքարայնություն ունեցող խաղողի մեջ թվարկված նյութերի պարունակությունն աննշան է կամ իսպառ չկան։ Ուստի և դրանցից պատրաստված գինիներն անկայուն են և համային հատկություններով աններդաշնակ։

Այնուամենայնիվ, շատ տնտեսություններ խաղողի բերքահավաքի և հանձնման ժամկետները խախտում են բարձր քաշն ապահովելու և պլանները մի կերպ կատարելու նպատակով։ Դրա հետևանքով հաճախ մթերման է հանձնվում թերհաս խաղող։ Գործարանները բերքահավաքի ժամանակաշրջանում, խիստ ծանրաբեռնվածության պատճառով ի վիճակի չեն լինում մանրակրկիտ տեսակավորելու ստացվող արտադրանքը, այն դեպքում, երբ հենց խաղողի տեսակով



է պայմանավորված շաքարայնության աստիճանը։ Դրանից էլ «հմտորեն» օգտվում են շատ տնտեսություններ և բերքը հանձնելիս խառնում, օրինակ, նվազ շաքարային «Մսխալին» և բարձր շաքարային «Ոսկեհատը» և այդպիսի «համբը» հանձնում գործարանին։ Այսպիսով, միջին շաքարայնության քողի տակ իրացվում է ցածր տեսակայնության թերհաս, բայց քաշով ծանր խաղողը։ Դրանով է բացատրվում, որ արդյունաբերական վերամշակման հանձնվող խաղողի միջին շաքարայնությունը ո՛չ միայն չի աճում, այլև, ընդհակառակը, ունի նվազելու միտում։ Այսպես, 1955 թվականին հանրապետությունում խաղողի միջին շաքարայնությունը եղել է 22,1 տոկոս, իսկ 1965-ին՝ 18,3, 1974-ին՝ 16,2 տոկոս։ Վերջին տարիներին իրականացված միջոցառումների շնորհիվ այդ ցուցանիշը մի փոքր բարելավվել է, սակայն հեռու է գոհացուցիչ լինելուց։

Խաղողի որակի անկումը բացասաբար է անդրադառնում ինչպես գինեգործական արտադրանքի, այնպես էլ ընդհանուր առմամբ հանրապետության գյուղատնտեսության այդ կարևոր և հեռանկարային ճյուղի տնտեսական արդյունավետության վրա։ Ամենահամեստ հաշվարկներով, մեր կոլտնտեսություններն ու սովխոզները արդյունաբերական մշակման հանձնված խաղողի ցածր շաքարայնության պատճառով մինչև 4 միլիոն ռուբլի պակաս եկամուտ են ստանում։

Հայաստանում խաղողի որակը բարձրացնելու նպատակով անհրաժեշտ է կիրառել մի շարք անհետաձգելի միջոցառումներ։ Նախ, թերևս, հարկ լինի սահմանել այնպիսի կարգ, որի համաձայն խաղողի վաճառքի պլանների կատարումը գնահատվի հավասարապես թե՛ ըստ քաշի և թե ըստ որակի։ Անհրաժեշտ է նաև խիստ վերահսկողություն սահմանել բերքահավաքի ժամկետների նկատմամբ և պատասխանատվության կարգ սահմանել բերքահավաքից անմիջապես առաջ այգիները ջրելու համար։ Անհրաժեշտ է հետևողականորեն շարունակել այգիների նորացման պրակտիկան, որի շնորհիվ կկանխվեն վազի տարիքային հյուծումը, բերքատվության անկումը, տնկարկների նոսրությունը։

Այդ միջոցառման իրականացումը հարկ է զուգակցել ոչ պակաս կարևոր մի այլ պրոբլեմի հետ, այն է՝ խաղողագործության տեղաբաշխումն ըստ տեսակայնության, պահպանելով ինչպես գյուղատնտեսության, այնպես էլ գինեգործական արդյունաբերության, հավասարապես նաև խաղողը թարմ վիճակում օգտագործելու պահանջները։ Այդ նպատակով, ըստ երևույթին, հարկ կլինի բարձրացնել կոլտնտեսությունների ու սովխոզների շահագրգռությունն այնպիսի արժեքավոր տեսակների արտադրության հարցում, ինչպիսիք են «Ոսկեհատը», «Մուսկատը», «Ալիգոտեն», «Պինոն», «Սապերավին»։ Այդ նպատակով անհրաժեշտ կլինի բարձրացնել նշված տեսակների գնման գները և դրանց բերքատվությունը պլանավորել տվյալ տեսակների ֆիզիոլոգիական հնարավորություններին համապատասխան։

Կարևոր է հիմնել միայն մաքուր տեսակային այգիներ՝ հաշվի առնելով արտադրության և առևտրի պահանջները։ Դա հնարավորություն կընձեռի զգալիորեն թեթևացնելու տնկարկների խնամքը, բարձրացնելու խաղողագործի աշխատանքի արտադրողականությունը, իջեցնելու արտադրանքի ինքնարժեքը։ Դա կբացառի նաև արդյունաբերական վերամշակման հանձնելիս տեսակները խառնելու մեքենայությունները։

Այդ առումով տնտեսապես միանգամայն նպատակահարմար է Արարատյան հարթավայրի առանձին տնտեսություններում ներդնել միայն «Մուսկատը» և «Սապերավին», իսկ հանրապետության հյուսիս-արևելյան գոտում՝ «Ալիգոտե» և «Պինո» տեսակները։ Այս երկու տեսակներն առավել նպատակահարմար են շամպայնի արտադրության համար, և դրանց զարգացումը հնարավորություն կընձեռի հրաժարվելու գինենյութերի ներմուծումից։

Ըստ երևույթին հարկ կլինի նաև միջոցներ ձեռնարկել խաղողագործությունը որոշակի չափերով գիներգործական արդյունաբերությանը ի սպաս դնելու նպատակով։ Այդ առումով խրախուսելի է Հայաստանում սովխոզ-գործարանների ստեղծման պրակտիկան, որը ագրոարդյունաբերության ինտեգրացիայի առավել արդյունավետ ձևերից մեկն է։ Հանրապետությունում արդեն գործող չորս սովխոզ-գործարանների պրակտիկան համոզիչ կերպով ապացուցում է նման ինտեգրացիայի տնտեսական մեծ առավելությունները։

Նոր սովխոզ-գործարանների կազմակերպումը, հատկապես Թալինի ջրանցքի երկրորդ և երրորդ հերթերի, Արզնի—Շամիրամ ջրանցքի երկրորդ հերթի գոտում յուրացվող ոռոգելի հողատարածություններում, հնարավորություն կընձեռի այգիների նոր զանգվածներ ստեղծելու՝ ելնելով գինեգործական արդյունաբերության պահանջներից և հիմնվելով տեղական սորտերի ու հանրապետության սելեկցիոներների ստեղծած նոր սորտերի վրա։ Բնական է, որ չպետք է նաև թերագնահատել տեղական բարձր տեսակի սեղանի խաղողի դերը։

Նոր տնկարկներում սեղանի խաղողի տեսակների բաժինը կարելի է ավելացնել այն հաշվով, որպեսզի դրանց աճեցման համար բարենպաստ կլիմայական պայմաններում բերքահավաքի ժամկետը երկարացվի մինչև չորս ամիս։ Այսպես, գերվաղահաս տեսակները կարելի է հավաքել հուլիսին, վաղահասը՝ օգոստոսին, միջահասը՝ սեպտեմբերին, ուշահասը՝ հոկտեմբերին։ Այսպիսով, կկարողանանք մի քանի ամիս շարունակ բնակչությանը մատակարարել թարմ խաղող, իսկ դրա անհրաժեշտությունը վաղուց է զգում ինչպես մեր հանրապետության, այնպես էլ Միության արդյունաբերական շատ կենտրոնների ազգաբնակչությունը։ Այդ նպատակով անհրաժեշտ է կատարելագործել պետական խոշոր տնկարաններում յուրարմատային և պատվաստված տնկանյութի արագացված աճեցման մեթոդները։ Կարևոր է հատուկ ուշադրություն նվիրել հիդրոպոնիկայի ինստիտուտում մշակված բաց հիդրոպոնիկ եղանակով տնկանյութի աճեցմանը։

Խաղողագործության տնտեսական արդյունավետության բարձրացման հետ սերտորեն առնչվում է ճյուղում աշխատանքի արտադրողականության աճը։ Այս հարցում վճռական նշանակություն ունի աշխատատար պրոցեսների մեքենայացումը։ Մինչդեռ առայժմ մեզ մոտ մեքենայացված են վնասատուների և հիվանդությունների դեմ մղվող պայքարը և միջշարային տարածությունների մշակումը։ Աշխատատար մյուս պրոցեսների համար նախատեսված հատուկ գութանները համարյա ամենուրեք վատ են օգտագործվում։ Անհրաժեշտ է արմատապես բարելավել այդ գործը։

Խաղողագործության ինտենսիվացումը պետք է իրականացվի նաև արդյունաբերական և սեղանի նորանոր լավագույն տեսակների ստեղծման հիման վրա։ Այդ նպատակով հանրապետությունում իրականացվում է մեծ ծավալի աշխատանք։ Խաղողագործության, գինեգործության և պտղաբուծության գիտահետազոտական ինստիտուտը արտադրության է հանձնել «Տոկուն», «Ուրարտու», «Կարմրահյութ», «Հաղթսի» և արժեքավոր այլ տեսակներ, որոնք աչքի են ընկնում բարձր որակով, բերքատվությամբ, ցրտադիմացկունությամբ։ Այդ նպատակով օգտակար աշխատանք է կատարում նաև գյուղատնտեսական ինստիտուտի խաղողագործության ամբիոնը։ Մենք այսօր ունենք այնպիսի ճանաչված մասնագետներ, ինչպիսիք են Վ. Ի. Լենինի անվան համամիութենական գյուղատնտեսական ակադեմիայի (ՎԱՍԽՆԻԼ) թղթակից-անդամ Ս. Պողոսյանը, պրոֆ. Պ. Այվազյանը և ուրիշներ։ Սորտափորձարկման պետական հանձնաժողովն ընդունել է այդ նույն ամբիոնում ստացված 12 նոր տեսակի էլիտային հիբրիդները (7 սեղանի և 5 տեխնիկական)։ Դրանք վաղ են մտնում առատ պտղաբերության շրջան և արդեն երկրորդ տարում հեկտարից տալիս 150 ցենտներ բերք՝ 24—26 տոկոս շաքարայնությամբ։ Երրորդ տարում բերքատվությունը հասնում է 450—500 ցենտների։ Հանրապետության կառավարության որոշմամբ խաղողի այդ տեսակներն արագ տեմպով ներդրվում են արտադրության մեջ։ Եթե այդ տեսակներն իրենց արդարացնեն ծավալուն արտադրության պայմաններում, ապա հանրապետության խաղողագործության առջև կբացվեն նոր հեռանկարներ։

Այսպիսին են, մեր կարծիքով, հանրապետության խաղողագործության բնագավառում առկա թերությունների վերացման ու մեր գյուղատնտեսության այդ առաջատար ճյուղի և՛ քանակական, և՛ որակական զարգացման հիմնական ուղիները։

---

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՊԵՐԻ ԸՆԴԼԱՅՆՄԱՆ ՀԱՄԱՐ

**Յ. Օ. ԲԱԴԱԼՅԱՆ**
Հայկական ՍՍՀ առևտրաարդյունաբերական
պալատի նախագահության նախագահ

ՍՈՎԵՏՆԵՐԻ ԵՐԿՐԻ ժողովրդական տնտեսության անշեղ վերելքը, գիտատեխնիկական առաջընթացը, տասներորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարումը մեծապես ընդլայնել են մեր երկրի մասնակցությունը աշխատանքի միջազգային բաժանմանը, արտաքին տնտեսական և գիտատեխնիկական կապերի հետագա զարգացմանը։ Այդպիսի կապերը թե՛ քաղաքական և թե տնտեսական խնդիրների լուծմանը նպաստող արդյունավետ միջոց են։ Տնտեսական խնդիրների հաջող լուծման, արտադրության արդյունավետության բարձրացման և գիտության ու տեխնիկայի առաջընթացի արագացման համար միջազգային կապերը լրացուցիչ հնարավորություն են ընձեռում։

Այս խնդիրների իրականացման գործում իր որոշակի տեղն ունի Հայկական ՍՍՀ առևտրաարդյունաբերական պալատը (ԱԱՊ)։ Այսօր հասարակական այս կազմակերպության անդամ են հանրապետության 175 արդյունաբերական ձեռնարկություններ, գիտահետազոտական, շինարարական, առևտրական և այլ կազմակերպություններ։ Այն ակտիվորեն նպաստում է արտասահմանյան երկրների հետ Սովետական Հայաստանի արտաքին տնտեսական և գիտատեխնիկական կապերի զարգացմանը։

Լայն ճանաչում է ստացել Հայկական ՍՍՀ ԱԱՊ-ի գործունեությունը ցուցահանդեսների կազմակերպման, արտահանվող և ներմուծվող ապրանքների էքսպերտիզայի, գյուտարարության պատենտավորման, ապրանքանիշերի մըշակման, գիտատեխնիկական թարգմանությունների և այլ աշխատանքների ոլորտում։ Պալատը կոչված է նպաստելու արդյունաբերության արտաքին առևտրական կապերի ընդլայնմանը, արտահանվող արտադրանքի որակի և մրցունակության բարձրացմանը, ՏՓԽ-ի անդամ երկրների համագործակցության երկարաժամկետ նպատակային ծրագրերի իրականացմանը։ ԱԱՊ-ի գործունեությունը նպաստում է Սովետական Միության արտաքին-տնտեսական քաղաքականության սկզբունքների հիման վրա արտասահմանյան երկրների գործարար շրջանների հետ փոխշահավետ հարաբերությունների զարգացմանը։

Նշված խնդիրների իրականացման նպատակով մեր պալատը ազգային, ռեգիոնալ և միջազգային տնտեսական կազմակերպությունների հետ համագործակցության բազմազան ձևեր է կիրառում։ Իր գոյության երկու տասնամյակների ընթացքում նա գործնական և կայուն կոնտակտներ է հաստատել ՀԺՀ ի, ԳԴՀ-ի, ԼԺՀ-ի, ՉՍՍՀ-ի և ՏՓԽ-ի մյուս երկրների առևտրական պալատների ու համանման կազմակերպությունների, ինչպես նաև սովետա-ֆրանսիական, սովետա-իտալական, սովետա-ֆիննական և այլ պալատների հետ։

Արդյունաբերության կոոպերացիոն կապերի, ինֆորմացիայի փոխանակման և հանրապետության ներմուծման-արտահանման գործողությունների զարգացման նպատակով մշտապես ընդլայնվում է համագործակցությունը եղբայրական սոցիալիստական երկրների հետ։ Միաժամանակ մեր պալատը ջանքեր է գործադրում զարգացած կապիտալիստական և զարգացող երկրների հետ առևտրատնտեսական կապեր հաստատելու համար։

Միայն վերջին վեց տարում պալատը ընդունել է արտասահմանյան ֆիրմաների և կազմակերպությունների շուրջ 1300 ներկայացուցիչների, գործնական ծրագրեր են կազմվել սոցիալիստական երկրներից, Ավստրալիայից, Ավստրիայից, Հունաստանից, Կանադայից, ԱՄՆ-ից, Ճապոնիայից, Չինաստանից և այլ երկրներից ժամանած հարյուրից ավելի պատվիրակությունների համար։

Արտասահմանյան երկրների գործարար շրջանների ներկայացուցիչների հետ գործնական կապերը նպաստում են միջազգային ասպարեզում մեր հանրապետության և նրա առևտրաարդյունաբերական պալատի հեղինակության զգալի բարձրացմանը և փոխշահավետ կապերի ընդլայնմանը։

Ամեն տարի Սովետական Հայաստանի շուրջ 80 ձեռնարկություններ ու կազմակերպություններ աշխարհի 70 երկրներ են առաքում մոտ 200 անուն ապրանքներ։ Հանրապետության արտադրանքն արժանի համբավ է վայելում սոցիալիստական բոլոր և զարգացող բազմաթիվ երկրներում, ինչպես նաև Անգլիայում, Բելգիայում, Հոլանդիայում, Իտալիայում, Ֆրանսիայում, ԳՖՀ-ում և կապիտալիստական այլ երկրներում։

Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության գիտատեխնիկական բարձր մակարդակի վկայությունն է, որ այսօր հանրապետության արտահանման զգալի բաժինը՝ մինչև 40 տոկոս, մեքենաշինության արտադրանքն է — մետաղամշակման բազմազան հաստոցներ, էլեկտրատեխնիկական սարքավորումներ, էլեկտրոնային, էլեկտրաչափիչ և ռադիոտեխնիկական սարքեր, կոմպրեսորներ և այլն։ Արտաքին շուկայում մեծ մասսայականություն են վայելում նաև հայկական գորգերը, կոնյակը, արհեստագործական-գեղարվեստական առարկաները։

Միջազգային տնտեսական կապերի զարգացման կարևոր ձևերից են հանրապետության ինքնուրույն էքսպոզիցիաները միջազգային տոնավաճառներում և ցուցահանդեսներում։ Դա ո՛չ միայն նպաստում է արտաքին-տնտեսական կապերի ընդլայնմանը, այլև մեծ դեր է խաղում հայ ժողովրդի սոցիալ-տնտեսական աննախընթաց նվաճումների պրոպագանդմանը։ Վերջին տարիներին Հայկական ՍՍՀ-ի ցուցահանդեսներ կազմակերպվել են չորս մայրցամաքների յոթ երկրներում, որտեղ ցուցադրվել են 5,5 հազար ցուցանմուշներ։ Այցելուների թիվը անցել է 15 միլիոնից։ Հատկանշական է 1981 թ. Մոնրեալում կազմակերպված «Մարդը և նրա աշխարհը» միջազգային ցուցահանդեսը, որտեղ Սովետական Հայաստանը ցուցադրեց մոտ 500 ցուցանմուշ։ Մոնրեալի մեր էքսպոզիցիան հսկայական հետաքրքրություն առաջացրեց կանադացի այցելուների, առանձնապես Կանադայի և ԱՄՆ-ի հայ բնակչության շրջանում։ Հայաստանի էքսպոզիցիայի մասին հատուկ հաղորդումներ էին տրվում կանադական ռադիոյով և հեռուստատեսությամբ, այն լայնորեն լուսաբանվում էր տեղական մամուլում։ Ցուցահանդեսի օրերին լրացվեց տպավորությունների երեք գիրք, և բոլորն էլ պարունակում էին «Կեցցե՛ք», «Հոյակա՛պ է», «Հիանալի՛ է» արտահայտություններ։

Կարելի է կատարել մի քանի մեջբերումներ։ Ուշագրավ է Քվեբեկի նահանգի կառավարության շրջակա միջավայրի պահպանության պետական մինիստր Ժարդենի շնորհակալական խոսքը.

«Կեցցե՛ք և՛ Դուք, և՛ Ձեր ժողովուրդը։ Ձեր էքսպոզիցիան հոյակա՛պ է, անչա՛փ գեղեցիկ և նույնիսկ անսովոր։

Կեցցե՛ք և շնորհակալություն այս ամենի համար»։

Տպավորությունների գրքում կարդում ենք նաև այլ սրտառուչ մակագրություններ։

«Ձեր գեղեցիկ հանրապետությունը ներկայացված է բարձր ճաշակով։ Ձեր պետական անսամբլի պարերը, որոնք մենք դիտեցինք՝ այցելելով ցուցահանդես, գեղեցիկ են ու հմայիչ»։

«Մենք եկել ենք Բոստոնից, որպեսզի դիտենք հայկական այս մեծ արվեստը, այն մեզ վրա թողեց անկրկնելի տպավորություն»։

«Թվում է, թե սա երազ է, բայց իրականություն է։ Դարերի ընթացքում մեր հողը ոտնատակ է տրվել, մեր հոյակերտ քաղաքներն ու եկեղեցիները ավերվել են։ Այն, ինչ ես տեսնում եմ այսօր, վկայում է, որ մեր եղբայրներն ու



քույրերը վերակենդանացնում են հայրենի օջախները։ Մենք այսօր կարող ենք հպարտանալ հայկական գիտությամբ, տեխնիկայով, արվեստով։ Այս ամենը, ինչ ես տեսնում եմ, վկայում է ստեղծագործ ժողովրդի նկատմամբ հայրենի կառավարության հոգատարության, հայ ժողովրդի անընկճելի կամքի մասին»։

Հայկական ՍՍՀ էքսպոզիցիաների գնահատականը, սակայն, չի սահմանափակվում հիացական արձագանքներով և տեղական մամուլի հոդվածներով։ Դրանք ստանում են նաև պաշտոնական ճանաչում։ Այսպես, 1980 թ. Լայպցիգի գարնանային ցուցահանդեսում, որտեղ մեր հանրապետությունը հանդես եկավ «Գյուտարարությունն ու ռացիոնալիզացիան Հայկական ՍՍՀ-ում» թեմատիկ բաժնով, մեր ցուցանմուշներն արժանացան չորս ոսկե մեդալների։ 1978 թ. Ալժիրի միջազգային ցուցահանդեսում, ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի, Իտալիայի և մյուս երկրների հետ մեկտեղ, մեր բաժինը պարգևատրվեց արծաթե մեդալով և պատվոգրով։ Հարկ է նշել, որ միջազգային տոնավաճառների մեր ավանդական և մշտական մասնակիցներն են «Հայէլեկտրամեքենա», «Սևանի», «Արարատ», «էլեկտրասարք» միավորումները, հաստոցաշինական գործարանները, «Հայգորգ» ֆիրման և շատ այլ ձեռնարկություններ։

Արտասահմանյան ցուցահանդեսների հայկական բաժիններում ցուցադրվել են հանրապետության կյանքին վերաբերող տասնյակ կինոնկարներ, ռադիոյով ու հեռուստատեսությամբ հաղորդվել տեքստային և երաժշտական ծրագրեր։ Կազմակերպվել են մամուլի կոնֆերանսներ, «կլոր սեղաններ», արտասահմանյան հայ գաղութներում անցկացվել են զրույցներ ու զեկուցումներ, որոնցում վառ կերպով պրոպագանդվել են սովետական իշխանության տարիներին մեր ժողովրդի ձեռք բերած վիթխարի հաջողությունները։ Այս առումով հատկանշական են մեր ցուցահանդեսները Լոս Անջելոսում, Բուենոս Այրեսում, Ջագրեբում և այլուր, որոնք անցան մեծ հաջողությամբ, իսկ դրանց կազմակերպիչներից շատերը արժանացել են խրախուսանքի։

Հայկական ՍՍՀ առևտրաարդյունաբերական պալատի գործունեության անբաժանելի մասն են միջազգային և արտասահմանյան ցուցահանդեսների կազմակերպումը մեր հանրապետությունում։ Միայն վերջին երկու տարում կազմակերպվել են տասնյակ ցուցահանդես և սիմպոզիում։ Այդ ստուգատեսներից կարելի է հիշատակել անցյալ տարվա մայիսին Երևանում անցկացված կոշիկի արտադրության մեքենաների ու սարքավորումների միջազգային մասնագիտացված ցուցահանդեսը՝ «Կոշիկ—81-ը»։ Աշխարհի 12 երկրներից մասնակցում էին 109 ֆիրմաներ։ Ցուցահանդեսում գնվեցին միլիոնավոր ռուբլիների սարքավորումներ։

Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության նախաձեռնությամբ 1981 թ. հունիսին Աբովյանում կազմակերպվեց «Ալֆա Լավել» շվեդական կոնցեռնի «Ոչխարների մեքենայական կիթը» ցուցահանդեսը, որն այցելեցին երկու հազար մասնագետներ։

Ցուցահանդեսների ընթացքում միութենական արտաքին առևտրական կազմակերպությունները սարքավորումների գնման գործարքներ են ձևակերպում, դրանք իրականացնելով և՛ անմիջապես, և՛ հետագա տարիներին։ Բացառիկ էր համամիութենական արտաքին առևտրական «Մաշինոէքսպորտ» միավորման և բուլղարական «Բալկանկարիմպեքս» ֆիրմայի միջև կնքված պայմանագիրը։ Դա կատարվեց ամբարձիչ-տրանսպորտային սարքավորումների Երևանի 1980 թ. ցուցահանդեսում։

Հանրապետության ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսում ապրիլ ամսին լայնորեն էր ներկայացված Գերմանական Դեմոկրատական Հանրապետության կահույքը։ Ցուցահանդեսը կազմակերպել էր ԳԴՀ-ի «Հոլց ունդ փապիր» արտաքին առևտրական միավորումը։ Դա Տնտեսական փոխօգնության խորհրդի կոմպլեքսային ծրագրի շրջանակներում մեր երկու երկրների միջև տարեցտարի ծավալվող գիտատեխնիկական համագործակցության, կոոպերացման ու մասնագիտացման դրսևորումներից մեկն է։ Եվ, առհասարակ, Հայաստանում ավելի ու ավելի հաճախ են անցկացվում ցուցահանդեսներ ու գիտաժողովներ, որոնք արտացոլում են Գերմանական Դեմոկրատական

Հանրապետության ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի նվաճումները և մեր արգասաբեր համագործակցության արդյունքները։

Երևանում կիրառվում է ցուցահանդեսային միջոցառումների նոր ձև՝ սոցիալիստական երկրների էկոնոմիկայի օրերի կազմակերպում։ 1981 թ. անցկացվեցին «Չեխոսլովակյան էկոնոմիկայի և տեխնիկայի օրերը»։ Եղբայրական երկրի մասնագետները հանդես եկան մեքենաշինության, հաստոցաշինության, քիմիական, տեքստիլ, սննդի արդյունաբերության վերաբերյալ բազմաթիվ զեկուցումներով ու զրույցներով։ Դրանց մասնակցեցին Երևանի, Լենինականի, Կիրովականի հազարից ավելի մասնագետներ։

Տեխնիկայի տանը կազմակերպվեց ՉՍՍՀ-ի արտաքին-առևտրական միավորումների գործունեության մասին պատմող էքսպոզիցիա, ցուցադրվեցին չեխոսլովակյան արդյունաբերության այն նմուշները, որոնք մտցված են սոցիալիստական ընկերակցության երկրներն արտահանվող արտադրանքի ցանկի մեջ։ Եղբայրական երկրների մասնագետները եղան խոշոր արտադրամիավորումներում, գործարաններում ու ֆաբրիկաներում։ ՉՍՍՀ էկոնոմիկայի և տեխնիկայի օրերը նպաստեցին փոխշահավետ տնտեսական և գիտատեխնիկական համագործակցության ամրապնդմանն ու ընդլայնմանը, տարբեր ոլորտներում արտադրության կազմակերպման ու կառավարման փորձի փոխանակմանը։

Մեծ հաջողությամբ անցան նաև «Բուլղարական էկոնոմիկայի և տեխնիկայի օրերը», որոնք կազմակերպվեցին ՍՍՀՄ և ԲԺՀ առևտրաարդյունաբերական պալատների գործունեության մերձեցման երկարաժամկետ ծրագրի շրջանակներում։ Չեխոսլովակիայի և Բուլղարիայի կառավարական պատվիրակությունները ընդունվեցին ՀԿԿ Կենտկոմում, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդում, հանդիպումներ ունեցան աշխատավորական կոլեկտիվներում։ Միայն անցյալ տարի ՀՍՍՀ ԱԱՊ են այցելել աշխարհի 16 երկրների 26 պատվիրակություններ ու ցուցահանդեսների կազմակերպիչներ։

Հանրապետությունում արտասահմանյան երկրների և միջազգային ասպարեզում մեր ցուցահանդեսների կազմակերպման, ինչպես նաև այդպիսի միջոցառումների անցկացման գործում ԱԱՊ-ի օժանդակությունն ու ակտիվ մասնակցությունը նպաստում են գիտատեխնիկական և առևտրատնտեսական կապերի ընդլայնմանը, արտասահմանում Հայկական ՍՍՀ-ի մակնիշը կրող ապրանքների մրցունակության բարձրացմանը։

Այս առումով կարևոր նշանակություն է տրվում գյուտերի պատենտավորման և ապրանքանիշերի գրանցման խնդրին։ Պալատին առընթեր գործում է արդյունաբերական սեփականության պահպանության սեկցիա, որի նիստերում քննարկվում են պատենտալիցենզիոն աշխատանքի հրատապ հարցերը, որոնք առնչվում են սովետական արտահանության իրավապահպանությունն ապահովելու հետ։ Այդ կապակցությամբ պալատը կազմակերպում է խորհրդակցություններ և սեմինարներ։ Հոկտեմբեր ամսին տեղի ունեցած հանրապետական սեմինարում հանդես եկան Մոսկվայից հրավիրված խոշոր մասնագետ-պատենտագետներ։ Այժմ նախապատրաստվում է Երևանում հրավիրել պատենտալիցենզիոն աշխատանքներին նվիրված համամիութենական սեմինար, որին կմասնակցեն ՍՍՀՄ ԱԱՊ-ի, ռացիոնալիզատորության և գյուտարարության գործերի պետական կոմիտեի և «Լիցենզինտորգ» համամիութենական արտաքին-առևտրական միավորման մասնագետները։

Մեզանում պատշաճ մակարդակի վրա է դրված ինֆորմացիոն ծառայությունը։ Ամեն տարի բազմաթիվ ձեռնարկությունների ու կազմակերպությունների, ըստ իրենց պրոֆիլի, ուղարկվում են հազարավոր ուրվագրեր, պլանպրոսպեկտներ, ծանուցագրեր, բուկլետներ, տեխնիկական տեղեկատուներ, բյուլետեններ, պատենտային ու լիցենզիոն աշխատանքների և այլ հարցերի վերաբերյալ նյութեր։ Արտաքին-տնտեսական կապերի ընդլայնմանն ու գիտատեխնիկական առաջընթացին նպաստում են գիտական և տեխնիկական թարգմանությունները։ Միայն 1981 թ. ԱԱՊ-ում թարգմանվել է մոտ 800 հեղինակային մամուլ տեխնիկական գրականություն՝ հանրապետության մինիստրությունների, գերատեսչությունների, արդյունաբերական ձեռնարկությունների, գիտահետազոտական ինստիտուտների, ընդամենը 130 կազմակերպության հա-



մար։ Թարգմանությունները կատարվում են ինչպես եվրոպական և ասիական լեզուներից՝ հայերեն ու ռուսերեն, այնպես էլ օտար լեզուներով։ Այդ աշխատանքներում պալատը ներգրավում է որակյալ և փորձված թարգմանիչների։

Առևտրաարդյունաբերական պալատի գործունեության կարևոր բնագավառն է ապրանքների փորձաքննությունը, որն արդյունաբերական արտադրանքի, տեխնոլոգիական սարքավորումների ու հումքի որակի և քանակի նկատմամբ վերահսկողության, մեր ապրանքների միջազգային մրցունակության բարձրացման գործուն միջոց է։ Փորձաքննությունը միաժամանակ կանխում է արտասահմանում գնված և ներմուծվող ցածրորակ ապրանքների ու տեխնոլոգիական սարքավորումների մուտքը մեր ներքին շուկան։ Հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններին, առևտրական և մյուս կազմակերպություններին առավել լրիվ սպասարկելու նպատակով ստեղծվել են փորձաքննության միջշրջանային բյուրոներ։ Միայն 1981 թ. պալատի մասնագետները կատարել են երեսուն հազար փորձաքննություն, ստուգված են 900 հազար ռուբլու ապրանքներ, սարքավորումներ և հումք, ընդ որում 11,5 հազար ռուբլու ապրանք խոտանված է և որակի կարգն իջեցված։ Մշտապես ավելանում է արտասահմանյան ֆիրմաներից ստացվող հայտերի քանակը՝ հանրապետությունից արտահանվող ապրանքների և սարքավորումների որակի նկատմամբ հսկողություն սահմանելու համար, որը վկայում է առևտրաարդյունաբերական պալատի միջազգային հեղինակության աճի մասին։

Արտասահմանյան երկրների հետ առևտրատնտեսական և գիտատեխնիկական համագործակցության զարգացմանն ակտիվորեն նպաստելու համար 1980 թ. Հայկական ՍՍՀ առևտրաարդյունաբերական պալատն առաջին անգամ արժանացավ «Ոսկե Մերկուրի» միջազգային մրցանակի։ Հեռանկարում ԱԱՊ-ի գործունեության բնորոշ առանձնահատկությունն են աշխատանքների ամբողջ համակարգի բարելավման նոր միջոցների ու ձևերի ընտրությունն ու կիրառումը։

Ծավալուն է պալատի գործունեության հետագա ծրագիրը։ Մեծ հետաքրքրություն կներկայացնեն ՉՍՍՀ-ի դեղորայքի արտադրության նմուշների, Հարավսլավյան ֆիրմաների արտադրած՝ հատակի զանազան ծածկույթների և դանիական օրգտեխնիկայի, հատկապես պատճենահան մեքենաների ցուցահանդեսները։ Այս տարի Երևանում կանցկացվեն Հունգարական Ժողովրդական Հանրապետության էկոնոմիկայի և տեխնիկայի օրերը։ Մեր հանրապետությունը ցուցահանդեսային ինքնուրույն բաժիններով հանդես կգա Հնդկաստանում (Նյու Դելի), ինչպես նաև Բուլղարիայում և Իրաքում կազմակերպվող միջազգային խոշոր ցուցահանդեսներում և տոնավաճառներում։

Կենսագործելով միջազգային տնտեսական համագործակցության ընդլայնման վերաբերյալ ՍՄԿԿ XXVI համագումարի դիրեկտիվները, Հայկական ՍՍՀ առևտրաարդյունաբերական պալատը ձգտում է առավելագույնս նպաստել սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում ծաղկող մեր հանրապետության միջազգային ակտիվ հարաբերությունների ընդլայնմանը, համապատասխան կազմակերպությունների ու արտասահմանյան ֆիրմաների միջև արտաքին-տնտեսական և գիտատեխնիկական կապերի խորացմանը։

---

# ՔԱՂՈՒՍՈՒՑՄԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԴԵՄՔԸ

**ԲԵԼԱ ԴԱՆԻԵԼՅԱՆ**
ՀԿԿ Ղափանի շրջկոմի քարտուղար

*ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ, ԱՇԽԱՏԱՎՈՐԱԿԱՆ մասսաների մարքս-լենինյան կրթության և դաստիարակության, կոմունիստական շինարարության խնդիրների լուծման նպատակով նրանց ստեղծագործական ակտիվության հետագա զարգացման գործում կուսակցությունը առաջնակարգ դեր է հատկացնում գաղափարախոսական, պրոպագանդիստական ակտիվին։ Եվ, բնականաբար, մարքս-լենինյան կրթության կուսակցական ղեկավարման հիմնական օղակներից մեկը համարվում է այդ ակտիվի հետ տարվող աշխատանքը։*

*Քաղաքական լուսավորության համակարգում աշխատանքի հաջողության երաշխիքը պրոպագանդիստական կադրերի ճիշտ ընտրությունն է։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում. «...պրոպագանդիստը գլխավոր դեմքն է կուսակցական ուսուցման մեջ։ Հենց նրանից է մեծապես կախված, թե ինչպիսիք կլինեն սեմինարները, քաղդպրոցները, համալսարանները»։ Մենք պրոպագանդիստներ ենք առաջադրում առավել պատրաստված և հեղինակավոր կոմունիստների, որոնք կարող են բավարարել ունկնդիրների առաջադրած բարձր պահանջները։ Իրեն լիովին արդարացնում և լավ արդյունք է տալիս քաղաքական ուսուցմանը ղեկավար աշխատողների անձնական մասնակցությունը՝ որպես պրոպագանդիստների ու տեսական սեմինարների ղեկավարների։ Կուսկազմակերպություններում քաղաքական աշխատանք տանող պրոպագանդիստներից 63-ը հիմնարկ-ձեռնարկությունների և տնտեսությունների ղեկավարներ են, որոնցից 62-ն ունեն բարձրագույն կրթություն։*

*Պրոպագանդիստների հեղինակության և պատասխանատվության բարձրացմանը մեծապես նպաստում է կուսակցական ժողովներում և շրջկոմի բյուրոյում նրանց թեկնածությունների հաստատումը։ Դա մեզ մոտ պրակտիկա է դարձել։ Ամեն տարի վերանայում ենք պրոպագանդիստական կադրերի կազմը, հարկ եղած դեպքում կատարում անհրաժեշտ փոփոխություններ։*

*Պրոպագանդիստական կադրերի հաջող ընտրությունը, որքան էլ կարևոր, այնուամենայնիվ դեռևս գործի սկիզբն է։ Էական նշանակություն ունի նաև նրանց որակավորման բարձրացման արդյունավետ կազմակերպումը։ Պրոպագանդիստների գիտելիքները մշտապես լրացնելու և հարստացնելու, նրանց վարպետությունը բարձրացնելու անհրաժեշտությունը մեկ անգամ ևս շեշտվեց «ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների լույսի ներքո կուսակցական ուսուցման հետագա կատարելագործման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։*

*Մեզ մոտ ամեն տարի պրոպագանդիստների շարքերը համալրվում են երիտասարդ կոմունիստներով։ Ընթացիկ ուսումնական տարում, օրինակ, առաջին անգամ պրոպագանդիստներ են առաջադրվել կուսակցական ուսուցման սիստեմում՝ 25, տնտեսագիտական կրթության սիստեմում՝ 63 մարդ։ Բնականաբար, նրանք մեթոդական օգնության խիստ կարիք են զգում։ Հաշվի առնելով այն կարևոր հանգամանքը, որ պրոպագանդիստին ներկայացվող կարևոր պահանջը նրա գաղափարատեսական բարձր մակարդակն ու մեթոդական վարպետությունն է, մենք մեծ ուշադրություն ենք նվիրում հենց նրանց գաղափարաքաղաքական կոփվածքի, տեսական պատրաստվածության և մեթոդական վարպետության ուժեղացմանը, այլ խոսքով՝ որակավորման համակողմանի բարձրացմանը։*

*Մեկ այլ, ոչ պակաս կարևոր հանգամանք ևս։ Մեր պրոպագանդիստների ճնշող մեծամասնությունը տնտեսական ղեկավարներ, ինժեներներ, գյուղատնտեսության մասնագետներ են, որոնցից շատերը չունեն դաստիարակչական աշխատանքի անհրաժեշտ փորձ, թույլ են տիրապետում հոգեբանությանը և մանկավարժությանը։ Նման պայմաններում պրոպագանդիստների գիտամեթոդական պատրաստվածությունն առանձնահատուկ նշանակություն է ձեռք բերում։ Անցած քաղուստարում գաղափարական բնագավառի 180 աշխատողներ մասնակցել են Ստ. Շահումյանի անվան հանրապետական քաղլուստանը կազմակերպված սեմինար-պարապմունքներին ու վերապատրաստման դասընթացներին։*

*Պրոպագանդիստների որակավորման խնդրին են ծառայում նաև կուսշրջկոմին առընթեր մշտապես գործող սեմինարները, գաղափարադաստիարակչական աշխատանքի հրատապ պրոբլեմներին նվիրված գիտագործնական կոնֆերանսները, որտեղ զեկուցումներով ու դասախոսություններով հանդես են գալիս շրջանի կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավարներ, Երևանից հրավիրված դասախոսներ ու գիտնականներ։ Պրոպագանդիստները ոչ միայն տեսական խոր գիտելիքներ ու մեթոդական օգնություն են ստանում, այլև իրազեկ են դառնում երկրի, շրջանի, տնտեսությունների առջև ծառացած տնտեսական ու սոցիալական հրատապ խնդիրներին ու պրոբլեմներին և պարապմունքների ընթացքում դրանք հաղորդում իրենց ունկնդիրներին։*

*Կուսակցական պրոպագանդայում, պրոպագանդիստներին ցույց տրվող օգնության գործում կարևոր դեր են խաղում քաղլուսկաբինետները։ Շրջանում գործում է չորս քաղլուսկաբինետ, որոնցից մեկը՝ հասարակական հիմունքներով։ Քաղաքական և գաղափարախոսական աշխատանքի այդ օջախներում (կուսշրջկոմի, Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի, Ղափանի հանքավարչության և Նորաշենիկի սովխոզի) ստեղծված են պրոպագանդիստներին օգնելու բոլոր պայմանները. կան ցուցադրական բազմազան միջոցներ և հարուստ գրականություն՝ մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերը, ընկ. Լ. Ի. Բրեժնևի, կուսակցության ու պետության մյուս ղեկավարների աշխատությունները, հասարակական-քաղաքական ու մեթոդական գրքեր և այլն։ Այնտեղ պրոպագանդիստների համար ըստ ուսումնասիրվող թեմաների պարբերաբար անցկացվում են կոնսուլտացիաներ։ Մյուս կուսկազմակերպություններում գործում են «Օգնություն պրոպագանդիստին» անկյուններ։*

*Պրոպագանդիստներին շատ բանով են օգնում քաղլուսկաբինետներում գեղեցիկ և ճաշակով ձևավորված «Ինֆորմացիոն կենտրոնները»։ Դրանցում ներկայացված են կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականությանը, մեր երկրի, հանրապետության, շրջանի նվաճումներին և տասնմեկերորդ հնգամյակի խնդիրներին նվիրված հարուստ նյութեր, կուսակցության և կառավարության կարևորագույն որոշումները, տեղեկություններ շրջանի տնտեսությունների ու արդյունաբերական ձեռնարկությունների գործունեության վերաբերյալ։ Այդ անկյունները պարբերաբար թարմացվում են նոր նյութերով։*

*Պրոպագանդիստական աշխատանքի արդյունավետության բարձրացման կարևոր պայմաններից մեկը տեխնիկական միջոցների օգտագործումն է։ Այդ հարցում պրոպագանդիստներին օգնելու նպատակով շրջկոմի քաղլուսկաբինետում նրա արտահաստիքային մեթոդիստ Շմավոն Մովսիսյանը (շրջանային*

կուլտուրայի տան դիրեկտոր, «Զանգեզուրֆիլմ» ժողովրդական կինոստուդիայի ղեկավար) կուտակել է գիտողական հարուստ նյութեր: Բազմայան քարտեզներին, ալբոմներին, լուսանկարներին և պատմական փաստաթղթերին նա ավելացրել է կինոֆիլմեր, դիաֆիլմեր, դիապոզիտիվներ, մագնիտաֆոնային ձայնագրություններ՝ նվիրված շրջանի պատմությանն ու առօրյային, նրա նվաճումներին, առաջավոր պրոպագանդիստների պարապմունքներին, ուսումնասիրվող տարբեր թեմաների:

Պարապմունքները հետաքրքրական և բարձր մակարդակով անցկացնելու գործում պրոպագանդիստներին մեծ օգնություն են ցույց տալիս «Զանգեզուրֆիլմ» կինոստուդիայի նկարահանած փաստագրական կինոնկարները, ինչպես օրինակ, «Զանգեզուրյան մտորումներ», «Բալլադ լեռնագործի մասին», «Փոքր քաղաքի մեծ հերոսները», «Փառք աշխատանքին», «Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի պրոբլեմային հարցերը», «Գանձասարի մարդիկ», «Ղափան—Դաղստան սոցիալիստական մրցությունը», «Իմ տունը իմ գործարանն է», «Առաջավոր պրոպագանդիստի փորձը» և այլն:

Պրոպագանդիստական աշխատանքի բարելավման ու կատարելագործման լավ միջոց է առաջավոր պրոպագանդիստների փորձին նվիրված հատուկ թերթիկների լույսընծայումը: «ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները գործողության մեջ» վերտառությամբ այդպիսի թերթիկներ ենք հրապարակել Ալբերտ Ստեփանյանի (Ղափանի Լենինի անվան հանքվարչություն), Մարտուն Գրիգորյանի, Սերոբ Հակոբյանի, Վոլոդյա Խաչատրյանի (Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատ) և առաջավոր այլ պրոպագանդիստների փորձի վերաբերյալ:

Այս առումով հատկապես ուսանելի փորձ է կուտակվել Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի կուսկազմակերպությունում: Այստեղ թերթիկները լույս են ընծայվում կոմբինատի «Գիտելիք» ընկերության, կուսկոմիտեին առընթեր առաջավոր փորձի ուսումնասիրման և պրոպագանդման բյուրոյի, տնտեսագիտական կրթության խորհրդի նախաձեռնությամբ: Քաջարանի հարստացուցիչ ֆաբրիկայի հերթափոխի վարպետ, կոմունիստ Մարտուն Գրիգորյանի առաջավոր փորձին նվիրված թերթիկի բնաբան են ընտրվել «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման հետևյալ տողերը. «Ավելի քան երբևիցե հրատապ է լենինյան այն դրույթը, որ պետությունը ուժեղ է մասսաների գիտակցականությամբ: Նա ուժեղ է այն ժամանակ, երբ մասսաները ամեն ինչ գիտեն, ամեն ինչի մասին կարող են դատել և ամեն ինչի դիմում են գիտակցաբար»: Դա, ըստ էության, պրոպագանդիստներին ուղղված պահանջ է, որի իրականացմանը ամենայն պատասխանատվությամբ է վերաբերվում Մ. Գրիգորյանն իր գործունեության ընթացքում: Եվ ճիշտ է նշվում, որ նա յուրաքանչյուր պարապմունքի ընթացքում ձգտում է ունկնդիրներին տոգորել օրինական հպարտությամբ կուսակցության կանխագծումների իրականացման գործում սովետական ժողովրդի հերոսական աշխատանքի նկատմամբ, նրանց դաստիարակել Լենինի, կոմունիստական կուսակցության գաղափարներին հավատարմության, մեր երկրի տնտեսական ու պաշտպանական հզորությունը աշխատանքային նոր հաջողություններով ամրապնդելու ոգով: Պրոպագանդիստն իր առջև նպատակ է դնում, որպեսզի հերթափոխում արմատավորվեն փոխադարձ օգնության վրա խարսխված ընկերասիրությունը, կոլեկտիվիզմը, գործի նկատմամբ ընդհանուր ու անձնական պատասխանատվությունը, բարձր կազմակերպվածությունը:

Եվ օրինաչափ է, որ պրոպագանդիստ Մ. Գրիգորյանի ղեկավարած հերթափոխը տարիներ շարունակ սոցիալիստական մրցության առաջավոր է, ակտիվորեն մասնակցում է նորի ու առաջավորի արմատավորմանը, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործմանը: Այդ ամենի, ինչպես նաև կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի պահանջները բարեխղճորեն կատարելու համար այն արժանացել է կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման:



Հերթափոխի անդամներից շատերը պարգևատրվել են ՍՍՀՄ շքանշաններով և մեդալներով, սոցիալիստական մրցության հաղթողի կրծքանշանով: Տասներորդ հնգամյակում հերթափոխը պլանից ավելի վերամշակել է 73 հազար տոննա հանքաքար, թողարկել 238 տոննա մոլիբդենի և պղնձի խտանյութ, բարձր ցուցանիշներով կատարել որակի բարելավման առաջադրանքները:

ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը պրոպագանդելիս Մ. Գրիգորյանը, կոնկրետ փաստերով և օրինակներով ընդհանրացնելով հարստացուցիչ ֆաբրիկայի և մասնավորապես իրենց հերթափոխի նվաճումները, ունկնդիրներին ծանոթացնելով ծառացած նոր խնդիրներին, միաժամանակ բացահայտում է աշխատանքում տեղ գտած թերություններն ու թերացումները, կշտամբանքի խոսք ասում նրանց մասին, ովքեր թերանում են իրենց պարտականությունների կատարման մեջ: Տեսականի և գործնականի կապի ճիշտ զուգակցմամբ պրոպագանդիստը հասել է այն բանին, որ, իրոք, ունկնդիրներն ամեն ինչ գիտեն, ամեն ինչի մասին դատում և ամեն ինչի դիմում են գիտակցաբար:

Քաղաքական ուսուցման հաջողությունն ապահովելու գործում որոշակի նշանակություն ունեն պրոպագանդիստական կադրերի խրախուսումը, նրանց արդյունավետ գործունեության ըստ ամենայնի արժեքավորումը: Այդ հարցերին ևս մենք լուրջ ուշադրություն ենք նվիրում: Պրոպագանդիստների բարոյական խրախուսման նպատակով կուսշրջկոմի քաղլուսկաբինետում ստեղծել ենք պատվո տախտակ՝ Մեր լավագույն պրոպագանդիստները վերտառությամբ և Պատվո գիրք: Յուրաքանչյուր ուստարվա վերջում, արդյունքները ամփոփելուց հետո, հաշվի առնելով նախընթաց տարիների արդյունավետ աշխատանքը, շրջկոմի բյուրոյի որոշմամբ պատվո գիրքը համալրում ենք պրոպագանդիստների նոր անուններով, իսկ պատվո տախտակը՝ լուսանկարներով: Պատվո գրքում գրանցված են 20 առաջավոր պրոպագանդիստների անուններ:

Պրոպագանդիստների խրախուսման արդյունավետ ձևեր են կիրառում նաև շատ սկզբնական կուսկազմակերպություններ: Այդ առումով լավ ավանդույթ է ստեղծվել Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի և «Քաջարանշին» տրեստի կուսկազմակերպություններում: Այստեղ սոցմրցության արդյունքներն ամփոփելիս և գնահատելիս հաշվի է առնվում նաև գաղափարական դաստիարակության բնագավառում պրոպագանդիստների ծավալած գործունեությունը: Դրա համար, նախօրոք սահմանված պայմաններին համապատասխան, մրցության հաղթողների թվում խրախուսական մրցանակներ են տրվում նաև առաջավոր պրոպագանդիստներին: Կոմբինատում ուսումնական տարվա ընթացքում պարբերաբար կազմակերպվում են քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության պարապմունքների մասսայական ունկնդրումներ, որոնց արդյունքների հիման վրա տարվա վերջին որոշվում են լավագույն քաղդպրոցը, պրոպագանդիստը, արտադրամասային կուսկազմակերպությունները: Նրանց խրախուսման համար սահմանվում են դրամական մրցանակներ, պատվոգրեր, փոխանցիկ հուշադրոշներ, որոնք հանձնվում են հանդիսավորությամբ, յուրաքանչյուր ուսումնական տարվա ավարտի առթիվ հրավիրված պրոպագանդիստների հավաքում: Անցած քաղուստարում նման խրախուսանքի են արժանացել կոմբինատի տարբեր օղակների 40 պրոպագանդիստներ:

Կոմբինատի կուսկոմիտեին առընթեր ստեղծվել է առաջավոր պրոպագանդիստի ամբիոն, որը պարբերաբար հրատարակում է լավագույն պրոպագանդիստների գործին ու փորձին, նրանց նախաձեռնություններին նվիրված թերթիկներ: Եթե պրոպագանդիստը կուսկազմակերպության տեսադաշտում է և նրա հետ տարվում է տեսական, մեթոդական անհրաժեշտ աշխատանք, ապա հեշտ է լինում նախ՝ նրանից պահանջել և ապա նաև՝ գնահատել վաստակը:

Կոմբինատի՝ Ղափանի հարստացուցիչ ֆաբրիկայում իր գաղափարական աշխատանքի մկրտությունն է ստացել պրոպագանդիստ Ալբերտ Ստեփանյանը: Նա պրոպագանդիստական աշխատանքին վերաբերվում է նույնքան բարեխղճությամբ ու պարտաճանաչորեն, որքան արտադրության ղեկավարի իր պարտականություններին: Երկու բնագավառում էլ տարիների ընթացքում քայլ

առ քայլ հասել է որոշակի արդյունքների։ Նրա վաստակը գնահատվել է ըստ արժանվույն. ներկայացվել է Ստ. Շահումյանի անվան քաղլուսատան պատվո տախտակին, արժանացել հանրապետության կուլտուրայի վաստակավոր գործչի կոչման։ Նրա փորձը, ձեռք բերած նվաճումները մասսայականացվել են շրջանի կուսակցական կազմակերպություններում։ Այժմ Ա. Ստեփանյանն առաջ է քաշվել գլխավոր ինժեների պաշտոնում և շարունակում է մեծ սիրով կատարել պրոպագանդիստի պարտականությունները։

Պրոպագանդիստական կադրերի ճիշտ ընտրության և տեղաբաշխման, նրանց ուժերի արդյունավետ օգտագործման լավագույն միջոց է պրոպագանդիստների ատեստացիայի անցկացումը։ Նախատեսվում է առաջիկայում նման ատեստացիա անցկացնել մեզ մոտ։ Միաժամանակ պատրաստվել են հատուկ հարցաթերթիկներ, որոնք կբաժանվեն պրոպագանդիստներին և որոնցում կլրացվեն նրանց առաջարկություններն ու դիտողությունները, ապա դրանք կամփոփվեն կուսշրջկոմում, կձեռնարկվեն լրացուցիչ միջոցներ՝ բացահայտված թերությունները վերացնելու, կուսակցական քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության կազմակերպման ձևերն ու մեթոդները կատարելագործելու համար։

Պրոպագանդիստական կադրերի հետ տարվող աշխատանքի բարելավման հարցերը պարբերաբար քննարկման առարկա են դառնում սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում, կուսշրջկոմի բյուրոյի նիստերում, պրոպագանդայի և ագիտացիայի բաժնում։ Շրջկոմի բյուրոն քննարկել է Ջանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի լեռնային արտադրամասի մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի պրոպագանդիստ Վոլոդյա Խաչատրյանի հաշվետվությունը։ Հարցի նախապատրաստմանը նախորդեցին նրա պարապմունքների ունկնդրումները, որոնց մասնակցում էին նաև կոմբինատի կուսկոմիտեի, շրջկոմի, քաղլուսկաբինետի մեթոդխորհրդի անդամներ։

Ո՞րն է պրոպագանդիստ Վ. Խաչատրյանի հաջողության գաղտնիքը։ Առաջին հերթին՝ կապը օրվա հրատապ պրոբլեմների, կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների լուծման հետ։ Վերջին պարապմունքներից մեկը նվիրված էր ՍՄԿԿ տնտեսական քաղաքականությանը։ Եվ պրոպագանդիստը, ինչպես միշտ, նախօրոք օգտվել էր համապատասխան գրականությունից, կոնսպեկտավորել ելույթը, նախատեսել այն բոլոր հարցերը, որոնք պետք է ուղղեր ունկնդիրներին։ Որպես արտադրամասի գլխավոր ինժեներ՝ Վ. Խաչատրյանն անթերի տիրապետում է իր մասնագիտությանը, գիտե արտադրությունն ու մարդկանց։ Անկախ թեմայից, այս անգամ ևս նա ձեռքի տակ ուներ իրենց արտադրամասի, ունկնդիրների գործունեությունը բնութագրող անհրաժեշտ տվյալներ։ Հակիրճ կերպով պարզաբանելով կուսակցության տնտեսական քաղաքականության էությունը՝ նա թվարկեց նաև այդ կապակցությամբ իրենց կոնկրետ անելիքները։ Նյութը, որպես կանոն, նա մատուցում է պարզ խոսակցական լեզվով՝ հրաժարվելով խրատական, ուսուցողական տոնից։ Դրանով իսկ պարապմունքի ժամանակ ստեղծվում է գործարար ու անկաշկանդ մթնոլորտ։ Սովորաբար պարապմունքների վերջում կամ սկզբում պրոպագանդիստը ինֆորմացիա է տալիս միջազգային դրության և մեր երկրի ներքին կյանքի հույժ կարևոր իրադարձությունների մասին։ Այդպես վարվեց նաև այդ օրը։

Հաջորդ պարապմունքին նախապատրաստվելու նպատակով, լավ իմանալով ունկնդիրներից յուրաքանչյուրի կարողությունները, առանձին թերթիկներով նրանց տալիս է նախապատրաստված հարցերը կամ օգնում նրանց կազմելու ռեֆերատների պլանը, հանձնարարում է գրականությունը։ Դա փաստորեն ունկնդրի հետ տարվող անհատական աշխատանքի ուսանելի մեթոդ է, որով խնդիր է դրվում յուրաքանչյուրի առջև՝ հնարավորին չափ իր տեղամասում պայքարելու էլեկտրաէներգիայի, վառելիքի, նյութերի, ժամանակի խնայողության, աշխատանքի ռացիոնալ կազմակերպման համար։ Նրա ունկնդիրներն արտադրության մարդիկ են, առաջավոր բանվորներ, որոնք ապրում են ողջ կոլեկտիվի ճակատագրով։ 25 ունկնդիրներից 12-ը կոմունիստական աշխատանքի հարվածայիններ են, 10-ը՝ ռացիոնալիզատորներ։ Նրանց ամենաակտիվ մասնակցությամբ արտադրամասում արմատավորվում են «Հնգամյակը չորս տարում», «Ոչ մի հետ մնացող քո կողքին» և այլ հայրենասիրական նախաձեռնություններ։ Կոլեկտիվը ձգտում է արտադրական հաջողություններով նշանավորել ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակը։



Կուսակցական պրոպագանդան ու ագիտացիան պետք է լինեն առավելագույնս առարկայական, համոզիչ կերպով պատասխանեն մարդկանց հուզող բոլոր հարցերին։ Այդ դեպքում միայն կուսակցական խոսքը կարող է մարդկանց ոգորել խանդավառությամբ, կոմունիստներին և անկուսակցականներին մղել աշխատանքային խիզախումների։ ՍՄԿԿ XXVI համագումարի այս պահանջը նշանաբան է դարձել կոմբինատի բոլոր պրոպագանդիստների, գաղափարախոսական ոլորտի մյուս աշխատողների համար։

Կուսակցական ուսուցման վերակառուցումը, որն այսօր իրականացվում է ՍՄԿԿ XXVI համագումարի և «ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների լույսի ներքո կուսակցական ուսուցման հետագա կատարելագործման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս ընդունած որոշման պահանջների ոգով, նոր խնդիրներ է դնում պրոպագանդիստների առջև, և մենք պարտավոր ենք լինել այդ խնդիրների բարձրության վրա։

---

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԱԿՏԻՎ ՕԳՆԱԿԱՆԸ

**Հ. Դ. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
ՀԿԿ Աշտարակի շրջկոմի կուսակցական
հանձնաժողովի նախագահ

ՀԿԿ ԱՇՏԱՐԱԿԻ ՇՐՋԿՈՄԻՆ առընթեր կուսակցական հանձնաժողովը, ղեկավարվելով ՍՄԿԿ XXVI համագումարի ցուցումներով, որոշակի գործ է արել կուսակցության առաջադրած խնդիրների իրականացման, շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման, ներկուսակցական աշխատանքի բարելավման ասպարեզում: Մեր խնդիրն է օգնել շրջկոմին ու սկզբնական կուսկազմակերպություններին՝ ապահովելու ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության պահանջների համակողմանի կատարումը, ամրապնդելու շրջանի կազմակերպություններում կուսակցական և պետական կարգապահությունը, բարձրացնելու կուսակցության որոշումների իրականացման, հանձնարարված գործի նկատմամբ կոմունիստների, ղեկավար աշխատողների պատասխանատվությունը, բարելավելու կուսակցության շարքերի ընդունելության կազմակերպումը, կատարման վերահսկողությունը: Կուսհանձնաժողովի գործունեության հանգուցային հարցերը ներառվում են կուսշրջկոմի ընթացիկ և հեռանկարային պլանների մեջ, հաստատվում շրջկոմի բյուրոյում:

Բազմազան են կուսհանձնաժողովի աշխատանքի ձևերն ու մեթոդները, որոնք, հասկանալի է, քարացած բնույթ չեն կրում, այլ փոփոխվում, հարստացվում են նոր պահանջներին համապատասխան: Հանձնաժողովը համագործակցում է շրջկոմի բաժինների, ժողովրդական վերահսկողության շրջկոմի, ինչպես նաև արհմիութենական, կոմերիտական, ֆինանսական, վերահսկող կազմակերպությունների հետ: Հարցերի նախապատրաստմանը, ստուգումների անցկացմանը ընդգրկում ենք գյուղատնտեսական, արդյունաբերական, շինարարական և մյուս բնագավառների մասնագետներին:

Կուսհանձնաժողովի համար խնդիրներից կարևորագույնը, առանցքայինը եղել ու մնում են կոմունիստների կողմից ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության պահանջներն անվերապահորեն կատարելը, նրանց աշխատանքային ու հասարակական-քաղաքական գործունեության ակտիվացումը, կուսակցական և պետական կարգապահության ամրապնդումը:

Կուսակցական կարգապահության հիմնաքարը ոչ միայն կուսակցության որոշումների և ՍՄԿԿ կանոնադրության պահանջների անշեղ կատարումն է, այլև յուրաքանչյուր կոմունիստի ստեղծարար ակտիվությունը, նրա անձնվեր աշխատանքը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, հասարակական հարաբերությունների կատարելագործման, նոր մարդու ձևավորման ու դաստիարակության գործում: Ելնելով դրանից, կուսհանձնաժողովը տարբեր ժամանակներում նախապատրաստել ու շրջկոմի բյուրոյի քննարկմանն է ներկայացրել կոմունիստների կողմից կանոնադրական պարտականությունների կատարման վիճակը Փարպիի կոլտնտեսության, Օշականի, Ջորաթի, Արայի սովխոզների սկզբնական կուսկազմակերպություններում: Այն իր տեսադաշտում է պահում կոմունիստների կողմից կանոնադրական պահանջների կատարումը, նրանց հետ տարվող անհատական աշխատանքի կազմակերպումը: Պլանավորվում և պարբերաբար լսվում են կոմունիստների հաշվետվությունները: Կուս-



հանձնաժողովի նախաձեռնությամբ անցյալ տարի շրջկոմի բյուրոյում քննարկվեցին ՍՄԿԿ անդամ Սվետլանա Գևորգյանի և ՍՄԿԿ անդամության թեկնածու Արուսյակ Սիմոնյանի հաշվետվությունները: Սվետլանա Գևորգյանը միջնակարգ դպրոցն ավարտելուց հետո աշխատանքի է անցել Սասունիկի սովխոզում, դարձել հմուտ այգեգործ, արտադրության առաջավոր: Նա մշտապես կատարում ու գերակատարում է պլանային առաջադրանքներն ու ստանձնած պարտավորությունները, վայելում իր գործընկերների ու ողջ կոլեկտիվի հարգանքը: Ս. Գևորգյանը կուսակցության շրջկոմի բյուրոյի և ՀԿԿ Կենտկոմի անդամ է:

Աշտարակ քաղաքի № 4 միջնակարգ դպրոցի ուսուցչուհի Արուսյակ Սիմոնյանը նույնպես իրեն դրսևորել է լավագույն կողմերով, իր ողջ ունակությունները ի սպաս դրել աշակերտների կրթության ու դաստիարակության գործին, նա քաղաքային սովետի դեպուտատ է, սիրով ու պատասխանատվությամբ է կատարում ընտրողների պատվիրանները, ակտիվորեն մասնակցում հասարակական-քաղաքական կյանքին:

Ինչպես արդեն նշվեց, հանձնաժողովի գործունեության հիմնական բնագավառներից է կուսակցական և պետական կարգապահության ամրապնդման, հանձնարարված գործի նկատմամբ ղեկավար աշխատողների անձնական պատասխանատվության բարձրացման ապահովումը: Եվ մեր հանձնաժողովն ըստ կարելվույն նպաստել է կարգապահության ամրապնդմանը: «Գյուղշին» № 2 տրեստը, որը գտնվում է Աշտարակ քաղաքում, շրջանի կապիտալ շինարարությունը կատարում է իր ենթակայության №№ 1, 14 և 32 շարժական մեքենայացված շարասյունների միջոցով: Տիմմոնտաժային աշխատանքների պլանները այստեղ տարիներ շարունակ չէին կատարվում, և շրջկոմի բյուրոն մի անգամ չէ, որ անդրադարձել է ստեղծված իրավիճակին:

Կուսհանձնաժողովի նախաձեռնությամբ, որն արժանացավ շրջկոմի հավանությանը, ուսումնասիրվեց կուսակցական և պետական կարգապահության դրվածքն այդ շինարարական կազմակերպություններում: Պարզվեց, որ պլանների թերակատարման պատճառը աշխատանքի վատ կազմակերպումն է, մեքենաների ոչ ինտենսիվ օգտագործումը, մասնագետ կադրերի և բանվորների հոսունությունը, ղեկավար աշխատողների պահանջկոտության բացակայությունը: Շրջկոմի բյուրոն, քննարկելով հարցը, կոնկրետ հանձնարարականներ տվեց ղեկավարությանն ու կուսկազմակերպությանը, սահմանեց կատարման ժամկետներ: Սակայն պարզ դարձավ, որ էական տեղաշարժերի համար անհրաժեշտ է ուժեղացնել ղեկավարությունը: Փոխվեցին տրեստի և մի շարք շինտեղամասերի ղեկավարները: Գործերն աստիճանաբար հունի մեջ ընկան, և, ի վերջո, կատարվեցին 1981 թ. կապիտալ շինարարության պլանները:

Բյուրականի սովխոզում պլանային առաջադրանքների թերակատարումը, տնտեսության ետ մնալը կուսհանձնաժողովին հուշեցին ստուգել գործերի իրական վիճակը: Շրջկոմի աշխատանքի պլանի մեջ մտցվեց Բյուրականի սովխոզում պետական և աշխատանքային կարգապահության ամրապնդման վերաբերյալ հարցը: Այդ տնտեսությունում գործերի վիճակն ուսումնասիրող հանձնաժողովի կազմում էին կուսհանձնաժողովի երկու անդամ, շրջկոմի հրահանգիչներ, գյուղատնտեսության վարչության առաջատար մասնագետներ: Հանձնաժողովը բացահայտեց անտնտեսվարության, անկազմակերպվածության լուրջ փաստեր. Թերակատարվում են գյուղատնտեսական հիմնական մթերքների արտադրության ու վաճառքի պլանները, զգալիորեն բարձր է մթերքների ինքնարժեքը, մեծ է անասունների հարկադիր մորթի և անկումների տոկոսը, բրիգադավարները կատարում են անօրինական վճարումներ ու հավելագրումներ, անպատասխանատվություն է նկատվում հաշվապահական հաշվառման և փաստաթղթերի կազմման ու ձևակերպման գործում, հափշտակվել են զգալի թվով մանր եղջերավոր անասուններ:

Սովխոզի աշխատանքները չգլխավորելու, պետական առաջադրանքները չկատարելու, սոցիալիստական սեփականության պահպանման նկատմամբ անփույթ ու անպատասխանատու վերաբերմունք դրսևորելու համար շրջկոմի բյուրոն զբաղեցրած պաշտոնից ազատեց սովխոզի դիրեկտոր Մ. Գրիգորյանին: Գլխավոր գյուղատնտես Խ. Մնացականյանը նույնպես հեռացվեց աշխատան-

քից՝ արտադրության ղեկավարման հարցով անբավարար զբաղվելու, տարեկան գույքագրումները պահանջված կարգով չանցկացնելու, գյուղատնտեսական մթերքների արտադրության առաջադրանքների կատարումը չապահովելու համար: Ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ անբավարար վերահսկողության համար կուսկազմակերպության քարտուղար Վ. Ավագյանը ենթարկվեց կուսակցական խիստ տույժի և ազատվեց կուսբյուրոյի քարտուղարի պարտականությունից: Անասունների կորուստների ու հափշտակումների, զոոանասնաբուժական վատ սպասարկման համար աշխատանքից հեռացվեցին և ՍՄԿԿ շարքերից վտարվեցին ոչխարաբուծական բրիգադի բրիգադավար Գ. Գրիգորյանը, գլխավոր անասնաբույժ Ա. Խաչատրյանը: Գործը հանձնվեց դատաքննչական մարմիններին, մեղավորները ենթարկվեցին քրեական պատասխանատվության:

Շրջկոմի բյուրոյում քննարկվեց նաև կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման ասպարեզում Աշտարակի շրջսովետի գործկոմի սկզբնական կուսկազմակերպության կատարած աշխատանքի վերաբերյալ հարցը, որը նախապատրաստել էին կուսհանձնաժողովը և շրջկոմի բաժինները: Ստուգման արդյունքներին նախապես ծանոթացրինք կուսբյուրոյի անդամներին, ապա գործկոմի ղեկավարների և բաժինների վարիչների մասնակցությամբ հրավիրվեց կազմխորհրդակցություն, որտեղ հանգամանորեն վերլուծվեց կատարված աշխատանքը, ապարատի աշխատողների ուշադրությունը հրավիրվեց դեռևս չլուծված խնդիրների վրա: Շրջկոմի բյուրոն արձանագրեց, որ գործկոմի սկզբնական կուսկազմակերպությունը որոշակի աշխատանք է կատարել կուսակցական և պետական կարգապահության ամրապնդման, կուսակցության ու կառավարության դիրեկտիվների կենսագործման, սովետական օրենքների պահպանման համար ապարատի գործունեության նկատմամբ վերահսկողության իրականացման ասպարեզում: Շրջկոմի բյուրոն միաժամանակ կուսկազմակերպության ուշադրությունը հրավիրեց ապարատի, նրա բաժինների աշխատանքի ձևերն ու մեթոդները կատարելագործելու, բոլոր աշխատողների մոտ կատարողական կարգապահությունն ամրապնդելու, շրջանի սովետական և տնտեսական կազմակերպությունների կապերն ուժեղացնելու վրա:

Կուսհանձնաժողովի գործունեության կարևոր բնագավառ է կոմունիստների, աշխատավորների նամակների և դիմումների առնչությամբ տարվող աշխատանքը: Կուսշրջկոմի հանձնարարությամբ մենք մշտապես զբաղվում ենք դրանցում արծարծված հարցերի ուսումնասիրությամբ ու լուծմամբ: Այսպես, հանձնաժողովը շրջկոմի կազմակերպական և ընդհանուր բաժինների, ժողվերահսկողության շրջկոմի հետ ստուգել է քաղաքացիների ընդունելության և դիմում-գանգատներին ընթացք տալու վերաբերյալ շրջկոմի բյուրոյի որոշման կատարման ընթացքը: Շրջկոմի բյուրոյում լսվեց Աշտարակի քաղսովետի գործկոմի նախագահ Ա. Ղուկասյանի հաշվետվությունը՝ այդ որոշման կենսագործման մասին: Նշվեց, որ քաղսովետի գործկոմը և նրա բաժինները զգալի աշխատանք են կատարել առաջադրված հարցերի լուծման, բնակչության բնակարանային, կոմունալ-կենցաղային պայմանների բարելավման, քաղաքի բարեկարգման, ջեռուցման, գազիֆիկացման, ջրամատակարարման ապահովման գործում:

Գաղտնիք չէ, որ նամակներում և դիմումներում շոշափվում են կենսական նշանակություն ունեցող հարցեր, վերհանվում թերություններն ու բացթողումները: Աշտարակի սովխոզի բնակիչներից մեկը դիմել էր իր սեփական տան վաճառքի և տնամերձ հողամասի հետ կապված քաշքշուկի հարցով: Արտաքուստ թվում էր, թե դա անձնական նեղ հարց է: Սակայն, երբ խորացանք գործի էության մեջ, պարզվեց, որ Աշտարակ քաղաքում լուրջ թերություններ կան սեփական տների վաճառքի ձևակերպման, տնամերձ հողամասերի հատկացման ու փոփոխման գործում, բացակայում էր համագործակցությունն այդ հարցով զբաղվող համապատասխան մարմինների միջև: Շրջկոմում հրավիրվեց քաղսովետի գործկոմի, պետապտեսչության, շրջպետնոտարական գրասենյակի, քաղսովետի կոմունալ ձեռնարկությունների և բարեկարգման կոմբինատի, Աշտարակի սովխոզի ղեկավար աշխատողների խորհրդակցություն, վերլուծվեց



իրավիճակը,, գործերը շտկելու համար տրվեցին հանձնարարականներ, իսկ հետո ստուգվեց դրանց կատարման ընթացքը:

Կուսակցության շարքերի ընդունելության կազմակերպումը ևս կուսհանձնաժողովի աշխատանքի կարևորագույն ուղղություններից է: Պարբերաբար ստուգվել և շրջկոմի բյուրոյում քննարկվել են կուսակցության մեջ ընդունելության և ՍՄԿԿ անդամության թեկնածուների դաստիարակության ասպարեզում Կիրգիզիայի կուսակցական կազմակերպության աշխատանքի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման լույսի ներքո շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների ծավալած աշխատանքի, կոմունիստների կողմից ՍՄԿԿ կանոնադրության պահանջների կատարման վերաբերյալ շրջկոմի բյուրոյի և պլենումի որոշումների կենսագործման ընթացքը:

Չնայած նկատելի տեղաշարժերին, որոշ կուսակցական կազմակերպություններում անհրաժեշտ աշխատանք չի տարվել այդ ուղղությամբ: Այսպես, Փարպիի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպությունը (քարտուղար՝ Ա. Ճերճյան) հապճեպություն էր ցուցաբերել և առանց գործի մանրամասն ուսումնասիրության ՍՄԿԿ անդամության թեկնածու էր ընդունել տասնութամյա կոլտնտեսական Վարդան Տիգրանյանին, որի աշխատանքի մեկ տարին նոր էր լրացել և ընդունվել էր Երևանի № 32 պրոֆտեխուսումնարանը՝ ազատվելով զինվորական ծառայությունից: Մեկ ամիս անց նա հեռացվել էր ուսումնարանից՝ սիստեմատիկաբար դասերից բացակայելու, ներքին կարգ ու կանոնը խախտելու համար: Կուսհանձնաժողովի առաջարկությամբ շրջկոմի բյուրոն չհաստատեց սկզբնական կազմակերպության որոշումը և նշեց վերջինիս մակերեսային մոտեցումն այդ կարևոր գործի նկատմամբ:

Կուսակցական հանձնաժողովը գործուն մասնակցություն է ցույց տալիս սոցիալիստական սեփականության պահպանության համար, ինչպես նաև հակահասարակական երևույթների դեմ մղվող պայքարին, ճշտորեն կատարում այդ առթիվ շրջկոմի հանձնարարականները: Անցյալ տարվա գարնանն էր, կերի պակասի պատճառով Շամիրամի սովխոզում ծանր կացություն էր ստեղծվել հանրային հոտի պահպանության գործում: Օգնության ձեռք են մեկնում Սասունիկի, Արայի սովխոզները: Մինչդեռ Շամիրամի սովխոզի գլխավոր անասնաբույժ, ՍՄԿԿ անդամ Ա. Շարոյանը, որի վրա էր դրված կերի ստացման, տեղափոխման ու մուտքագրման պատասխանատվությունը, կորցնելով խիղճը, մեկ ավտոմեքենա խոտ է վաճառում նույն սովխոզի գլխավոր ինժեներ-մեխանիկ, ՍՄԿԿ անդամ Վ. Ֆերոյանին՝ նրանից վերցնելով որոշակի գումար: Իրենց հանցագործ արարքը թաքցնելու համար նրանք դիմել էին ամեն կարգի կեղծիքների, իսկ կուսկազմակերպությունը փաստորեն հովանավորել էր նրանց: Կուսշրջկոմի հանձնարարությամբ հանձնաժողովը պարզեց գործի էությունը: Մեր առաջարկությամբ շրջկոմի բյուրոն Ա. Շարոյանին և Վ. Ֆերոյանին հեռացրեց ՍՄԿԿ շարքերից ու զբաղեցրած պաշտոններից և միաժամանակ նշեց, որ սովխոզի կուսկազմակերպությունը կուսակցական գնահատական չի տվել հանցանքին, մեղավորների նկատմամբ ցուցաբերել է լիբերալ, հաշտվողական մոտեցում:

Կուսակցական հանձնաժողովի աշխատանքներն իրականացվում են նրա 11 անդամների միջոցով, որոնց թեկնածությունը հաստատվում է շրջկոմի բյուրոյում: Նրանք ունեն կուսակցական, սովետական, տնտեսական աշխատանքի հարուստ փորձ, զբաղված են ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում: Նրանցից 9-ը ունեն բարձրագույն կրթություն, 5-ը կուսշրջկոմի անդամներ են, 6-ը՝ ժողովրդական դեպուտատների շրջսովետի և քաղսովետի դեպուտատներ:

Աշխատանքն ավելի կազմակերպված ու արդյունավետ դարձնելու նպատակով հարցերը խմբավորվում են, ասենք՝ ՍՄԿԿ կանոնադրության պահանջների ապահովումը, կոմունիստների մասնակցությունը արտադրական-հասարակական աշխատանքներին, ֆինանսատնտեսական գործունեության ստուգումներ, որոշումների կատարում և այլն:

Կուսհանձնաժողովի անդամ Ս. Հովհաննիսյանի գլխավորած խումբը ուսումնասիրեց և շրջկոմի բյուրոյի քննարկմանը ներկայացրեց ՍՄԿԿ կանո-

նադրության պահանջների կատարման ուղղությամբ Արտաշավանի սովխոզի սկզբնական կուսկազմակերպության աշխատանքի մասին հարցը։ Ստուգման ընթացքում պարզվեց, որ կատարված աշխատանքների հետ մեկտեղ կուսկազմակերպության քարտուղար Ս. Եղիազարյանը դրսևորել էր անփութություն, անպատասխանատվություն կուսակցական ժողովների անցկացման գործում։ Շրջկոմի բյուրոն այդ արարքի համար նրան չերաշխավորեց ընտրվելու կուսկազմակերպության քարտուղար։

Կուսհանձնաժողովի անդամ Գ. Հովսեփյանը մի քանի անգամ ուսումնասիրել է դիմում-բողոքներին ընթացք տալու վիճակը։ Կոմունիստների ակտիվության բարձրացման, որոշումների կատարման հարցով զբաղվում են հանձնաժողովի անդամներ Լ. Թորոսյանը, Է. Խաչատրյանը, Կ. Մաղաքյանը և այլ ընկերներ։

Հանձնաժողովի անդամները տրված հանձնարարությունները կատարում են մեծ պատասխանատվությամբ, բարեխղճությամբ, պարտքի բարձր զգացումով։

Կուսակցական հանձնաժողովն իր առջև դրված խնդիրները հաջողությամբ է կատարում, որովհետև ստանում է կուսշրջկոմի ամենօրյա օգնությունն ու ղեկավարությունը։ Շրջկոմը ուշադիր, պատրաստակամ վերաբերմունք է ցուցաբերում հանձնաժողովի առաջ քաշած հարցերի ու առաջարկությունների նկատմամբ, օգնում է դրանց լուծմանը։ Շրջկոմի բյուրոն քննարկել է կուսհանձնաժողովի հաշվետվությունը, շատ հարցեր պրակտիկորեն լուծել նրա նախաձեռնությամբ և առաջարկությամբ։

Չնայած կատարված աշխատանքին, մեր գործունեության մեջ քիչ չեն նաև թերություններն ու վրիպումները։ Առանձին կուսկազմակերպություններ բավարար կերպով չեն զբաղվում կոմունիստների, առանձնապես երիտասարդ կոմունիստների դաստիարակության հարցերով։ Այդ է պատճառը, որ մի շարք կոմունիստներ հեռացվել կամ դուրս են թողնվել կուսակցությունից՝ ՍՄԿԿ կանոնադրությունը, կուսակցական ու աշխատանքային կարգապահությունը խախտելու և այլ պատճառներով։ Որոշ կուսակցական կազմակերպություններ բարձր պատասխանատվությամբ չեն վերաբերվում կուսակցության շարքերի ընդունելության հույժ կարևոր գործին։ Օրինակ, Արագածոտնի սովխոզի կուսկազմակերպությունը ՍՄԿԿ անդամության թեկնածու էր ընդունել ավտովարորդ Օ. Մինասյանին, որը մինչ այդ դատված է եղել։ Եթե կուսհանձնաժողովը ժամանակին խորամուխ լիներ գործի մեջ, բացահայտեր խախտումը, ապա շրջկոմի բյուրոն չէր հաստատի սկզբնական կուսկազմակերպության որոշումը։ Եվ չնայած Օ. Մինասյանը հեռացվեց ՍՄԿԿ անդամության թեկնածուների կազմից, իսկ կուսկազմակերպության քարտուղար Գ. Մկրտչյանն ու երաշխավորող կոմունիստները ենթարկվեցին կուսակցական խիստ տույժի, սակայն դա եղավ շատ ավելի ուշ, ստացած ահազանգից հետո։

«Հարկավոր է ամենայն ուժով ընդգծել,— ասաց ընկ. Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում,— որ մեր վերաբերմունքը նրանց նկատմամբ, ովքեր իրենց անվայել են պահում, խախտում են կուսակցության կանոնադրությունն ու կուսակցական բարոյականության նորմերը, եղել է և կլինի անհաշտ։ Ո՛չ մի ավելորդ ներողամտություն և ոչ ոքի նկատմամբ, երբ խոսքը վերաբերում է մեր կուսակցության պատվին ու հեղինակությանը, նրա շարքերի անաղարտությանը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 112)։

Կատարած աշխատանքի ու կուտակած որոշ փորձի հետ մեկտեղ մենք դեռևս ունենք շատ անելիքներ, չլուծված հարցեր։ Կուսակցական հանձնաժողովի առջև դրված են լուրջ ու պատասխանատու խնդիրներ՝ հետևողականորեն կենսագործել ՍՄԿԿ XXVI համագումարի և ՀԿԿ XXVII համագումարի որոշումները։ Այսօր մեր հիմնական ուշադրությունը բևեռված է կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման, կուսշարքերի անաղարտության ապահովման, ընդունված որոշումների կատարման ու վերահսկողության կազմակերպման վրա։

---



# ԱԶԱՏԱԳՐՎԱԾ ԵՐԿՐՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՐԴԻ ՓՈՒԼԸ

**Մ. Հ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

ԱՐԴԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ պրոցեսում արժանի տեղ են գրավում ազգային-ազատագրական շարժումները, իմպերիալիզմի ու նեոգաղութատիրության դեմ, ազգային-պետական սուվերենության ամրապնդման ու սոցիալական առաջընթացի համար ժողովուրդների մղած պայքարը։ Յոթանասունական թվականներին, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, փաստորեն ավարտվեց գաղութային տիրապետությունների վերացումը։ Նոր հաղթանակներով նշանավորվեց ժողովուրդների հեղափոխական պայքարը։ Դրա վկայությունն են Եթովպիայի, Աֆղանստանի ու Նիկարագուայի հեղափոխությունները, հակաժողովրդական միապետական ռեժիմի տապալումը Իրանում։

Ինչպես հայտնի է, 70—80-ական թվականների սահմանագծում, հատկապես ԱՄՆ-ում հանրապետական նոր վարչակազմի իշխանության գլուխ անցնելուց հետո, միջազգային իրադրությունը նկատելիորեն սրվեց։ Պրեզիդենտ Ռ. Ռեյգանը և նրա համախոհները փորձում են աշխարհը վերադարձնել «սառը պատերազմի» ժամանակներին, վերածնել սոցիալիստական երկրների, հակաիմպերիալիստական բոլոր ուժերի նկատմամբ ռազմական սպառնալիքի քաղաքականությունը։

Ժողովուրդների ազատագրական պայքարը ծավալվում է միջազգային բարդ պայմաններում։ Իմպերիալիզմը դիմում է և՛ ռազմաքաղաքական շանտաժի, և՛ կոպիտ տնտեսական ճնշման՝ ազատագրված երկրների նկատմամբ, և՛ զանգվածային գաղափարախոսական հարձակման։ Աշխարհն այսօր վկա է Լիբանանի ու Իրաքի վրա Իսրայելի՝ նեոգաղութատիրության այդ սպասարկուի, ավազակային հարձակումներին, Լիբիայի ու Սալվադորի դեմ ԱՄՆ-ի ռազմական պրովոկացիաներին, Անգոլայի դեմ ՀԱՀ-ի ռասիստների ագրեսիային և այլն։ Ազատագրված երկրների ժողովուրդների նկատմամբ սկսվել է գաղափարախոսական նոր «խաչակրաց արշավանք», որի նախաձեռնողն ու ոգեշնչողը ԱՄՆ-ի հետադիմական շրջաններն են։ Այդ արշավանքի էությունն այն է, որ ժողովուրդների ազատագրական պայքարն անամոթաբար հայտարարվում է իբրև «միջազգային տեռորիզմ»։ «Արկածախնդրություն, իրենց նեղ-շահադիտական նպատակների համար մարդկության կենսական շահերը խաղաքարտի վրա դնելու պատրաստակամություն՝ ահա թե ինչն է հատկապես մերկ ձևով դրսևորվում իմպերիալիզմի առավել ագրեսիվ շրջանների քաղաքականության մեջ,— նշվեց կուսակցության XXVI համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետվու-

թյան մեջ։— Լիակատար արհամարհանք ցուցաբերելով ժողովուրդների իրավունքների և իղձերի նկատմամբ, նրանք փորձում են ժողովրդական մասսաների ազատագրական պայքարը պատկերել որպես «տեռորիզմի դրսևորում»» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 32)։

Ազատագրված երկրների նկատմամբ իմպերիալիզմի կիրառած քաղաքականության ու պրակտիկայի նոր մեթոդների և ձևերի միագումարը հիմք է տալիս խոսելու նեոգաղութատիրության ռազմաքաղաքական ստրատեգիայի նոր շրջադարձի մասին, որը բացահայտորեն ուղղված է սուվերեն պետությունների ներքին գործերին անսքող կերպով միջամտելու, ազատագրական շարժումները ճնշելու նպատակին։ ԱՄՆ-ի ներկայիս ղեկավարները բացեիբաց խոսում են Աֆղանստան ուղարկվող հակահեղափոխական վարձկան բանդաներին զինելու ԱՄՆ-ի պատրաստակամության մասին։ Պաշտոնապես հայտարարվել է ՀԱՀ-ում պատսպարված անգոլական հակահեղափոխական կազմակերպություններին զենք տրամադրելու ԱՄՆ-ի մտադրության մասին։ Հարավ-Աֆրիկյան Հանրապետությունը՝ ապարտեիդի այդ անարգված ռեժիմը, բացեիբաց հռչակվել է «բարեկամական պետություն» և այլն։

Ազատագրված երկրների ժողովուրդները, ազգային ազատագրության առաջադիմական ուժերն ավելի ու ավելի են գիտակցում նեոգաղութատիրական էքսպանսիայի, հատկապես նրա կոպիտ ռազմաքաղաքական ձևերի ուժեղացման վտանգը։ Ակնհայտորեն դրսևորվում է միջազգային իրադրության ընդհանուր վատթարացման հետ նեոգաղութատիրության ընդհանուր գծի սաստկացման, նրա ագրեսիվության ուժգնացման փոխադարձ կապը։ Ակնհայտ է դառնում, որ նեոգաղութատիրության դեմ, ազգային ու սոցիալական առաջընթացի համար մղվող պայքարն անբաժանելի է լարվածության թուլացման ամրապնդման, իմպերիալիզմի ռազմատենչ ու ագրեսիվ ուժերի սանձահարման համար հանուր մարդկության պայքարից։ Այստեղ ազատագրված երկրների արմատական շահերը համընկնում են խաղաղասեր, դեմոկրատական, հակաիմպերիալիստական բոլոր ուժերի շահերին, միջազգային զարգացման արդի արմատական պրոբլեմների հարցում սոցիալիզմի երկրների հետ այդ երկրների միասնական ճակատը օբյեկտիվ պատմական անհրաժեշտություն է հանդիսանում։

Ազգային-ազատագրական պայքարի հաջող ծավալումը, այնպիսի մի բարդ ու տևական պրոբլեմի լուծումը, ինչպիսին տնտեսական ինքնուրույնության և սոցիալական պրոգրեսի հասնելն է, ուղղակիորեն կապված են ընդհանուր միջազգային պայմանների, միջազգային պրոցեսին իրենց իսկ ազատագրված երկրների դերի ուժեղացման ու մասնակցության ակտիվացման հետ։ Կյանքն արդեն ապացուցել է, որ 70-ական թվականներին միջազգային հարաբերությունների համակարգում ազատագրված երկրների դերի անշեղ աճը, լարվածության թուլացման, համաշխարհային քաղաքական ու տնտեսական հարաբերությունների հետագա դեմոկրատացման համար դրանց ակտիվ պայքարը խորացրին, կարելի է ասել, անշրջելի դարձրին «էկոնոմիկայի ապագաղութացման», «ինֆորմացիայի ապագաղութացման», «հոգևոր ապագաղութացման» պրոցեսները։

Համաշխարհային զարգացման ասպարեզում ազատագրված երկրների դերի բարձրացմանը մեծապես նպաստում է ՍՍՀՄ-ի, սոցիալիզմի մյուս երկրների քաղաքականությունը, որն ուղղված է դրանց շահերի պաշտպանությանն ու միջազգային դիրքերի ամրապնդմանը։ Ազատագրված երկրների հետ իր հարաբերություններում Սովետական Միությունը անշեղորեն ելնում է հետևյալ սկզբունքներից. առանց արտաքին միջամտության իր ներքին գործերն ինքնուրույն տնօրինելու յուրաքանչյուր ժողովրդի իրավունքի ճանաչում, տերիտորիալ ամբողջականության հարգում, միջազգային կյանքին յուրաքանչյուր պետության իրավահավասար մասնակցության իրավունքի լիակատար ճանաչում, իրենց բնական ռեսուրսների նկատմամբ այդ պետությունների սուվերենության լրիվ ու անվերապահ ճանաչում, չմիանալու ստատուսի հարգում։ Բոլոր պետությունների կողմից այդ սկզբունքների պահպանումը առավել նպաստավոր



պայմաններ կստեղծեր երիտասարդ պետությունների զարգացման, արդիականության արմատական պրոբլեմների լուծմանը նրանց լիարժեք մասնակցության համար։

Ինչ վերաբերում է երիտասարդ պետությունների արտաքին քաղաքականության կոնկրետ դրսևորումներին, համաշխարհային պրոբլեմների լուծման գործում նրանց դիրքորոշումներին, ապա ազգային-ազատագրական պայքարի արդի փուլի և տնտեսական ազատագրման ընդհանուր խնդիրներից բացի, նրանց վրա ակտիվորեն ներազդում են մի ամբողջ շարք գործոններ։ Այդ պատճառով էլ ազատագրված երկրների միջազգային ասպարեզ դուրս գալու հետևանքներն իրականում տարաբնույթ են, երբեմն նաև հակասական։ Ամենից առաջ ուժեղացել են այդ երկրների սոցիալական ու քաղաքական շերտավորման, նրանց անհամաչափ զարգացման պրոցեսները։ «Այդ երկրները շատ տարբեր են,— ասվում է ՍՄԿԿ XXVI համագումարին Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ։— Դրանցից մի քանիսն ազատագրումից հետո գնացին հեղափոխական-դեմոկրատական ուղիով։ Այլ երկրներում հաստատվեցին կապիտալիստական հարաբերություններ։ Մի քանիսը վարում են իսկական անկախ քաղաքականություն, մյուսներն այսօր ընթանում են իմպերիալիզմի քաղաքականության ֆարվատերում։ Մի խոսքով, պատկերը բավական խայտաբղետ է» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 17)։

Ազատագրված երկրներում հասարակական զարգացման պրոցեսներն ավելի են բարդացել։ Այդ երկրների մեծ մասը դեռևս մնում է համաշխարհային կապիտալիստական տնտեսության սիստեմում, դրա հետևանքով ուժեղանում է դրանցից շատերի կախումը կապիտալիզմի գլխավոր կենտրոններից, իսկ մի քանիսը, որոնք ձգտում են «ուժի կենտրոններ» դառնալ, ներգրավվում են սպառազինությունների մրցավազքի մեջ։ Ընդսմին հարկ է շեշտել, որ կապիտալիստական ուղիով ընթացող երկրները ինչ-որ մի համասեռ ամբողջություն չեն, որը հանդես գար իբրև համաշխարհային կապիտալիզմի ռեզերվ։ Նրանք սոցիալ-տնտեսական ու քաղաքական զարգացման տարբեր մակարդակների վրա են գտնվում, տարբեր են նաև կապիտալիստական զարգացման կոնկրետ ուղիները, ձևերն ու մեթոդները։ Կապիտալիստական կողմնորոշման երկրների ճնշող մեծամասնությունը չմիանալու շարժման և այլ կազմակերպությունների շրջանակներում համառ պայքար է մղում տնտեսական անկախության համար, հակաիմպերիալիստական բնույթ է կրում նոր միջազգային տնտեսական կարգի համար նրանց պայքարը։ Այդ երկրներից առավել հետադիմական ռեժիմների միայն ոչ մեծ մի խումբ բացեիբաց գործարքի մեջ է մտնում իմպերիալիզմի հետ, ձգտելով օգուտներ կորզել նման «պարտնյորությունից»։

Այս ամենով է պայմանավորվում այն, որ ազատագրված երկրների արտաքին քաղաքականության մեջ դրսևորվում է երկու միտում՝ իմպերիալիզմի դեմ պայքարի ուժեղացման և նրա հետ կոմպրոմիսի միտումները։ Այստեղ ակնբախորեն արտահայտվում է ներքին ու արտաքին քաղաքականության միասնությունը։ Հետևողական հակաիմպերիալիզմ, պայքար հանուն փաստական ազգային ազատագրության ու տնտեսական ինքնուրույնության՝ սրանք այն երկրների արտաքին քաղաքականության արմատական գծերն են, որոնց ներքին քաղաքականությունն ուղղված է առաջադիմական վերափոխումների իրականացման, շահագործողական հարաբերությունների վերացման, ազգային ու սոցիալական պրոգրեսի ապահովման նպատակին։

ՍՄԿԿ XXVI համագումարն առանձնահատուկ ուշադրություն նվիրեց ազատագրված այն երկրների պրոբլեմների քննարկմանը, որոնք ընթանում են սոցիալիստական կողմնորոշման ուղիով։ Դա այն ուղին է, որն ապահովում է հետամնացության հաղթահարման, իմպերիալիզմից կախվածության վերացման բարդ պրոբլեմների լուծումը, տնտեսական ինքնուրույնության, ազգային վերածնության ու սոցիալական առաջընթացի ձեռքբերումը, աշխատավորական լայն զանգվածների օգտին սոցիալ-տնտեսական, քաղաքական և կուլտուրական արմատական վերափոխումների ծրագրի իրականացումը։ 80-ական թվական-

ների սկզբներին այդ ուղիով զարգացման որոշակի փորձ էր կուտակվել արդեն, շուրջ քսան ազատագրված երկրներ հայտարարել էին զարգացման պրոգրեսիվ ուղու անցնելու մասին, որը մերժում է կապիտալիստական ուղին։

Ճիշտ է, դրանցից մի քանիսում զիգզագներ, նույնիսկ ետընթաց շարժումներ եղան, իսկ այնպիսի պետություններ, ինչպիսիք են Եգիպտոսը, Սոմալին, Գանան, Սուդանը, ընդհանրապես շեղվեցին սոցիալիստական կողմնորոշման կուրսից։ Բայց 70-ական թվականների կեսերից հետո այդ ուղու վրա Անգոլայի, Մոզամբիկի, Եթովպիայի, Աֆղանստանի և այլ երկրների ոտք դնելը հզոր խթան եղավ ազատագրված երկրների ամբողջ հեղափոխական շարժման համար։ Հենց դրանց պատմական փորձն էլ այսօր վիթխարի արժույթ է ներկայացնում դեպի սոցիալիզմ փուլ առ փուլ շարժման հիմնական օրինաչափությունների ու ձևերի բացահայտման առումով։

Պրակտիկան ցույց է տալիս, որ այն գլխավոր խնդիրները, որոնք լուծում են հիշյալ երկրների հեղափոխական ուժերը, նախ և առաջ սոցիալ-քաղաքական, դասակարգային-գաղափարախոսական խնդիրներ են՝ կապված հեղափոխական-դեմոկրատական պետության ստեղծման ու ամրապնդման հետ։ Երկրորդ՝ դրանք սոցիալիզմի սոցիալ-տնտեսական և տեխնիկատնտեսական նախադրյալների ստեղծման խնդիրներ են, որոնք օբյեկտիվորեն ծագում են նյութական պայմանների չհասունացածության և սոցիալիզմին անցնելու զանազան պայմանների ու նախադրյալների զարգացման անհամաչափության հետևանքով։ Դրանով է էապես որոշվում վերնաշենքի, սոցիալիստական կողմնորոշման պետական-քաղաքական ձևերի բացառիկ դերը, որոնք ունակ են նպատակամետ կերպով արագացնել դեպի սոցիալիզմ տանող սոցիալ-տնտեսական և հոգևոր գաղափարախոսական գործոնների ու պայմանների հանդես գալն ու զարգացումը։

Անդրադառնալով սոցիալիստական կողմնորոշման տեսության ասպարեզում ՍՄԿԿ XXVI համագումարի ներդրմանը, հարկավոր է ամենից առաջ նշել զարգացման այդպիսի ուղու օբյեկտիվ չափանիշների կոմպլեքսային բնույթի վերաբերյալ դրույթը։ Ընդ որում այդ չափանիշներն ընդհանրացված ձևով արտահայտում են այն համանշանակ գծերն ու հատկանիշները, որոնք անպայմանորեն առկա են սոցիալիստական կողմնորոշման բոլոր երկրների հասարակական զարգացման մեջ՝ ասես վեր բարձրանալով առանձին երկրների երկրորդական, մասնակի, ազգային-սպեցիֆիկ հատկանիշներից ու յուրահատկություններից։ Դրանք միավորում են բոլոր կոնկրետ պատմական ձևերը, տարբերակները, բացառելով սուբյեկտիվիզմն ու պատահականությունը սոցիալիստական կողմնորոշման երկրների նկատմամբ մոտեցման, դրանցում տեղի ունեցող հասարակական պրոցեսների գնահատման գործում։

Խոսելով սոցիալիստական կողմնորոշման երկրների մասին, Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում ասաց. «Առաջադիմական ուղիով այդ երկրների զարգացումը, իհարկե, տեղի է ունենում ոչ միատեսակ, այն ընթանում է բարդ պայմաններում։ Բայց հիմնական ուղղությունները նման են։ Դա իմպերիալիստական մոնոպոլիաների, տեղական խոշոր բուրժուազիայի և ֆեոդալների դիրքերի աստիճանական վերացումն է, օտարերկրյա կապիտալի գործունեության սահմանափակումը։ Դա էկոնոմիկայի մեջ ժողովրդական պետության հրամանատարական բարձունքների ապահովումն է և անցումը դեպի արտադրողական ուժերի պլանային զարգացումը, գյուղում կոոպերատիվ շարժման խրախուսումը։ Դա հասարակական կյանքում աշխատավոր մասսաների դերի բարձրացումն է, պետական ապարատի աստիճանական ամրապնդումը ժողովրդին նվիրված ազգային կադրերով։ Դա այդ երկրների արտաքին քաղաքականության հակաիմպերիալիստական բնույթն է։ Նրանցում ամրապնդվում են հեղափոխական կուսակցությունները, որոնք արտահայտում են աշխատավորների լայն մասսաների շահերը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 17—18)։

Այս չափանիշները, ինչպես տեսնում ենք, ներառում են ազատագրված



երկրների կյանքի բոլոր ոլորտները, արտացոլում դրանցում տեղի ունեցող տնտեսական, քաղաքական, սոցիալական, գաղափարախոսական պրոցեսների էությունն ու ուղղությունը, համաշխարհային ասպարեզում դասակարգային պայքարի, երկու համաշխարհային սիստեմների հակամարտությունում այդ երկրների տեղն ու դերը։ Այդ չափանիշների քննարկումը ցույց է տալիս նաև, որ դրանք արտահայտում են ոչ կապիտալիստական զարգացման բոլոր պատմական ձևերի գլխավոր առանձնահատկությունները, ի մի ձուլում, ասենք, Մոնղոլիայի պատմական փորձն ու Աֆղանստանի, Եթովպիայի և մյուսների արդի փորձը։

Սոցիալիստական կողմնորոշման երկրների զարգացման սկզբունքորեն կարևոր առանձնահատկությունը ղեկավար հեղափոխական դեմոկրատիայի անշեղ էվոլյուցիան է դեպի գիտական սոցիալիզմը։ Իսկ այդ, բնականաբար, նշանակում է մարքս-լենինյան հիմքի վրա հասարակական կյանքի վերափոխման ծրագրի մշակում։ 70-ական թվականների վերջերին և 80-ական թվականների սկզբներին հեղափոխական դեմոկրատիայի մշակած փաստաթղթերում արդի դարաշրջանի մարքս-լենինյան բնութագրումն ավելի ու ավելի հաճախ է ելակետային մեթոդաբանական սկզբունք ծառայում ներքին ու միջազգային պրոբլեմների վերլուծման համար։ Օրինակ, Եմենի սոցիալիստական կուսակցության ծրագրում միջազգային հարաբերությունների բնութագրումն սկսվում է արդի դարաշրջանի՝ իբրև համաշխարհային մասշտաբով կապիտալիզմից սոցիալիզմին հեղափոխական անցման դարաշրջանի, գիտական սահմանումով։ Եթովպիայի ժամանակավոր զինվորական վարչական խորհրդի «Ազգային-դեմոկրատական հեղափոխության ծրագրում», որն ընդունվել է 1976 թվականին, նշվում է «սոցիալիստական սկզբունքների վրա խարսխվող կենտրոնացված պլանավորում ունենալու» անհրաժեշտության մասին։ Իսկ չէ՞ որ դա Եթովպիայի ղեկավարության՝ դեպի գիտական սոցիալիզմ գաղափարական անցման առաջին քայլերն էին դեռ։ Այսօր տեղի է ունենում մարքսիզմ-լենինիզմի քաղաքական ու գաղափարական հիմքի վրա այդ երկրի ավանգարդային կուսակցության կազմավորումը։

Սոցիալիստական կողմնորոշման բնորոշ ու հույժ կարևոր առանձնահատկությունն այսօր աշխատավորների քաղաքական, դասակարգային գիտակցության բարձրացումն է, հասարակական-քաղաքական կյանքին անցյալի համեմատությամբ նրանց ավելի լայն մասնակցությունը։ Սոցիալական դինամիկան ամենից առաջ բնորոշվում է բանվոր դասակարգի զարգացմամբ, նրա կողմից իր սոցիալական ու քաղաքական «կշռի» բարձրացմանը համապատասխան հասարակության մեջ ավելի կարևոր դիրքերի նվաճմամբ։ Բանվոր դասակարգը, չնայած այդ երկրներում իր սակավաթիվ լինելուն, ձևավորվելով իբրև հասարակության հեգեմոն, ռեակցիայի դեմ մղվող պայքարում իր շուրջն է համախմբում քաղաքի ու գյուղի աշխատավոր խավերին։ Ըստ դասակարգային հատկանիշների հասարակության խոր շերտավորման և դասակարգային պայքարի սրման պայմաններում հեղափոխական կուսակցությունները այժմ հենվում են բանվոր դասակարգի գլխավորած լայն ճակատի վրա՝ որպես իրենց սոցիալական ու քաղաքական բազայի։ Ահա թե ինչու աշխատավորական մասսաների դերի, նրանց հեղափոխական նախաձեռնության բարձրացումը դառնում է օբյեկտիվ անհրաժեշտություն՝ սոցիալիստական կողմնորոշման ուղիով հաջող առաջընթացի համար։ Այնտեղ, ուր այդ ամենը սոսկ դեկլարատիվ բնույթ է կրում, ուր իրական քայլեր չեն ձեռնարկվում հասարակական-քաղաքական կյանքում դեմոկրատական սկզբունքների զարգացման նպատակով, այնտեղ աջ ուժերի ամրապնդման, առաջադիմական վերափոխումների պրոցեսի դանդաղեցման միտումներ են ծագում։ Ստեղծվում է առաջադիմական ռեժիմները ռեակցիոն-բյուրոկրատականի վերասերվելու իրական վտանգ։

Սոցիալիստական կողմնորոշման պետական քաղաքականության ձևավորումը, այդ երկրների կառավարությունների հետևողական գործունեությունը հանգեցնում են տնտեսական ու սոցիալական բազիսի նպատակամետ ձևավորմանը, իսկ դա կայունություն և դասակարգային որոշակիություն է հաղորդում

հասարակական բոլոր պրոցեսներին։ Կարևոր նշանակություն են ձեռք բերում արդյունաբերության մեջ պետական սեկտորի և գյուղում կոոպերացման ընդլայնումն ու ամրապնդումը։ Այսօր պետական սեկտորն ընդլայնվում է հիմնականում երկու ուղիով։ Նախ՝ կապիտալիստական սեփականության ազգայնացման միջոցով։ Հետզհետե մեծանում է երկրորդ ուղու՝ նոր, ընդ որում ամբողջ ժողովրդական տնտեսության վերակառուցման համար վճռական նշանակություն ունեցող ձեռնարկությունների կառուցման միջոցով պետական սեկտորի կազմավորման կարևորությունը։

Սոցիալիստական կողմնորոշման երկրներում ստեղծվել կամ ստեղծվում են պետական մետալուրգիական, քիմիական գործարաններ, հիդրոկայաններ, շինարարական արդյունաբերության ձեռնարկություններ, տեքստիլ ֆաբրիկաներ։ Օրինակ, Սիրիայի համար մեծ նշանակություն ունի Եփրատի հիդրոհանգույցը, Ալժիրի համար՝ «էլ Հաջեր» մետալուրգիական համալիրի կառուցումը և այլն։ Միայն Ալժիրում 1962—1980 թթ. գործարկվել է 660 նոր ձեռնարկություն, այդ թվում էլեկտրատեխնիկական ու էլեկտրոնային սարքավորումների արտադրության համալիրը, որը տարեկան թողարկում է 15 հազար հեռուստացույց։ Նավթի հանույթն այդ երկրում 1978 թվականին կազմել է 54 միլիոն տոննա՝ 1962 թվականի 20 միլիոնի դիմաց։ Նույն տարում Գելմի գործարանը թողարկել է 400 հազար մոտոցիկլ ու մոպեդ, իսկ Կոնստանտինի գործարանը՝ «Սիրտա» մակնիշի երեք հազար ալժիրյան տրակտոր։ Ռուիբի գործարանն արտադրել է 6 հազար բեռնատար ավտոմեքենա։

Ինչ վերաբերում է ազգայնացմանը, ապա ի տարբերություն կապիտալիստական կողմնորոշման երկրների, սոցիալիստական կողմնորոշման երկրներում դա սկզբունքորեն այլ բնույթ է կրում։ Ալժիրում, Անգոլայում, Մոզամբիկում, Եթովպիայում, Մադագասկարում և մի շարք այլ երկրներում ազգայնացումը կապիտալիստական կողմնորոշման երկրների համեմատությամբ շատ ավելի լայն բնույթ ունի ամենից առաջ այն իմաստով, որ դա ընդգրկում է և՛ արտասահմանյան մոնոպոլիաների, և՛ տեղական խոշոր ու մասամբ նաև միջին բուրժուազիայի սեփականությունը։ Դրա հետևանքով ազգայնացումը ձեռք է բերում ոչ միայն հակաիմպերիալիստական, այլև հակակապիտալիստական բնույթ, ուղղված է կապիտալիզմի՝ իբրև հասարակական սիստեմի, դեմ։

Մոզամբիկի Ժողովրդական Հանրապետությունում, օրինակ, 1975—1978 թթ. պետության հսկողության տակ դրվեցին հողն ու նրա ընդերքի հարստությունները, մի շարք խոշորագույն ֆաբրիկաներ ու գործարաններ։ Կառավարությունն իր հսկողության տակ առավ հինգ խոշորագույն բանկերը։

Սոցիալիստական կողմնորոշման երկրներում ազգայնացումը և պետական սեկտորի ստեղծումն ու խոշորացումն ունեն ոչ միայն կարևոր տնտեսական, այլև սոցիալական ու գաղափարաքաղաքական նշանակություն։ Դրանք ուղղված են նաև մասնավոր-սեփականատիրական, մանր-բուրժուական տարրերի սանձահարմանը, հասարակական կյանքում ու մարդկանց գիտակցության մեջ կոլեկտիվիստական սկզբունքների արմատավորմանը։ Այդ առումով վիթխարի նշանակություն ունեն աշխատավոր գյուղացիության օգտին իրականացված ագրարային ռեֆորմները, գյուղում լայն կոոպերատիվ շարժման խրախուսումն ու կազմակերպումը։

Սոցիալիստական կողմնորոշման երկրներում կառավարությունները միջոցներ են ձեռնարկում արտադրության ղեկավարման գործում աշխատավորների դերի բարձրացման նպատակով։ Եթովպիայի, Անգոլայի, Ալժիրի, Մոզամբիկի, Կոնգոյի Ժողովրդական Հանրապետության և մի քանի այլ երկրների ձեռնարկություններում ստեղծվել են բանվորական խորհուրդներ (կամ վարչական խորհուրդներ ու կոմիտեներ), որոնք նպաստում են արտադրության ընթացքի ու նրա կազմակերպման վրա աշխատավորների ազդեցության ուժեղացմանը։ Այդ երկրների արհմիութենական կազմակերպությունները պայքարում են պետական ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, ընդդեմ սաբոտաժի ու ներքին ռեակցիայի գործունեության։

Հարկ է նշել նաև, որ սոցիալիստական կողմնորոշման երկրներում ձևա-



վորվում է պետական ձեռնարկությունների գործունեության պլանավորման և մասնավոր սեկտորի աշխատանքի կարգավորման սիստեմ։ Տնտեսական պլանավորման կարևորությունը նշվում է հեղափոխական-դեմոկրատական կուսակցությունների փաստաթղթերում, նրանց ղեկավարների ելույթներում։ «Քանի որ ուժեղ ու անկախ ազգային էկոնոմիկայի ստեղծումը հնարավոր է միայն դրա արդյունաբերական ու գյուղատնտեսական սեկտորների համաչափ զարգացման պայմաններում, անհրաժեշտ է ունենալ սոցիալիստական սկզբունքների վրա խարսխված ազգային կենտրոնացված պլանավորում»,— ասվում է Եթովպիայի ժամանակավոր զինվորական վարչական խորհրդի «Ազգային-դեմոկրատական հեղափոխության ծրագրում»։

Սոցիալիզմի երկրները հետևողականորեն վարում են գաղութային ճնշումից ազատագրված երկրների հետ համագործակցության ընդլայնման ու ամրապնդման քաղաքականություն։ Այդ երկու խումբ երկրներին միավորում է շահերի ու նպատակների ընդհանրությունը կամ նմանությունը։ Տարեցտարի խորանում և ընդլայնվում են դրանց կապերը՝ ներառելով համագործակցության նորանոր ոլորտներ։ Հատկանշական է, որ 1960 թվականին ՍՍՀՄ-ը դիվանագիտական հարաբերություններ ուներ 29 ազատագրված երկրների հետ, իսկ 1979 թվականին՝ 76։ ՏՓԽ-ի անդամ պետությունների և ազատագրված երկրների միջև ապրանքափոխանակությունը 1950—1980 թթ. ավելացել է 33 անգամ։

Սովետական Միությունն ազատագրված երկրների հետ զարգացնում է երկուստեք շահավետ տնտեսական և գիտատեխնիկական լայն համագործակցություն։ Երկրների այն շրջանակը, որոնց հետ մենք երկարատև միջպետական համաձայնագրերի հիման վրա իրականացնում ենք նման համագործակցություն, ընդլայնվել և 1960 թվականի 14-ից 1981 թվականին հասել է 64-ի։ ՍՍՀՄ-ի աջակցությամբ դրանցում կառուցվել են 680 արդյունաբերական ձեռնարկություններ, էլեկտրակայաններ, հիդրոտեխնիկական, գյուղատնտեսական և ժողովրդատնտեսական այլ օբյեկտներ։ Ներկայումս կառուցվում կամ նախատեսվում է կառուցել ևս ավելի քան 500 ձեռնարկություն և օբյեկտ։

Ազատագրված երկրների համար նման համագործակցության նշանակությունն այն է, որ դրանցում կառուցվող ձեռնարկություններից շատերը դնում են ժամանակակից արդյունաբերության համապատասխան ճյուղերի հիմքերը, իսկ այնպիսի կարևոր բազիսային ճյուղ, ինչպիսին սև մետալուրգիան է, Ասիայի ու Աֆրիկայի շատ պետություններում ստեղծվում է գերազանցապես ՍՍՀՄ-ի աջակցությամբ։ Այդ ամենը նպաստում է ազատագրված երկրների տնտեսական ինքնուրույնության պրոբլեմի լուծմանը։ Պետք է նկատի առնել նաև, որ նման համագործակցությանը մասնակցում են ՏՓԽ-ի մյուս անդամները ևս, որոնք Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի երկրներում կառուցում են 4,5 հազար օբյեկտներ։ Դրանցից երեք հազարն արդեն գործարկվել են։

Տարեցտարի ամրապնդվում է ազատագրված երկրների հետ ՍՍՀՄ-ի համագործակցությունը, որի ընդհանրացնող ցուցանիշը ապրանքաշրջանառության աճն է։ 1960—1980 թթ. այն 0,8 միլիարդից հասել է 12 միլիարդ ռուբլու, այսինքն աճել է 15 անգամ։ Ոչ սոցիալիստական երկրների հետ ՍՍՀՄ-ի ապրանքաշրջանառության մեջ ազատագրված երկրների տեսակարար կշիռը 1980 թվականին հասավ 27,5 տոկոսի։ Սովետական արտահանության մեջ հիմնական տեղը զբաղեցնում են մեքենաներն ու սարքավորումները, ընդ որում դրանց կեսից ավելին ՍՍՀՄ-ի օգնությամբ կառուցվող արդյունաբերական ձեռնարկությունների և մյուս օբյեկտների կոմպլեկտ մատակարարումներն են։

Ազատագրված երկրների տնտեսական աճն ու սոցիալական և ազգային առաջընթացը շատ բանով դանդաղում են որակյալ բանվորների պակասի պատճառով։ Սոցիալիզմի երկրները օգնում են նաև այդ կարևոր պրոբլեմի լուծմանը։ ՏՓԽ-ի անդամ երկրներում սովորում են Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի ավելի քան 100 երկրների ուսանողներ։ Սոցիալիզմի երկրներն այդ պետություններին օգնել են կառուցելու և սարքավորելու 2 բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններ, 120 ուսումնական կենտրոններ ու պրոֆտեխուսումնարաններ և այլն։ Ինչ վերաբերում է

ՍՍՀՄ-ին, ապա նրա օգնությամբ 26 երիտասարդ պետություններում ստեղծվել են 143 ուսումնական հաստատություններ, այդ թվում՝ 21 բարձրագույն ու 18 միջնակարգ մասնագիտական և այլ ուսումնական հաստատություններ։

Սերտ և բազմակողմանի հարաբերություններ են հաստատվել հատկապես ՍՍՀՄ-ի և սոցիալիստական կողմնորոշման երկրների միջև։ Դրանք ներառում են այդ պետությունների կենսագործունեության բոլոր ոլորտները՝ տնտեսական, քաղաքական, գաղափարախոսական, դիվանագիտական, ռազմական։ Վերջին տարիներս Սովետական Միությունը բարեկամության և համագործակցության պայմանագրեր է կնքել Անգոլայի, Եթովպիայի, Մոզամբիկի, Աֆղանստանի, Եմենի Ժողովրդական Դեմոկրատական Հանրապետությունների ու Սիրիայի հետ։ Ամրապնդելով միջազգային հարաբերություններում սոցիալիստական կողմնորոշման երկրների սուվերենությունը, նրանց պաշտպանունակությունը, այդ պայմանագրերը հուսալի երաշխիքներ ու պայմաններ են ստեղծում դրանցում հեղափոխական պրոցեսների խորացման համար։

ՍՍՀՄ-ի և ազատագրված երկրների իրավահավասար ու փոխշահավետ համագործակցությունը նպաստում է այդ երկրների մարդկանց մտքերի վրա սոցիալիզմի հեղափոխականացնող ներգործության խորացմանը, աշխատավորների դասակարգային ու հեղափոխական ինքնագիտակցության աճին։ Այդ համագործակցության հետագա ընդլայնումն ու զարգացումը ազատագրված երկրների տնտեսական ու քաղաքական անկախության ամրապնդման կարևոր երաշխիքն են։

---

# ԷԹՆԻԿԱԿԱՆ ՓՈՔՐԱՄԱՍՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՎԻՃԱԿՆ ԱՄՆ-ՈՒՄ

**ՄԱՐԻԱՄ ՏԵՐ-ԳՐԻԳՈՐՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

**ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ** հարաբերությունների զարգացումը, ամերիկյան ազգի կազմավորումը, երկրի հասարակական-քաղաքական ինստիտուտների ձևավորումը անմիջականորեն կապված են այն ներգաղթի հետ, որը տեղի է ունեցել ԱՄՆ-ի ողջ պատմության ընթացքում։

Մինչև 1880 թվականը գերակշռում էր այսպես կոչված հին ներգաղթը հին կուլտուրական երկրներից՝ Անգլիայից, Գերմանիայից, մասամբ Շվեդիայից։ Նույնիսկ մինչև 1890 թվականը Անգլիայից և Գերմանիայից գաղթողները կազմում էին բոլոր վերաբնակվողների կեսից ավելին։

1880 թվականից սկսվում է այսպես կոչված նոր ներգաղթի աննախատեսելի արագ աճն Արևելյան և Հարավային Եվրոպայից, Ավստրիայից, Իտալիայից և Ռուսաստանից։ Անցած հարյուրամյակի 80-ական թվականներից այն երկրները, որոնք մինչ այդ հիմնական արտագաղթի կենտրոններն էին, ետ են քաշվում երկրորդ պլան, իսկ Եվրոպայից ներգաղթի գլխավոր աղբյուր են դառնում Արևելյան և Հարավային Եվրոպայի տնտեսապես ու քաղաքականապես հետամնաց երկրները։ Սկսվում է ներգաղթ նաև մի շարք այնպիսի երկրներից, որտեղից մինչ այդ արտագաղթ չէր եղել։

Ամերիկյան ազգի էթնիկական ձևավորման, կապիտալիզմի զարգացման պրոցեսում վճռական դեր է խաղացել նաև Հարավային և Արևելյան Եվրոպայի երկրներից կատարվող ներգաղթը։

«Կապիտալիզմն ստեղծել է ժողովուրդների գաղթի մի առանձին տեսակ։ Արդյունաբերական տեսակետից արագ զարգացող երկրները, ավելի շատ մեքենաներ գործադրելով, համաշխարհային շուկայից դուրս մղելով հետամնաց երկրները՝ սահմանում են միջինից ավելի բարձր աշխատավարձ և հետամնաց երկրներից գրավում վարձու բանվորներ»,— այսպես է բացատրել Վ. Ի. Լենինը ԱՄՆ-ում ներգաղթի հոսքի նոր աղբյուրներ երևան գալու պատճառները (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 24, էջ 112)։

Ութսունական թվականներից սկսած ներգաղթողների մեջ առավել մեծ թիվ էին կազմում Հարավային, Արևելյան Եվրոպայի, ռուսական կայսրության, Ավստրո-Հունգարիայի, եվրոպական Թուրքիայի բազմազգ պետությունների վտարանդիները։ Ներկայումս ԱՄՆ-ում հաշվվում են էթնիկական փոքրամասնությունների (բացառությամբ հրեական փոքրամասնության), Արևելյան և Հարավային Եվրոպայից ներգաղթածների հետնորդների 23 խմբեր։

Այստեղ քննարկվող յուրաքանչյուր էթնիկական միավորին բնորոշ են երկրում նրա ունեցած սոցիալ-տնտեսական վիճակի մի որոշակի մակարդակ, կուլտուրական զարգացման և սոցիալական հոգեբանության կոնկրետ առանձնահատկություններ։ Սակայն դրանք բոլորն էլ գտնվում են ամերիկյան հասարակության սոցիալական հիերարխիայի համարյա միևնույն աստիճանի վրա, ընդամին ասիմիլյացիայի միջին փուլում։

Էթնիկական փոքրամասնությունների ոչ լրիվ ասիմիլյացիան պայմանավորված է ամերիկյան կապիտալիզմի բնույթով, որի ազգային հարցի լուծման գաղափարախոսությունն ու պրակտիկան նրա զարգացման բոլոր փուլերում եղել են ազգային և ռասայական խտրականությունը, այս կամ այն ազգային, ռասայական խմբերի դեմ ուղղված շովինիզմը՝ իր ամենատարբեր դրսևորումներով։

Հարավային և Արևելյան Եվրոպայի երկրներից ԱՄՆ կատարված ներգաղթի ողջ պատմության ընթացքում ներգաղթողները ենթարկվում էին ո՛չ միայն տնտեսական շահագործման, այլև ազգային սուր խտրականության։ Ամերիկյան բուրժուազիան, տեղական բնակչության մեջ արհեստականորեն բորբոքելով երկ-

պատակություն և ազգային նախապաշարմունքներ, տարանջատում էր աշխատավորներին, դրանով իսկ արգելակելով ներգաղթածների ասիմիլյացիան ամերիկյան հասարակության մեջ: Նման իրավիճակում հարմարվելով կյանքի ամերիկյան պայմաններին, ներգաղթածները հարկադրված էին ստեղծելու իրենց յուրահատուկ կայուն սոցիալ-էթնիկական կազմավորումները, պահպանելով սեփական պատմամշակութային ավանդույթները, իրենց հերթին նրանց հետագա ասիմիլյացիային խոչընդոտող վճռական գործոն դարձան:

Ազգային և ռասայական խտրականությունը, լինելով բուրժուական հասարակության ուղղակի ծնունդը և մնալով որպես ամերիկյան ապրելակերպի բնորոշ գծերից մեկը, այսօր էլ շարունակում է խոշոր դեր խաղալ Արևելյան և Հարավային Եվրոպայից ներգաղթածների հետնորդների կյանքում:

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը ո՛չ միայն չի վերացրել սոցիալական անհավասարությունը, ինչպես և նրան ուղեկցող ազգային-ռասայական ճնշումը, այլ ավելի է խորացրել նրա բոլոր հակասությունները: Թեպետ անցած տասնամյակների ընթացքում ամերիկյան հասարակության մեջ տեղի է ունեցել էթնիկական փոքրամասնությունների՝ ներգաղթածների հետնորդների սոցիալական և տնտեսական ստատուսի որոշակի բարվոքում, այնուամենայնիվ չի կարելի խոսել ամերիկյան հասարակության սոցիալական և քաղաքական կառուցվածքում նրանց լիակատար ու իրավահավասար ընդգրկման մասին: Այսօր էլ երկրի սոցիալական ու քաղաքական կյանքի շատ ոլորտներում էթնիկական փոքրամասնությունները անտեսանելի անջրպետով բաժանված են այսպես կոչված «բնիկ» ամերիկացիներից, այսինքն՝ սպիտակամորթ անգլո-սաքսոն բողոքականներից, քանի որ ամերիկյան հասարակության մեջ պահպանվում է անհատի ազգային ծագման վրա հիմնված կաստայականության սիստեմը:

Ինչպես նշել են Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը, ազգերին միմյանց հակադրելը կապիտալիստական հասարակության մեջ անխուսափելիորեն առկա սոցիալական անհավասարության ու հակամարտության արդյունք է: «Շովինիզմը,— նշել է Կ. Մարքսը,— բանվոր դասակարգի ինտերնացիոնալ համագործակցությանը խանգարելու միջոց է» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 17, стр. 564):

Թեև սպիտակամորթ անգլո-սաքսոն բողոքականների շովինիզմն ու խտրականությունը փոքրամասնությունների նկատմամբ դրսևորվում է սոցիալ-քաղաքական կյանքի բոլոր մարզերում, բայց այն առավել ցայտուն արտահայտվում է աշխատանքային փոխհարաբերությունների ոլորտում, որտեղ էթնիկական փոքրամասնությունների աշխատավորները մոնոպոլիստական կապիտալի և նրա շահերը պաշտպանող բուրժուական պետության կողմից ենթարկվում են երկակի՝ ազգային ու սոցիալական ճնշման: Երկրի ազգային փոքրամասնությունների աշխատավորների (աֆրո-ամերիկացիների, իսպանախոս փոքրամասնությունների, ինչպես նաև Հարավային և Արևելյան Եվրոպայի երկրներից գաղթածների ու այլոց) խտրականությունն ու գերշահագործումը ամերիկյան բուրժուազիայի համար ծառայում է և՛ լրացուցիչ շահույթի աղբյուր, և՛ երկրի բանվոր դասակարգի տարանջատման միջոց:

ԱՄՆ-ի ազգային փոքրամասնությունների խորագիտակ Ա. Ն. Շլեպակովի վկայությամբ «...վարձու աշխատանքի բանակում ռասայական-ազգային խմբերի ներկայացուցիչները գերազանցապես «օկուպացրել են» ցածր վարձատրվող դիրքերը, նրանց որակավորման մակարդակն ամբողջությամբ վերցրած զիջում է բնիկների մակարդակին» (А. Н. Шлепаков. США: социальная структура общества и его национальный состав, Киев, 1976 г., стр. 170):

Էթնիկական խմբերի շրջանում տիրող նման վիճակի ամենակարևոր պատճառներից մեկը ներգաղթածների նկատմամբ խտրականության քաղաքականությունն է, որը վարել ու շարունակում է վարել ամերիկյան բուրժուազիան՝ ԱՄՆ-ի ողջ պատմության ընթացքում: Մինչև օրս էլ լեհ, չեխ, հունգարացի, իտալացի, հույն, լիտվացի, լատիշ, հայ, ուկրաինացի և այլազգի բանվորները ենթարկվում են կրկնակի կեղեքման. մի կողմից՝ ամերիկյան կառավարող դասակարգի շահագործումը, մյուս կողմից՝ ազգային նախապաշարմունքներն ու խտրականությունները:

Էթնիկական փոքրամասնությունների աշխատավորների կեղեքումը հատկապես ուժեղացել է արդի փուլում, երբ ԱՄՆ-ում նկատելիորեն սրվել են սոցիալական հակասությունները: Կապիտալիստական հասարակության պայմաններում արտադրության մեջ գիտատեխնիկական նորագույն նվաճումների կիրառումը վնասում է աշխատավորներին, միլիոնավոր մարդկանց դուրս է շպրտում ֆաբրիկաների և գործարանների դարպասներից:

Նախապաշարմունքը, կանխակալ վերաբերմունքը, որոնք այսօր էլ առկա են ամերիկյան հասարակական գիտակցության մեջ և վարքագծում, հատկապես սուր է զգում ազգային փոքրամասնությունների շահագործվող դասակարգը: Ճշմարիտ է ասված, որ «կապիտալիզմի օրոք չի կարելի վերացնել ազգային (և



առհասարակ քաղաքական) ճնշումը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 30, էջ 27):

Սակայն նկատենք, որ էթնիկական փոքրամասնությունների նկատմամբ նախապաշարմունքն առկա է ամերիկյան հասարակության մասսայական գիտակցության մեջ՝ անկախ այդ փոքրամասնությունների ներկայացուցիչների սոցիալական և տնտեսական ստատուսի: Նախապաշարմունքի հոգեբանությունը, որն ամերիկյան հասարակության մեջ խորապես արմատացած է սպիտակամորթ անգլո-սաքսոն բողոքականներից տարբեր ծագում ունեցող մարդկանց նկատմամբ, տարածվում է նաև իտալական, լեհական, հայկական, ռուսական և այլոց տնտեսապես ապահով մանր ու միջին բուրժուազիայի վրա:

Քանի որ ամերիկյան հասարակության սոցիալական հոգեբանությունը հասարակական ստատուսի բովանդակության մեջ ներառում է էթնիկական ծագման գործոնը, ապա սպիտակամորթ անգլո-սաքսոն բողոքականների ներկայացուցիչները շարունակում են «նոր» ներգաղթածների հետնորդներին վերաբերվել կանխակալությամբ, եթե նրանք նույնիսկ պատկանում են միևնույն դասակարգին:

«Էթնիկականությունը,— նշել է ամերիկյան հետազոտող Ջ. Դ. Գրինսթոունը,— ազդում է անհատի հասարակական ստատուսի վրա այնպես, ինչպես նրա կրթական ցենզը, եկամուտը կամ պրոֆեսիա տիրապետելու աստիճանը»:

Հատկանշական է, որ ամերիկյան բուրժուական հետազոտողներն իրենք են շեշտում ներգաղթածների հետնորդների նկատմամբ կիրառվող խտրականության փաստը: Բուրժուական խոշոր սոցիոլոգ Ջ. Մեյերսը գրում է. «Վերջերս ներգաղթածների առաջին սերնդի մահով և երրորդ սերնդի հասունացմամբ հաճախ գտնում են, որ էթնիկական խմբերը շուտով կուլ կգնան ամերիկյան հասարակությանը: Ճիշտ է, որ նրանց մեծամասնությունն այլևս չի տարբերվում մնացած ամերիկացիներից այնպիսի արտաքին հատկանիշներով, ինչպիսիք են հագուստը կամ լեզուն: Ճիշտ է նաև այն, որ ամերիկյան կուլտուրան մեծ ազդեցություն է թողել էթնիկական խմբերի անդամների վրա: Թվում է, թե նրանք քիչ ընդհանուր բան ունեն իրենց ազգային կուլտուրայի հետ և, հատկապես, ԱՄՆ-ի սահմաններից դուրս, ամերիկացիների տեսք ունեն: Սակայն էթնիկական փոքրամասնություններն ամբողջովին չեն տարրալուծվել ամերիկյան հասարակության մեջ: Օրինակ, երկրի հյուսիս-արևելյան յուրաքանչյուր խոշոր քաղաք ունի իր էթնիկական բնակավայրերը, էթնիկական խմբերի անդամներն անհամեմատ շատ են ներկայացված ցածր վարձատրվող աշխատանքներում: Ավելին, մինչև օրս շարունակում են գոյություն ունենալ խտրականությունը և արհամարհական մականուններ տալը»:

Լայնորեն տարածված է այն կարծիքը, որ ամերիկյան հասարակության մեջ խտրականությունը առկա է միայն երկրի «գունավոր» բնակչության նկատմամբ: Սակայն խտրականությունը, լինելով Ամերիկայի կառավարող դասակարգի ազգային քաղաքականության անքակտելի մասը, ընդգրկում է ամերիկյան հասարակության ներկայացուցիչների շատ ավելի լայն սպեկտր:

«Խտրականությունը,— նկատել է Ա. Ն. Շլեպակովը,— ունի բավականին զարգացած բնույթ ու բազմապիսի դրսևորումներ և ընդգրկում է ո՛չ միայն «գունավորներին», այլև անգլո-սաքսոնական միջուկին չպատկանող ամերիկացիների մյուս կատեգորիաները» (А. Н. Шлепаков. США: социальная структура общества и его национальный состав, Киев, 1976, стр. 161):

Ջեյմս Ս. Ֆրայդերսը, ուսումնասիրելով տարբեր էթնիկական փոքրամասնությունների նկատմամբ ամերիկյան հասարակության նախապաշարմունքի հոգեբանությունը, այն եզրակացությանն է հանգում, որ ուկրաինացիների նկատմամբ մինչև այժմ պահպանվում են այնպիսի նախապաշարմունքներ, ինչպիսին, ասենք, գոյություն ունեն հնդկացիների, նեգրերի նկատմամբ: Ամերիկյան գիտնականներ Մ. Լևին և Մ. Կրամերը, ուսումնասիրով սլավոնական ծագման ամերիկացիների սոցիալ-քաղաքական ստատուսը, պնդում են, որ սլավոնները գտնվում են ամերիկյան սոցիալ-քաղաքական սանդղակի ցածր աստիճաններում, հատկապես շեշտելով այն փաստը, որ վեց սլավոններից միայն մեկն ունի քիչ թե շատ հեղինակավոր ծառայություն պետական հիմնարկության մեջ:

Չիկագոյի համալսարանին առընթեր հասարակական կարծիքի ուսումնասիրման ազգային կենտրոնին կից ամերիկյան պլյուրալիզմի ուսումնասիրման կենտրոնի դիրեկտոր Ա. Մ. Գրիլին, ուսումնասիրելով իտալական և լեհական կաթոլիկների սոցիալ-քաղաքական ստատուսը, նշում է, որ այդ խմբերը, ունենալով որոշակի կրթական ցենզ և տնտեսական ստատուս, պետական ապարատում և հասարակական հիմնարկություններում մեծ մասամբ զբաղեցնում են նվազ պատասխանատու պաշտոններ: Ա. Մ. Գրիլին դա բացատրում է այդ էթնիկական կրոնական խմբերի նկատմամբ կանխակալ և որոշակի խտրական մոտեցմամբ:

Էթնիկական փոքրամասնությունների նկատմամբ խտրականությունը հատկապես ցայտուն է դրսևորվում էթնիկական խմբերի և անգլո

սաքսոնական մեծամասնության ներկայացուցիչների միջև քաղաքական իշխանությունը բաժանելիս: Այսպես, օրինակ, 1976 թ. հոկտեմբերին Հարվարդի համալսարանին կից էթնիկական պրոբլեմների ուսումնասիրման ազգային կենտրոնը կոնգրեսի դասակարգային, կրոնական և էթնիկական կազմը պարզելու նպատակով հետազոտություն կատարեց: Անգլիական, իռլանդական, գերմանական, սկանդինավյան բողոքականների էթնոկրոնական խմբերը, որոնք կազմում են բնակչության մոտ 56 տոկոսը, կոնգրեսում ունեն տեղերի 62 տոկոսը: Իռլանդական, գերմանական, լեհական, իտալական ծագում ունեցող կաթոլիկները, որոնք կազմում են բնակչության շուրջ 25 տոկոսը, կոնգրեսում զբաղեցնում են տեղերի միայն 21 տոկոսը: Աննշան է նաև մյուս էթնիկական փոքրամասնությունների ներկայացուցչությունը:

Օրինակ, ԱՄՆ-ում հայկական էթնիկական խումբը, որ կազմավորվել է XIX դարի վերջին, իր գրեթե հարյուրամյա ողջ պատմության ընթացքում երկրի իշխանության ֆեդերալ մարմիններում ունեցել է մեկ սենատոր և երկու կոնգրեսմեն: Հայերի ներկայացուցչությունը անհամամասնական է նաև կառավարման տեղական մարմիններում: Այսպես, չնայած այն բանին, որ 70-ական թվականներին Մասսաչուսետսի նահանգում ապրում էր ԱՄՆ-ի բոլոր հայերի 20 տոկոսը, այսինքն 90 հազար մարդ, սակայն նահանգի օրենսդրական մարմնում չկար հայկական համայնքի ոչ մի ներկայացուցիչ:

1976 թվականին ԱՄՆ-ի համազգային ընտրությունների ժամանակ հայկական մամուլի էջերում նոր ղեկավարության առջև պահանջ դրվեց, այն է՝ երկրի էթնիկական փոքրամասնություններին մասնակից դարձնել քաղաքական հարցերի լուծմանը:

Նույնիսկ այնպիսի համեմատաբար ազդեցիկ և քաղաքականապես ակտիվ էթնիկական խումբը, ինչպիսին լեհականն է, անհամամասնորեն է ներկայացված երկրի քաղաքական ընտրախավում: Այսպես, «Ով ով է ամերիկյան քաղաքականության մեջ» վերնագրով քաղաքական տեղեկագիրքը պարունակում է լեհական ծագում ունեցող միայն 0,7 տոկոս ազգանուն:

Համանման պատկեր է նկատվում խոշոր մասնավոր սեփականության ոլորտում: Արդեն վերը նշված լեհական խումբը «Ով ով է ֆինանսներում» տեղեկագրքում ներկայացված է միայն 0,3 տոկոս ազգանուններով: Թեպետ «նոր» ներգաղթածների թոռները բարձրագույն կրթություն են ստանում Միչիգանի, Վիսկոնսինի, Կալիֆորնիայի համալսարաններում, սակայն նրանց տոկոսն աննշան է այնպիսի արտոնյալ համալսարաններում, ինչպիսին են Կոլումբիայինը, Հարվարդինը, Յելինը և այլն:

Էթնիկական փոքրամասնությունների ներկայացուցիչները հազվադեպ են մասնակցում հասարակական կրթության կառավարման աշխատանքներին: ԱՄՆ-ի երեք խոշոր՝ ուկրաինացիների, չեխերի և լեհերի էթնիկական կազմակերպությունները 1971 թ. Դետրոյտում ժողովրդական կրթության կենտրոնական քաղաքային խորհուրդ ուղարկեցին մի նամակ, բողոքելով, որ սլավոնական ծագում ունեցող ամերիկացիներին քաղաքային դպրոցների ղեկավարման սիստեմում հազվադեպ են թույլատրում ղեկավար պաշտոններ զբաղեցնել: 70-ական թվականներին Դետրոյտի բնակչության 30 տոկոսը կազմում էին չեխեր, ռուսներ, լեհեր, ուկրաինացիներ, սլովակներ և ուրիշներ: Սակայն այդ տարիներին, ինչպես կենտրոնական քաղաքային խորհրդում, այնպես էլ ռեգիոնալ խորհուրդներում սլավոնական ծագում ունեցող բնակչությունը կառավարման սիստեմում չընդգրկվեց:

«Չնայած հասարակության մեջ մեծամասնության առերևույթ ընդունմանը և «բիհևիորական ասիմիլյացիայի» բարձր մակարդակին, շատ (էթնիկական) փոքրամասնություններ հեռացվել ու հեռացվում են տարբեր տեսակի սոցիալական ընկերություններից և հասարակական խմբերից»,— գրում է ամերիկյան սոցիոլոգ Ի. Ռոուզը:

Արտոնություններ ունեցող շատ սոցիալական ակումբներ և ընկերություններ էթնիկական խմբերի ներկայացուցիչներին իրենց անդամ չեն ընդունում: Եվ մինչև օրս «հին» ներգաղթածների (այսինքն՝ հիմնականում նախքան XIX դարի 80-ական թվականները Հյուսիսային և Արևմտյան Եվրոպայի երկրներից ԱՄՆ ներգաղթածների) հետնորդները կանխակալությամբ են վերաբերվում մասնավորապես իտալացիներին և լեհերին:

Էթնիկական ծագումը հաճախ խոչընդոտ է դառնում «նոր» ներգաղթածների երրորդ, նույնիսկ չորրորդ սերունդների համար՝ մի շարք արտոնյալ ուսանողական ակումբներ մտնելիս, քանի որ այդպիսի ակումբ մտնելը ենթադրում է՝ ուսանողի անպայման պատկանելը սոցիալ-տնտեսական ընտրախավին (օրինակ, 70-ական թվականների կեսերին ուսանողական ակումբների բոլոր անդամների 76 տոկոսը պատկանում էր այնպիսի ընտանիքների, որոնց տարեկան եկամուտը գերազանցում էր 15 հազար դոլարից):

Այսպիսով, չնայած «նոր» ներգաղթի հետնորդների սոցիալ-տնտեսական ստատուսի որոշակի բարձրացմանը, նրանց հիմնական մասն առաջվա նման գտնվում է ամերիկյան հասարակության սոցիալական սանդղակի ստորին աստիճանների վրա, ԱՄՆ-ի կառավարող դասակարգի կողմից ենթարկվելով կրկնակի՝ դասակարգային և ազգային կեղեքման: Ինչ վերաբերում է երևան եկած էթնիկական բուրժուազիային, ապա նա, չնայած իր համեմատաբար բարձր տնտեսական ստատուսին, երկրի սոցիալ-քաղաքական կյանքի բազմաթիվ ասպարեզներում նույնպես ենթարկվում է որոշակի խտրականության: Այդ պատճառով, չնայած համաամերիկյան և էթնիկական բուրժուազիայի դասակարգային շահերի ներդաշնակմանը, ամերիկյան հասարակության մեջ չի կատարվում վերջինիս լիակատար ասիմիլյացիա:

Այսպիսով, էթնիկական խոշոր բուրժուազիայի գաղափարախոսությունը նացիոնալիզմն է, որը, լինելով ամերիկյան կառավարող դասակարգի խտրական քաղաքականության ուղղակի հետևանք, էթնիկական բուրժուազիան օգտագործում է որպես իր դասակարգային շահերի պաշտպանության միջոց: Էթնիկական բուրժուազիայի նացիոնալիզմը՝ բուրժուական «մարտնչող» նացիոնալիզմ է, որը «բթացնում, հիմարացնում, իրարից անջատում է բանվորներին, որպեսզի բուրժուազիայի ձեռքում նրանց սանձած պահի...» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 24, էջ 153):

Էթնիկական բուրժուազիայի նացիոնալիզմը էթնիկական խմբերի շրջանակներում պրոպագանդում է միասնական ազգային կուլտուրայի կոնցեպցիան, որը աշխատավորներին մղում է որոշակի ինքնամեկուսացման, դասակարգային ինքնագիտակցության բթացման:

Իտալացիները, լեհերը, հայերը, ռուսները իրենց սոցիալական և քաղաքական կյանքի բոլոր մարզերում հանդիպում են քամահրանքի, կանխակալ վերաբերմունքի: Դա, անշուշտ, էթնիկական ծագում ունեցող բանվորներին օտարում է ամբողջ հասարակությունից, նպաստում էթնոցենտրիզմի պահպանմանը:

«Բուրժուական դեմոկրատիային, հենց ըստ նրա բնության, հատուկ է վերացական կամ ձևական հարցադրումը հավասարության մասին ընդհանրապես, այդ թվում ազգային հավասարության մասին» (Վ. Ի. Լենին, **Երկեր**, հ. 31, էջ 165): Լենինյան բնութագիրը վառ կերպով պատկերում է էթնիկական փոքրամասնությունների սոցիալ-քաղաքական և տնտեսական իրավիճակը ամերիկյան իրականության մեջ: Ազգային հարցի լուծման գործում հետևողական դեմոկրատիզմի բացակայությունն ամերիկյան հասարակության մեջ էթնիկական փոքրամասնությունների ասիմիլյացիայի հիմնական արգելքն է: Բուրժուական նացիոնալիզմի գաղափարները, հեշտությամբ թափանցելով էթնիկական փոքրամասնությունների աշխատավորների շրջանները, ներազդում են բանվորների դասակարգային ինքնագիտակցության վրա, խթանում ազգայնական տրամադրությունների ակտիվացմանը: Դրա հետևանքով մինչև օրս շարունակվում է ազգային ինքնամեկուսացման միտումը:

Էթնիկական հանրության հիմքը գլխավորապես համայնքային բնակավայրն է: Այդուհանդերձ, ԱՄՆ-ի սոցիալական կյանքի այնպիսի էական գործոն, ինչպիսին բնակչության ներքին միգրացիան է, կարծես պետք է կարողանար քայքայել այդ հանրությունը: Վերջինիս փոփոխումը կարող էր փոփոխություններ առաջացնել նաև ներգաղթածների խմբային կյանքի բոլոր ձևերում, վերացնելով խմբերի էթնիկական առանձնահատկությունները: Սակայն բնակավայրի էթնիկական հանրությունը ներկայումս շարունակում է պահպանվել ինչպես խոշոր քաղաքներում, այնպես էլ արվարձաններում: Էթնիկական հանրություններն իրենց բոլոր ինստիտուտներով պահպանվում են կենտրոնական քաղաքներում՝ Նյու Յորքում, Չիկագոյում, Դետրոյտում, Կլիվլենդում, Նյու Հեմփշիրում, Սան Ֆրանցիսկոյում, Լոս Անջելոսում, Նյու Ջերսիում և այլուր: «Չիկագոն,— գրում է ամերիկյան հետազոտող Բ. Ռոզենբերգը,— այսօր, ավելի քան երբևիցե, հանդիսանում է էթնիկական թաղամասերի կենտրոնացում»: Ամերիկյան հեղինակներ Ի. Մ. Լևայնը և Ջ. Հերմանը նշում են, որ «նույնիսկ ապաուրբանիզացումը չնվազեցրեց էթնիկական հանրությունների թիվը»: Շատ դեպքերում այն թաղամասերը, որոնք շրջանների տպավորություն են թողնում, որտեղ մարդիկ միավորված են ցածր տնտեսական ստատուսի հատկանիշով, իրականում մեծաթիվ էթնիկական հանրությունների միավորում են:

Նյու Յորքի իտալական և հունական համայնքներում անցկացված հետազոտության հիման վրա ամերիկյան գիտնական Մ. Պարենտին հանգում է այն հետևության, որ քաղաքային էթնիկական համայնքները պահպանում են իրենց անջատվածությունը: Նման հետևություն է անում ամերիկյան մի այլ սոցիոլոգ՝ Ն. Կանտովիչը: Եթե նոր բնակավայրերում ստեղծվում են էթնիկական հանրությունների նոր պայմաններին հարմարված տարրեր, ապա կենտրոնական քաղաքներում ներգաղթածների ավանդական ինստիտուտները էթնիկական խմբերի կյանքում շարունակում են կրել վիթխարի սոցիալական ծանրաբեռնվածություն:

Այնքանով, որ արվարձաններում չեն անհետանում կապիտալիզմի հիմնական արատները և սոցիալ-տնտեսական բևեռացման հիման

վրա կատարվում է հասարակության մշտական ապահնտեգրացում, ուստի այստեղ ևս պահպանվում է ամբողջ քաղաքային բնակչության անջատվածությունը: Հետևաբար, միանգամայն բնական է էթնիկական խմբերի՝ որպես սոցիալապես առանձնացված միավորների պահպանումը: Ավելին, ինչպես նշում է Ե. Դ. Միխայլովը, «...դասակարգային հասարակության մեջ, տարերային ուրբանիզացման և ապաուրբանիզացման պայմաններում... քաղաքային նախկին ձևի հաղթահարումն առնչվում է սոցիալական հակասությունների հետագա սրման հետ, զանազան սոցիալական խմբերի է՛լ ավելի օտարացման հետ...» (Е. Д. Михайлов. США: проблема больших городов. М., 1973, стр. 76):

Արվարձանների կառավարման վարչական ինքնուրույնությունը, դրանցում առկա բնակարանային սեգրեգացիան ստեղծում են արվարձանների ինքնամեկուսացումը պահպանելու հնարավորություն, որը այդ բնակավայրերում հանգեցնում է ո՛չ միայն դասակարգային, այլև էթնիկական միասեռության: Էթնիկական անջատվածությանը նպաստում են նաև այնպիսի գործոններ, ինչպիսիք են համեմատաբար կայուն ներամուսնությունը և նոր ներգաղթածներով էթնիկական համայնքների համալրումը: Չնայած խառն ամուսնությունների աճող քանակին (1910-ից մինչև 1970 թ. այնպիսի ամուսնություններից ծնված ժառանգների թիվը, որոնցում ամուսիններից մեկը ներգաղթած է եղել, 6 միլիոնից հասել է 10 միլիոն մարդու, էթնիկական փոքրամասնությունների ֆիզիկական խառնակումը ետ է մնում ասիմիլյացիայի մյուս բոլոր տեսակներից:

Մյուս կողմից, էթնիկական փոքրամասնությունները մշտապես համալրվել են նոր ներգաղթածներով: Օրինակ, 1972 թվականին ԱՄՆ-ի երեք առավել բազմաքանակ էթնիկական խմբերի, այն է՝ իտալացիների, լեհերի և ռուսների մոտ, առաջին և երկրորդ սերունդները համապատասխանաբար կազմում էին տվյալ էթնիկական խմբի ընդհանուր թվի 48,4, 46,5 և 88,8 տոկոսը, այն դեպքում, երբ անգլիացիների, իռլանդացիների, ֆրանսիացիների և գերմանացիների մոտ նրանք համապատասխանաբար կազմում էին ընդամենը 8,3, 8,8, 6,3 և 14,2 տոկոսը: Անտարակույս, նոր ներգաղթածների այդչափ մեծ տեսակարար կշիռը, ազդելով փոքրամասնության էթնիկական վարքագծի վրա, նույնպես նպաստում է ազգային գիտակցության ակտիվացմանը:

Այսպիսով, պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում ԱՄՆ-ում խորացել են էթնիկական փոքրամասնությունների օրինաչափ ասիմիլյացիան խոչընդոտող հիմնական պատճառները: Չնայած Արևելյան և Հարավային Եվրոպայի երկրներից ներգաղթածների հետնորդների սոցիալ-տնտեսական և քաղաքական ստատուսի որոշակի բարվոքմանը, նրանք առաջվա պես շարունակում են ենթարկվել սոցիալական ու ազգային խտրականության, որը դրսևորվում է ԱՄՆ-ի սոցիալ-տնտեսական և քաղաքական կյանքի բոլոր մարզերում: Ասիմիլյացիոն պրոցեսների տեմպերի դանդաղումը և անավարտությունը դրա ուղղակի հետևանքն է: Այս ամենն իր հերթին ամերիկյան էթնիկական խմբերին հանգեցնում է որոշակի ինքնամեկուսացման ու էթնիկական անջատվածության և նպաստավոր հող ստեղծում էթնիկական փոքրամասնությունների շրջանում ազգայնական միտումների զարգացման համար:

Ազգային հարցի լուծման բոլորովին այլ օրինակ է տալիս ՍՍՀՄ-ը: Մեր երկրում ապրում ու բարգավաճում է ավելի քան հարյուր ազգերի ու ազգությունների միաձույլ ընտանիքը՝ պատմական նոր հանրություն սովետական ժողովուրդը: Ինչպես իրավացիորեն նշվում է ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, պատմությունը չգիտե մի այլ պետություն, որը խիստ կարճ ժամկետներում այնքան շատ բան արած լինի ազգերի և ազգությունների համակողմանի զարգացման համար, որպիսին է ՍՍՀՄ-ը՝ մեր երկրի ժողովուրդների սոցիալիստական հայրենիքը:

Այս իրողությունը ոգեշնչող օրինակ է ծառայում իրենց սոցիալական ու ազգային ազատագրման համար պայքարող բոլոր ժողովուրդներին, ազգերի իսկական հավասարության ձգտող բոլոր ուժերին:

---



# ԲՌՆԿՎՈՂ ԱՍՏՂԵՐԸ ԵՎ ԱՍՏՂԱՖԻԶԻԿԱՆ

**Լ. Վ. ՄԻՐԶՈՅԱՆ**
Աստղագիտության միջազգային ակադեմիայի թղթակից-անդամ

*ՇՈՒՐՋ ՔԱՌՈՐԴ ԴԱՐ է մեզ բաժանում այն ժամանակից, երբ բռնկվող աստղերը նոր էին միայն հայտնաբերվել Արեգակի մերձակայքում, և նրանց վերաբերյալ պատկերացումները շատ մշուշապատ էին: Այն տարիներին դժվար էր ենթադրել, որ կարծես թե ոչ մի բանով աչքի չընկնող այդ աստղերը շուտով գրավելու են գիտնականների ուշադրությունը, և նրանց ուսումնասիրությունը դառնալու է ժամանակակից աստղաֆիզիկայի ամենահրատապ խնդիրներից մեկը:*

*Այդ անսպասելի շրջադարձը պայմանավորված էր այն (ինչպես պարզվեց հետագայում), իրոք, նշանակալից դերով, որ բռնկվող աստղերն ունեն աստղերի ֆիզիկայի և էվոլյուցիայի կարևորագույն հարցերի լուծման համար:*

*Ուրախությամբ պետք է նշել, որ բռնկվող աստղերի բազմակողմանի ուսումնասիրության, նրանց ֆիզիկայի և էվոլյուցիայի կարևոր հարցերի բացահայտման մեջ մեծ է Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի Լենինի շքանշանակիր Բյուրականի աստղադիտարանի ավանդը:*

*Ներկա հոդվածը նվիրված է բռնկվող աստղերի և, ավելի ընդհանուր, աստղերի ֆիզիկայի և էվոլյուցիայի վերաբերյալ ժամանակակից պատկերացումների շարադրանքին, Բյուրականում ստացված արդյունքների շրջանակներում:*

*Բռնկվող աստղերի ճառագայթման հզորությունը, որով պայմանավորված է նրանց դիտվող պայծառությունը, մեծ մասամբ, գրեթե հաստատուն է: Միայն ժամանակ առ ժամանակ աստղի պայծառությունը շատ արագ, մեծ մասամբ, մեկ րոպեից էլ կարճ ժամանակամիջոցում, մեկեն ավելանում է (մի քանի, երբեմն մի քանի տասնյակ, և նույնիսկ ավելի անգամ)՝ աստղը «բռնկվում» է: Բռնկումից հետո աստղը ավելի դանդաղ (սովորաբար րոպեների, շատ ավելի հազվադեպ ժամերի ընթացքում) վերադառնում է իր նախկին պայծառությանը:*

*Որևէ բռնկվող աստղի մի բռնկումից մինչև հաջորդ բռնկումը ընկած ժամանակամիջոցը խիստ փոփոխական է: Աստղը կարծես թե չի հիշում իր նախորդ բռնկման պահը՝ նրա բռնկումները տեղի են ունենում պատահական կերպով:*

*Բռնկվող աստղի բռնկման ժամանակ նրա ճառագայթման բաղադրությունը նույնպես խիստ փոխվում է:*

*1953 թ. ակադեմիկոս Վիկտոր Համբարձումյանը ցույց տվեց, որ բռնկվող աստղերի բռնկումների ժամանակ ծնված ճառագայթումը շատ նման է պայծառության անկանոն փոփոխություններ ցույց տվող և սպեկտրներում պայծառ գծեր ունեցող, այսպես կոչված, T Ցուլի տիպի աստղերի ճառագայթմանը: Այդ աստղերի ֆիզիկական նմանությունը բացահայտ կերպով դրսևորվում է միայն բռնկվող աստղերի բռնկումների ժամանակ: Բռնկման պահին բռնկվող աստղի սպեկտրն ուժեղ ձևափոխվելով նմանվում է T Ցուլի տիպի աստղերի համար բնորոշ սպեկտրին (պայծառ գծերի առկայություն և անսովոր ուժի կարճալի-*

քային ճառագայթում)։ Այն տպավորությունն է ստացվում, որ բռնկվող աստղերը հանգիստ վիճակում նման են սովորական աստղերին, իսկ բռնկումների ժամանակ՝ T Ցուլի տիպի աստղերին։

Մինչ այդ (1947 թ.) Բյուրականի աստղադիտարանում հայտնագործվել էին աստղասփյուռները՝ աստղառաջացման օջախները մեր աստղային համակարգում (Գալակտիկայում)։ Աստղասփյուռների կյանքի տևողությունը (մի քանի տասնյակ միլիոն տարի) մոտ հազար անգամ կարճ է Արեգակի տիպի աստղերի տարիքից (մի քանի միլիարդ տարի)։ Աստղասփյուռների երիտասարդության փաստից հետևում է, որ նրանց կազմում դիտվող աստղերը նույնպես շատ երիտասարդ են։ Աստղասփյուռների բնորոշ աստղային բնակչությունը կազմված է ջերմհսկա ու գերհսկա աստղերից և T Ցուլի տիպի փոփոխական աստղերից։

Հետևաբար, այդ տարիներին արդեն հայտնի էր, որ T Ցուլի տիպի աստղերը շատ երիտասարդ, նոր ծնված աստղեր են և ներկայացնում են աստղերի զարգացման, նրանց ձևավորմանը հաջորդող, ամենավաղ փուլը։

Մյուս կողմից, հայտնի էր, որ սովորական աստղերը, որոնք գործնականում ճառագայթում են հաստատուն հզորությամբ, ծեր աստղեր են։

Այդ փաստերը հիմք էին տալիս ենթադրելու, որ բռնկվող աստղերը, որոնք բռնկումների կարճատև պահերին դրսևորում են երիտասարդ T Ցուլի տիպի աստղերի հատկություններ, իրենք նույնպես համեմատաբար երիտասարդ աստղեր են։

Այդ ենթադրության հաստատումը վճռական նշանակություն ուներ բռնկվող աստղերի էվոլյուցիոն դերի բացահայտման և, ընդհանրապես, աստղերի էվոլյուցիայի վաղ փուլերի ուսումնասիրության համար։

Այդ իսկ առնչությամբ էլ սկսվեցին բռնկվող աստղերի որոնումներ երիտասարդ աստղախմբերում։ Դրանք շուտով պսակվեցին հաջողությամբ։ Մեքսիկացի աստղագետ Գիլերմո Հարոն Տոնանցինտլայի (Մեքսիկա) աստղադիտարանում, իր աշխատակիցների հետ համատեղ, մի քանի բռնկվող աստղ հայտնաբերեց Օրիոնի աստղասփյուռում։ Քիչ ժամանակ անց բռնկվող աստղեր հայտնաբերվեցին նաև Միեղչյուրի աստղասփյուռում։ Այդ կարևոր դիտումները բռնկվող աստղերի ու T Ցուլի տիպի աստղերի ազգակցական կապի, ինչպես նաև բռնկվող աստղերի երիտասարդության վճռական ապացույց էին։

Երիտասարդ աստղախմբերում բռնկվող աստղերի այդ դիտումների արդյունքները հաստատող տվյալներ շուտով ստացվեցին իտալացի աստղագետ Լիոնիդա Ռոզինոյի ղեկավարությամբ կատարված դիտումների շնորհիվ, Ազիագոյի աստղադիտարանում (Իտալիա)։

Բռնկվող աստղերի էվոլյուցիոն ուսումնասիրության ուղղությամբ հաջորդ կարևոր քայլը ամերիկացի գիտնականներ Հարոլդ Ջոնսոնի և Ռիչարդ Միտչելի պատահական, սակայն շատ նշանակալից հայտնագործությունն էր։ 1957 թ. Բազումք աստղակույտի լուսաչափական դիտումների ժամանակ նրանք հայտնաբերեցին առաջին բռնկվող աստղն այդ համակարգում, որը դիտման պահին անսպասելիորեն բռնկվել էր։ Այդ հայտնագործությունը վկայում էր այն մասին, որ բռնկվող աստղերը հանդիպում են ո՛չ միայն շատ երիտասարդ աստղախմբերում՝ աստղասփյուռներում, այլ նաև ավելի ծեր, բայց համեմատաբար երիտասարդ աստղախմբերում, ինչպիսին Բազումք աստղակույտն է (տարիքը մոտ 70 միլիոն տարի)։

Այդ կապակցությամբ բռնկվող աստղերի հայտնաբերման նպատակով սկսված դիտումներն ընդգրկեցին նաև մի շարք համեմատաբար երիտասարդ աստղակույտերի, մասնավորապես Բազումք աստղակույտի տիրույթները, որոնց շնորհիվ տարբեր տարիքի, սակայն Արեգակի ու աստղերի մեծամասնության համեմատ երիտասարդ մի շարք աստղակույտերում նույնպես հայտնաբերվեցին բռնկվող աստղեր։

Այսպիսով, դիտումների հիման վրա հաստատվեց, որ բռնկվող աստղերը հանդիպում են ո՛չ միայն ամենաերիտասարդ աստղախմբերում՝ աստղասփյուռներում, T Ցուլի տիպի աստղերի հետ միասին, այլ նաև ավելի ծեր աստղախմբերում, որտեղ T Ցուլի տիպի աստղեր արդեն չկան, որովհետև այնտեղ



աստղերի զարգացման այդ փուլն ավարտվել է։ Այդ դիտողական փաստից անմիջականորեն հետևում է, որ բռնկվող աստղերի կյանքի տևողությունը (բռնկվող աստղ լինելու ժամանակամիջոցը) գերազանցում է T Ցուլի տիպի աստղերի կյանքի տևողությունը։

1964 թ. Գիլերմո Հարոն, հիմնվելով տարբեր տարիքի աստղախմբերում բռնկվող աստղերի վերաբերյալ դիտողական աղքատիկ տվյալների վրա, այն ենթադրությունն արեց, որ աստղերի էվոլյուցիայի ամենավաղ՝ T Ցուլի տիպի աստղերին համապատասխանող փուլից հետո, երբ աստղի պայծառությունը փոփոխվում է անընդհատ և անկանոն ձևով, սկսվում է բռնկվող աստղերի փուլը, մի փուլ, երբ աստղի կարևորագույն առանձնահատկությունը նրա ժամանակ առ ժամանակ բռնկումներ ապրելու ունակությունն է։

Սկզբունքային նշանակություն ունեցող այդ ենթադրությունը շուտով վերաճեց օրինաչափության Բյուրականի աստղադիտարանի այդ հարցին նվիրված հետազոտություններից հետո։

1968 թ. Վիկտոր Համբարձումյանը մշակեց որևէ աստղախմբում բռնկվող աստղերի ընդհանուր թվի գնահատության մի վիճակագրական մեթոդ՝ այդ աստղախմբում արդեն հայտնաբերված մեկական և երկուական բռնկում ունեցած աստղերի թվերի միջոցով։ Այդ մեթոդի կիրառությունը Բազումք աստղախմբի նկատմամբ, որտեղ այդ ժամանակ հայտնաբերված էր ընդամենը 60 բռնկվող աստղ, վկայում էր, որ այդ աստղախմբում պետք է լինի առնվազն մի քանի հարյուր բռնկվող աստղ։ Այդ թիվը համեմատելի էր աստղակույտի անդամ-աստղերի ընդհանուր թվի հետ։ Քանի որ բարձր լուսատվության ոչ մի աստղ չկար հայտնաբերված բռնկվողների մեջ, այստեղից եզրակացվեց, որ Բազումք աստղակույտի ցածր լուսատվություն ունեցող գրեթե բոլոր աստղերը, իրականում, բռնկվող աստղեր են։

Այս եզրակացությունը այնքան կարևոր էր աստղերի էվոլյուցիայի պրոբլեմի համար, որ անմիջապես խթանեց աստղասփյուռների և համեմատաբար երիտասարդ աստղակույտերի տիրույթների լայնածավալ լուսանկարչական դիտումները՝ բռնկվող աստղերի որոնումների նպատակով։

Երիտասարդ աստղախմբերում բռնկվող աստղերի դիտումների կազմակերպման նախաձեռնությունը պատկանում էր Բյուրականի աստղադիտարանին։ Միջազգային այդ կամպանիային սկզբում ակտիվորեն մասնակցում էին միայն Տոնանցինտլայի և Ազիագոյի աստղադիտարանները։ Հետագայում, սակայն, այդ աշխատանքների արդյունքներն արժանացան մի շարք այլ աստղադիտարանների ուշադրությանը, և նրանք նույնպես ներգրավվեցին այդ գործում։ Նրանցից արժե նշել Բուդապեշտի (Հունգարիա), Բուլղարիայի ազգային, ինչպես նաև Վրացական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Աբասթումանի աստղադիտարանները։ Ընդ որում, Հունգարիայում և Բուլղարիայում հիշյալ աշխատանքները ղեկավարում են Բյուրականում իրենց ասպիրանտական ուսումնառությունն անցած աստղագետներ Իշտվան Յանկովիչը և Միլչո Ցվետկովը, իսկ Աբասթումանում այդ դիտումների ամենագործուն մասնակիցը Բյուրականում իր գիտական մկրտությունն ստացած Ռևազ Նացվլիշվիլին է։

Ուշագրավ է, որ Հունգարիայի և Բուլղարիայի գիտությունների ակադեմիաների հետ Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ունեցած գիտական համագործակցության երկկողմանի պայմանագրերում իրենց արտացոլումն են գտել նաև բռնկվող աստղերի ուսումնասիրությանը նվիրված աշխատանքները։ Բացի այդ, բռնկվող աստղերի ուսումնասիրությունը մտնում է «Աստղերի ֆիզիկան և էվոլյուցիան» պրոբլեմի գծով սոցիալիստական երկրների գիտությունների ակադեմիաների բազմակողմանի գիտական համագործակցության պայմանագրի մեջ, համագործակցություն, որի ակտիվ մասնակիցներից է Բյուրականի աստղադիտարանը։

Տարբեր երկրներում կատարված դիտումների շնորհիվ Օրիոնի, Բազումքի, Կարապի, Մսուրի և մյուս երիտասարդ աստղախմբերում մինչև օրս հայտնաբերվել է ավելի քան հազար բռնկվող աստղ, ինչպես նաև արդեն հայտնի բռնկվող աստղերի շուրջ նույնքան կրկնված բռնկումներ։

Բռնկումների հայտնաբերման նպատակով ամենից հաճախ դիտվել է Բաղումք աստղակույտը, որտեղ շուրջ 3000 ժամվա դիտումների ընթացքում արդեն հայտնաբերվել է ավելի քան 500 բռնկվող աստղ։

Դիտողական արդյունքների հիման վրա վերոհիշյալ աստղախմբերում բռնկվող աստղերի ընդհանուր թվի ստացված գնահատականները ապացուցում են, որ բռնկվող աստղերի թիվը շատ մեծ է նրանց մեջ։

Քանի որ որևէ աստղային համակարգում դիտող բոլոր աստղերն ունեն ընդհանուր ծագում, ապա երիտասարդ աստղային համակարգերում բռնկվող աստղերի բազմաքանակության փաստից հետևում է, որ բռնկվող աստղերի փուլը էվոլյուցիոն փուլ է ցածր լուսատվության (թզուկ) աստղերի կյանքում, որով իրենց զարգացման ընթացքում անցնում են բոլոր թզուկ աստղերը։

Այսպիսով, դիտումները փայլուն կերպով հաստատում են, որ բռնկվող աստղերի բազմաքանակությունը երիտասարդ աստղախմբերում հետևանք է այն բանի, որ այդ աստղերն իրենցից ներկայացնում են թզուկ աստղերի էվոլյուցիայի վաղ փուլերից մեկը։

Վերևը քննարկված դիտողական տվյալներն անվերապահորեն վկայում են նաև, որ աստղերի էվոլյուցիայի բռնկվող աստղերի փուլը հաջորդում է T Ցուլի տիպի աստղերի փուլին։ Ըստ որում, թե T Ցուլի տիպի և թե բռնկվող աստղերի ֆիզիկական անկայունությունը, որը դրսևորվում է նրանց ճառագայթման հզորության և բաղադրության անկանոն փոփոխությունների ձևով, աստղի զարգացման այդ վաղ փուլերի բնորոշ հատկանիշն է։

Դիտումները ցույց են տվել, որ թզուկ աստղերի էվոլյուցիայի T Ցուլի տիպի ու բռնկվող աստղերի փուլերը փոխադարձաբար իրար ծածկում են։ Էվոլյուցիայի T Ցուլի տիպի փուլի վերջին շրջանում աստղն արդեն հանդես է բերում բռնկվող աստղին բնորոշ բռնկման ունակություն։ Այդ շրջանում T Ցուլի տիպի աստղը միաժամանակ բռնկվող աստղ է, այն ժամանակ առ ժամանակ ունենում է բռնկումներ։

Բյուրականի աստղադիտարանում գնահատվել է T Ցուլի տիպի և բռնկվող աստղերի հատկությունների դրսևորման այդ ընդհանուր ժամանակամիջոցի տևողությունը։ Այն կազմում է T Ցուլի տիպի փուլի տևողության շուրջ մեկ քառորդը։

Միաժամանակ T Ցուլի տիպի և բռնկվող աստղերի հատկություններ ունեցող աստղերի հայտնաբերումը նրանց ազգակցական կապի և թզուկ աստղերի էվոլյուցիոն վերոհիշյալ ուղու ծանրակշիռ վկայություն է։

Այսպիսով, բռնկվող աստղերի էվոլյուցիոն դերի բացահայտումը հանգեցրեց թզուկ աստղերի էվոլյուցիոն ուղու որոշմանը առաջին անգամ անմիջականորեն, դիտողական տվյալների հիման վրա։

Հետագա շարադրանքը հասկանալու համար անհրաժեշտ է մի քանի խոսք ասել աստղային բռնկումների դիտումների առանձնահատկությունների մասին։

Քանի որ ամեն մի բռնկվող աստղի բռնկումները տեղի են ունենում պատահական ձևով, ապա հնարավոր չէ նախօրոք պլանավորել նրանց դիտումները։

Մոտակա, համեմատաբար պայծառ, բռնկվող աստղերի դեպքում այդ դժվարությունը հաղթահարելու նպատակով շատ նուրբ լուսաէլեկտրական մեթոդով անընդհատ գրանցվում է ուսումնասիրվող բռնկվող աստղի պայծառությունը և ուսումնասիրվում նրա բռնկումների ժամանակ տեղի ունեցող փոփոխությունները։ Այդ եղանակով կարելի է գրանցել պայծառ բռնկվող աստղերի նույնիսկ շատ թույլ բռնկումները։

Աստղախմբերում գտնվող բռնկվող աստղերի նկատմամբ հիշյալ մեթոդը չի կարող կիրառվել. նրանց պայծառությունը բավարար չէ անընդհատ գրանցման համար։ Այս դեպքում կիրառվում է դիտումների լուսանկարչական մեթոդը, որի ժամանակ դիտվող տիրույթի լուսանկարի վրա յուրաքանչյուր աստղի համար ստացվում է պատկերների մի շղթա։ Եթե այդ շղթայում բոլոր պատկերները նման են, ուրեմն համապատասխան աստղը դիտման ընթացքում ունեցել է հաստատուն պայծառություն։ Իսկ եթե դիտման ընթացքում աստղի պայծառությունը փոխվել է, ապա շղթայում պատկերներն իրարից պետք է տար-



բերվեն։ Մասնավորապես, բռնկվող աստղերի համար մինչև բռնկում աստղի բոլոր պատկերներն իրար նման են, իսկ բռնկման ժամանակ պատկերների չափերը սկզբում արագ աճում են, իսկ առավելագույն պայծառությանը հասնելուց հետո, ավելի դանդաղ, նվազում։ Պետք է ավելացնել, որ լուսանկարչական մեթոդով գրանցվում են աստղի համեմատաբար հզոր բռնկումները միայն։

Երկնքի մեծ դաշտ ընդգրկող դիտակներով երիտասարդ աստղախմբերի լուսանկարչական դիտումների ժամանակ ստացվող գիտական ինֆորմացիայի քանակը յուրաքանչյուր առանձին բռնկվող աստղի բռնկումների վերաբերյալ չնչին է։ Սակայն այն բավականաչափ մեծ է դիտվող տիրույթում գտնվող բոլոր բռնկվող աստղերի բռնկումների վերաբերյալ։

Բանն այն է, որ լուսանկարչական դիտումների ժամանակ մեկ առանձին բռնկվող աստղի բռնկում դիտելու հավանականությունը շատ փոքր է՝ մեկ բռնկում, միջինում, շուրջ հազար ժամում։ Սակայն շնորհիվ այն բանի, որ երիտասարդ աստղախմբերում, սովորաբար, կան մի քանի հարյուր և ավելի բռնկվող աստղեր, ապա դիտման ժամանակ որևէ բռնկվող աստղի պատահական բռնկում դիտելու հավանականությունը, իրականում, այնքան անգամ ավելի մեծ է, որքան բռնկվող աստղ կա այդ տիրույթում։ Բաղումք աստղակույտի տիրույթի դեպքում այն կազմում է մեկ բռնկում, միջինում, մի քանի ժամում։

Հենց լուսանկարչական դիտումների շնորհիվ են ստացվել երիտասարդ աստղախմբերում բռնկվող աստղերի վերաբերյալ եղած բոլոր տվյալները։

Մասնավորապես, լուսանկարչական դիտումների շնորհիվ է հայտնաբերվել երիտասարդ աստղախմբերի բռնկվող աստղերի ճնշող մեծամասնությունը։

Լուսանկարչական միաժամանակյա դիտումների իրականացումը՝ մի քանի դիտակների օգնությամբ, որոնցից յուրաքանչյուրով դիտվում է սպեկտրի մեկ տիրույթ, օգնել է որոշելու բռնկումների ժամանակ ծնվող ճառագայթման սպեկտրալ բաշխումը։ Այդպիսի դիտումներ իրականացվել են Բյուրականի աստղադիտարանում (երկու դիտակներով) և Բյուրականի ու Աբասթումանի աստղադիտարաններում համատեղ (երեք դիտակներով)։

Երիտասարդ աստղախմբերում բռնկումների լուսանկարչական դիտումների հիման վրա վիճակագրական եղանակով Բյուրականում ուսումնասիրվել են բռնկվող աստղերի բռնկումների միջին հաճախականությունների բաշխման օրենքները՝ Բաղումք աստղակույտում և Օրիոնի աստղասփյուռում։ Ստացված բաշխումները վկայում են այն մասին, որ այդ երկու աստղախմբերում էլ բռնկվող աստղերն ունեն բռնկման շատ փոքր միջին հաճախականություններ (մեկ բռնկում շուրջ հինգ հազար ժամում)։ Ընդ որում Բաղումք աստղակույտում ավելի շատ են համեմատաբար հաճախ բռնկվող, իսկ Օրիոնի աստղասփյուռում՝ ավելի հազվադեպ բռնկվող աստղերը։

Բռնկումների ժամանակ ծնվող անսովոր բռնկումային ճառագայթման բնույթի բացահայտման տեսակետից կարևոր էր այսպես կոչված «արագ» և «դանդաղ» բռնկումների հայտնաբերումը, որոնք օժտված են միանգամայն տարբեր հատկություններով։ Գիլերմո Հարոն փորձում էր բացատրել այդ տարբերությունները այն բռնկվող աստղերի վիճակների տարբերություններով, որոնց մոտ դիտվել էին համապատասխան բռնկումները։

Սակայն շուտով պարզվեց, որ միևնույն բռնկվող աստղի մոտ կարող են լինել ինչպես «արագ», այնպես էլ «դանդաղ» բռնկումներ։ Հետևաբար, բռնկման «արագ» կամ «դանդաղ» բնույթը պայմանավորված է հենց իր՝ բռնկվող աստղի այն շերտերի հատկությունների տարբերություններով, որտեղ տեղի է ունենում բռնկումը։

Տարբեր առանձնահատկություններ ունեցող բռնկումների գոյությունը տեսականորեն ավելի վաղ կանխատեսվել էր Բյուրականում, նրանց ֆիզիկական բնույթի մեկնաբանության ժամանակ։ Այդ մեկնաբանության համաձայն աստղային բռնկումները, ինչպես նաև T Ցուլի տիպի աստղերի պայծառության փոփոխությունները հետևանք են այն բանի, որ երիտասարդ աստղերի արտաքին շերտեր են դուրս գալիս նրանց ներքին շերտերում դեռևս պահպանված

գերխիտ նախաստղային նյութի[1] առանձին թանձրուկներ, որոնք պարունակում են ներաստղային էներգիայի մեծ պաշարներ։ Այդ էներգիան աստղի արտաքին շերտերում կարող է փոխարկվել, մասնավորապես, բռնկման էներգիայի։ Ըստ որում, բռնկման ժամանակ առաջացող ճառագայթման դիտվող հատկությունները կախված կլինեն այն շերտերի խորությունից, որտեղ տեղի է ունենում բռնկման էներգիայի անջատումը։

Այսպես, օրինակ, աստղի մթնոլորտում և դրանից վեր տեղի ունեցող բռնկումները կունենան պայթման բնույթ և դրանց հետևանքով աստղի պայծառության աճը մինչև նրա մաքսիմում կընթանա շատ արագ։ Ընդհակառակը, որքան խորը լինեն աստղի այն շերտերը, որտեղ տեղի է ունենում բռնկումը, այնքան ավելի երկար կտևի բռնկման հետևանքով աստղի պայծառության մեծացման ժամանակամիջոցը։ Բռնկում բոլորովին չի դիտվի, եթե այդ շերտերը բավականաչափ խորն են։ Այդ դեպքում ազատված էներգիան կառաքվի լրացուցիչ ջերմային ճառագայթման ձևով։

Մյուս կողմից, եթե բռնկումը տեղի է ունենում աստղի մթնոլորտում կամ նրանից ավելի վեր, ապա բռնկման ժամանակ առաջացող ճառագայթումը պետք է ունենա իր գրեթե անաղարտ նախնական գույնը։ Իսկ եթե բռնկումը տեղի է ունենում աստղի մթնոլորտից ցած, նրա արտաքին շերտերում, ապա այդ ճառագայթման գույնը, ճառագայթման ճանապարհին եղած նյութի հետ նրա փոխազդեցության հետևանքով, այնքան ավելի «կարմրած» կերևա, որքան ավելի խորն են համապատասխան շերտերը։

Վերջապես, եթե ենթադրենք, որ ներաստղային գերխիտ նյութի թանձրուկների մեջ պարունակված էներգիան կարող է հավասար հավանականությամբ ազատվել աստղի տարբեր խորության շերտերում կամ մթնոլորտից վեր, ապա «արագ» բռնկումների դիտման հավանականությունը պետք է շուրջ 50—100 անգամ ավելի մեծ լինի, քան «դանդաղ» բռնկումներինը։ Այդպիսին է աստղի այն տիրույթների հաստությունների հարաբերությունը, որտեղ կարող են տեղի ունենալ, համապատասխանաբար, «արագ» և «դանդաղ» բռնկումները։ Հետևաբար, հայտնաբերվող բռնկումների մեջ «արագ» բռնկումների թիվը պետք է նույնքան անգամ ավելի մեծ լինի «դանդաղ» բռնկումների թվից։

Հենց այդպիսի տարբերություններ են դիտվում «արագ» և «դանդաղ» բռնկումների միջև։

«Արագ» բռնկումների ժամանակ աստղի պայծառության մեծացման ժամանակամիջոցը շատ կարճ է, իսկ «դանդաղ» բռնկումների դեպքում շատ ավելի երկար։ Լուսանկարչական դիտումների ժամանակ «արագ» բռնկումներին համապատասխանող պատկերների շղթայում աստղի սովորական պայծառության պատկերներին անմիջապես հետևում է պայծառության մաքսիմումը պարունակող պատկերը։ Իսկ «դանդաղ» բռնկումների ժամանակ պատկերների շղթայում մինչև պայծառության մաքսիմումը պարունակող պատկերը դիտվում են մեկից ավելի պատկերներ։ Լուսանկարչական դիտումների ժամանակ աստղի յուրաքանչյուր պատկեր ստացվում է 5—15 րոպեում։ Ուստի «դանդաղ» բռնկումների դեպքում աստղի պայծառության ավելացումը մինչև մաքսիմում տևում է 10—30 րոպե, երբեմն ավելի, իսկ «արագ» բռնկումների դեպքում՝ հինգ րոպեից պակաս։

Ավելի աղքատիկ տվյալներ կան «արագ» և «դանդաղ» բռնկումների գույների վերաբերյալ։ Սակայն եղած սակավաթիվ տվյալները որոշակիորեն վկայում են այն մասին, որ «արագ» բռնկումների գույնը կապույտ է, իսկ «դանդաղ» բռնկումներինը՝ ավելի կարմիր։

[1] Աստղասփյուռների հայտնագործումից հետո Բյուրականի աստղադիտարանում մշակվեց աստղերի ու աստղային համակարգերի առաջացման ու էվոլյուցիայի հարցերին դիտողական մոտեցում, որը ելնում է այն նոր պատկերացումից, որ տիեզերական մարմիններն առաջանում են ոչ թե ցիրուցան նյութի խտացման հետևանքով, ինչպես ընդունված էր մինչ այդ, այլ առայժմ անհայտ բնույթի գերխիտ մարմինների՝ նախաաստղերի տրոհման հետևանքով։ Աստղերի ու աստղային համակարգերի ֆիզիկական և դինամիկական անկայունության շատ երևույթներ իրենց բնական բացատրությունն են ստացել այդ նոր պատկերացման շրջանակներում (այդ մասին տես, օրինակ, Проблемы современной космогонии գրքում, «Наука», Москва, 1972)։



Դիտվում է նաև «արագ» և «դանդաղ» բռնկումների միջին հաճախականությունների սպասվող մեծ տարբերությունը։ Օրինակ, մինչև վերջին ժամանակներս Բազումք աստղակույտի բռնկվող աստղերի մոտ դիտվել է ավելի քան 1200 «արագ» բռնկում և ընդամենը միայն 18 «դանդաղ» բռնկում։ Օրիոնի աստղասփյուռի բռնկվող աստղերի համար համապատասխան թվերն են շուրջ 500 և 15։

Այսպիսով, «արագ» և «դանդաղ» բռնկումների դիտվող տարբերությունները (պայծառության ավելացման տևողություն, գույն և միջին հաճախականություն) իրենց բնական բացատրությունն են ստանում բռնկումների բնույթի բյուրականյան մեկնաբանության շրջանակներում և, հետևաբար, կարող են դիտվել որպես լուրջ փաստարկներ նրա օգտին։

Ընդհակառակը, դժվար է բացատրել այդ տարբերությունները ցիրուցան նյութից աստղերի առաջացման վարկածի շրջանակներում։ Համենայն դեպս, դեռ ոչ մի փորձ այդ ուղղությամբ չի արվել։

Արժե նշել նաև հակառակ բնույթի մի այլ դեպք։

Խոսքը վերաբերում է բռնկվող աստղերին ֆիզիկական տեսակետից հարող այն սակավաթիվ աստղերին, որոնք իրենց նախատիպի՝ FU Օրիոնի աստղի անունով ստացել են ֆուորներ անվանումը։

Ֆուորների պայծառությունը սպեկտրի տեսանելի մասում բռնկման ձևով, սակայն շատ ավելի դանդաղ (ամիսների ընթացքում), խիստ հզորանում է, որից հետո երկար ժամանակ այն գրեթե անփոփոխ մնում է ճառագայթման նոր, բարձր մակարդակի վրա։ Օրինակ, FU Օրիոնի աստղի պայծառությունը 1936 թ. մի քանի ամսում հզորացել էր ավելի քան 100 անգամ և մինչև օրս այդ աստղը շուրջ 100 անգամ նախկինից ավելի պայծառ է։

Երկար ժամանակ այդ աստղը միակն էր ֆուորների ընտանիքում։ Ամերիկացի աստղագետ Ջորջ Հերբիգը, ելնելով նոսր նյութից, սեղմման միջոցով, աստղերի ձևավորման վարկածից, մշակել էր FU Օրիոնի աստղի պայծառության զարմանալի մեծացման մի մեկնաբանություն, որի համաձայն վերջինս ձևավորվել է ընդամենը մի քանի տասնամյակ առաջ և ներկայումս գտնվում է արագ սեղմմանը, այսպես կոչված, կոլապսին, հաջորդող փուլում։ FU Օրիոնի աստղի պայծառության անսովոր մեծացումը հենց հետևանք է կոլապսի։ Կոլապսից հետո աստղի սեղմման երևույթը դանդաղել է, և այժմ այն գտնվում է զարգացման T Ցուլի տիպի փուլում։

Այդ մեկնաբանությունն այն ժամանակ թվում էր շատ հաջող, և Հերբիգը ենթադրում էր, որ առաջիկա տասնամյակում FU Օրիոնի տիպի մի նոր աստղի հայտնաբերումը նոսր նյութի խտացման միջոցով աստղերի առաջացման վարկածի փայլուն ապացույց կլինի։ Սակայն FU Օրիոնի տիպի հենց առաջին աստղի հայտնաբերումը ճակատագրական եղավ վերոհիշյալ մեկնաբանության համար։

1971 թ. շվեդացի աստղագետ Գունար Վելինը Կարապի համաստեղության մեջ հայտնաբերեց մի աստղ (V1057 Կարապի), որի պայծառությունը 1970—71 թթ. մի քանի ամսում մեծացել էր ավելի քան 100 անգամ և, այնուհետև փոքր-ինչ նվազելով մնացել ճառագայթման նոր, բարձր մակարդակի վրա։ Բարեբախտաբար, այդ աստղի սպեկտրը հայտնի էր մինչև պայծառության մեծացումը։ Մինչև «բռնկումը» այն եղել էր T Ցուլի տիպի աստղ։ Այդ նշանակում է, որ ֆուորի երևույթը տեղի է ունենում երիտասարդ T Ցուլի տիպի աստղերի մոտ, և T Ցուլի տիպը ոչ թե հաջորդում, այլ նախորդում է ֆուորի փուլին։

Բյուրականի աստղադիտարանում մշակվել է ֆուորի երևույթի բնական մեկնաբանություն, որի համաձայն դրա ֆիզիկական բնույթը չի տարբերվում աստղային բռնկումների բնույթից։ Հիմնական տարբերությունը միայն դրա երկարատևությունն է, որը պայմանավորված է ֆուորի երևույթի ժամանակ աստղից գազային լայնացող թաղանթի արտավիժմամբ։ Այդպիսի թաղանթների գոյությունը ֆուորների շուրջը հաստատվել է նրանց դիտումներով։

T Ցուլի տիպի և բռնկվող աստղերի փոփոխական ճառագայթման արտասովոր բնույթի պատճառով նրա մեկնաբանությունը, աստղերի ճառագայթման

վերաբերյալ ժամանակակից պատկերացումների շրջանակներում, հանդիպում է մի շարք այլ լուրջ դժվարությունների։

Այսպես, օրինակ, պայծառ գծերի առկայությունը T Ցուլի տիպի աստղերի սպեկտրներում վկայում է, որ նրանց շուրջը կան գազային թաղանթներ։ Այդ թաղանթներում ատոմների դիտվող լուսարձակման համար պահանջվում է, որ աստղի լուսոլորտի ջերմաստիճանը 10.000°-ից ավելի բարձր լինի։ Ավելին, պայծառ գծերի մեջ դիտվում են այնպիսիները, որոնց առաջացման համար անհրաժեշտ է մի քանի անգամ ավելի բարձր ջերմաստիճան՝ շուրջ 50.000։ Վերջին տարիներս, արբանյակների միջոցով կատարված դիտումների շնորհիվ T Ցուլի տիպի աստղերի սպեկտրների, Երկրագնդի վրա անտեսանելի, հեռավոր ուլտրամանուշակագույն մասում հայտնաբերվել են գծեր, որոնց առաջացման համար պահանջվում է է՛լ ավելի բարձր ջերմաստիճան՝ շուրջ 100.000։ Վերջապես, նույնպես արբանյակների միջոցով կատարված դիտումների հիման վրա զգալի թվով T Ցուլի տիպի աստղերից հայտնաբերվել է ռենտգենյան ճառագայթում, որի համար պահանջվող ջերմաստիճանը անցնում է մեկ միլիոնից։ Հիշյալ փաստերի մեկնաբանության դժվարությունները պարզ կդառնան, եթե նշենք, որ T Ցուլի տիպի աստղերը սառն աստղեր են, որոնց լուսոլորտի ջերմաստիճանը մոտ 6.000 է։

Լուրջ դժվարություններ է ներկայացնում նաև T Ցուլի տիպի աստղերի սպեկտրների ուլտրամանուշակագույն մասում դիտվող ավելցուկային ուժեղ ճառագայթման, այսպես կոչված անընդհատ առաքման մեկնաբանությունը։

Այս կապակցությամբ բնորոշ է Ջորջ Հերբիգի ակամա խոստովանությունն այն մասին, որ T Ցուլի տիպի աստղերին վերաբերող բոլոր կարևորագույն երևույթներից ոչ մեկը չի կանխագուշակվել նոր նյութի խտացման միջոցով աստղերի առաջացման արդի տեսությամբ և նրանցից ամեն մեկը մի լիակատար առեղծված է նրա համար։

Առանձին բռնկվող աստղերի ֆիզիկական ուսումնասիրության ուղղությամբ Բյուրականի աստղադիտարանը հետաքրքրական հետազոտություններ է կատարել Ուզբեկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի Տաշքենդի աստղագիտական ինստիտուտի հետ համատեղ։

Մասնավորապես այդ ինստիտուտի Մայդանակի բարձրլեռնային աստղադիտական կայանում երեք աստղադիտակների կիրառությամբ իրականացվել են Արեգակի շրջակայքի պայծառ բռնկվող աստղերի բռնկումների միաժամանակյա դիտումներ՝ սպեկտրի երեք տարբեր տիրույթներում, որը հնարավորություն է ընձեռել որոշելու բռնկման ժամանակ ծնված ավելցուկային ճառագայթման սպեկտրալ բաղադրության փոփոխությունները բռնկման տարբեր փուլերում, ամեն երկու վայրկյանը մեկ անգամ։

Բռնկումային ճառագայթման ստացված գույների հիման վրա ապացուցվել է, որ այդ ճառագայթումն ունի ոչ ջերմային բնույթ և չի կարող բացատրվել որպես հայտնի բնույթի մի քանի բաղադրիչ-ճառագայթումների գումար։

Բռնկման կորերի նուրբ կառուցվածքի ուսումնասիրության հիման վրա ցույց է տրվել նաև, որ դիտվող աստղային բռնկումները սովորաբար մի քանի բռնկումների համատեղ դրսևորման արդյունք են, բաղադրիչ-բռնկումներ, որոնք իրարից տարբերվում են իրենց տևողությամբ, հզորությամբ և բռնկման զարգացման ժամանակով։

Բռնկումային ճառագայթման սպեկտրալ բաղադրության մասին հետաքրքիր տվյալներ են ստացվել բռնկվող աստղերի սպեկտրի օպտիկական, ռադիո և ռենտգենյան տիրույթներում կատարված միաժամանակյա դիտումներից։ Պարզվել է, որ բռնկման օպտիկական ճառագայթումը ոչ միշտ է ուղեկցվում բռնկման բնույթ ունեցող ճառագայթմամբ ռադիո և ռենտգենյան տիրույթներում։

Սպեկտրի տարբեր տիրույթներում բռնկումների միաժամանակյա դիտումները վկայում են, որ գոյություն չունի որոշակի կապ բռնկման երևույթի տարբեր դրսևորումների միջև՝ սպեկտրի տարբեր մասերում։ Օրինակ, երբեմն տվյալ աստղի օպտիկական և ռադիոբռնկումները տեղի են ունենում միաժամանակ, երբեմն օպտիկական բռնկումը սկսվում է ռադիոբռնկումից առաջ և, ընդհակառակը, երբեմն ռադիոբռնկումն է նախորդում օպտիկական բռնկմանը։ Վերջապես, որոշ օպտիկական բռնկումների ժամանակ ռադիոբռնկումներ չեն դիտվել։ Բնական է ենթադրել, որ հնարավոր են նաև այնպիսի դեպքեր, երբ բռնկումը տեղի է ունենում սպեկտրի ռադիոտիրույթում միայն։



Սպեկտրի տարբեր տիրույթներում բռնկման երևույթի դրսևորումների հիշյալ տարբերությունները կարելի է դիտել որպես փաստարկ այն պատկերացման օգտին, որ բռնկման ժամանակ աստղի արտաքին շերտերում ազատվող էներգիայի դրսևորումների սպեկտրալ բնույթը որոշվում է այն միջավայրի ֆիզիկական հատկություններով, որտեղ տեղի է ունենում այդ ազատումը։

Բռնկվող և նրանց հարող աստղերի ուսումնասիրությունը հանգեցրել է կարևոր արդյունքների նաև աստղերի էվոլյուցիայի տեսակետից ընդհանրապես։

Օրինակ, պարզվել է, որ գոյություն ունի որոշակի կապ աստղախմբի տարիքի և նրա կազմում գտնվող բռնկվող աստղերի ճառագայթման միջին հզորության՝ լուսատվության միջև։ Որքան ավելի ծեր է աստղախումբը, այնքան ավելի ցածր լուսատվության բռնկվող աստղեր կան նրա կազմում։ Այդ փաստը հաստատում է աստղերի էվոլյուցիայի այն ընդհանուր օրինաչափությունը, որ աստղի զարգացման տեմպերն աճում են նրա լուսատվության հետ՝ մեծ լուսատվության աստղերն ավելի արագ են անցնում զարգացման տվյալ փուլը, քան ավելի փոքր լուսատվության աստղերը։

Մյուս կողմից, դիտումները վկայում են, որ գոյություն ունեն զգալի թվով T Ցուլի տիպի և բռնկվող աստղեր, որոնք աստղերի վիճակը բնորոշող սպեկտր-լուսատվություն դիագրամի վրա գտնվում են նրանց հավասարակշիռ վիճակներին համապատասխանող տիրույթից ներքև։ Մինչդեռ աստղային էվոլյուցիայի արդի տեսությունը, որը ելնում է գազանյութի խտացման միջոցով աստղերի ձևավորման պատկերացումից, ի վիճակի չէ բացատրելու այդ դիտողական փաստը։ Այդ տեսության համաձայն աստղը մինչև հավասարակշիռ վիճակին հասնելը պետք է գտնվի հիշյալ դիագրամի՝ հավասարակշիռ վիճակներին համապատասխանող տիրույթի վերին մասում և սեփական ձգողական դաշտի ազդեցության տակ աստիճանաբար սեղմվելով մոտենա այդ տիրույթին։

Այս օրինակները կրկին հաստատում են այն մեծ նշանակությունը, որ T Ցուլի տիպի և բռնկվող աստղերի ուսումնասիրությունն ունի աստղերի էվոլյուցիայի պրոբլեմի համար։

T Ցուլի տիպի և բռնկվող աստղերի ուսումնասիրությունը շատ կարևոր է նաև աստղերի ֆիզիկայի հարցերի համար։

Ինչպես տեսանք, այդ աստղերի ուսումնասիրության արդյունքները վկայում են, որ երիտասարդ աստղերի արտաքին շերտերում տեղի են ունենում էներգիայի առանձին-առանձին քանակների ազատման պրոցեսներ, որի հետևանք են այդ աստղերի պայծառության դիտվող անկանոն փոփոխությունները, մասնավորապես, բռնկումները։ Հիմքեր կան ենթադրելու, որ այդ պրոցեսները կապված են նյութի մեզ անծանոթ վիճակների հետ։ Ուստի նրանց ուսումնասիրությունը կարող է օգնել բացահայտելու տիեզերական նյութի այդ վիճակների ու նրանց մասնակցությամբ ընթացող երևույթների բնույթը։

Բռնկվող աստղերի և նրանց հարող երիտասարդ օբյեկտների վերաբերյալ վերևում շարադրված պատկերացումների մշակման գործում Բյուրականի աստղադիտարանի վճռական դերը լայն ճանաչում է ստացել գիտական աշխարհում։

1976 թ. Բյուրականի աստղադիտարանի խոշորագույն 2.6-մ աստղադիտակի պաշտոնական բացման օրերին այնտեղ տեղի ունեցավ միջազգային գիտական սիմպոզիում, նվիրված բռնկվող աստղերին։

1980 թ. բռնկվող աստղերին ու նրանց հարող օբյեկտներին նվիրված սիմպոզիում կազմակերպվեց սոցիալիստական երկրների գիտությունների ակադեմիաների գիտական համագործակցության շրջանակներում, նույնպես Բյուրականի աստղադիտարանում։

Բռնկվող աստղերի ուսումնասիրության հիմնական արդյունքների վերա-

*բերյալ ղեկուցումներ դրվեցին միջազգային աստղագիտական միության Բամբերգում (ԳՖՀ) կազմակերպված կոլոքվիումներում 1970 և 1977 թթ., որոնց մեջ այդ արդյունքները շարադրվում էին Բյուրականում մշակված նոր պատկերացումների լույսի ներքո։*

*Երիտասարդ աստղերի վերաբերյալ վերևում շարադրված, ինչպես նաև ավելի մեծ մասշտաբների տիեզերական երևույթների ուսումնասիրության որոշ արդյունքներ հիմք են տալիս կարծելու, որ դիտվող երևույթների մի մասի մեկնաբանության համար պահանջվում է մեր ֆիզիկական պատկերացումների արմատական փոփոխություն։*

*Մասնավորապես, զարգացման նախնական փուլերում գտնվող աստղերում և աստղային համակարգերում բացահայտված որոշ երևույթների բնույթը հասկանալու համար, հավանաբար, անհրաժեշտ է նյութի կառուցվածքի և նրա զարգացման օրինաչափությունների վերաբերյալ առկա պատկերացումների որակական ընդլայնում։*

*Ժամանակակից աստղաֆիզիկայի զարգացման այդ տենդենցը նկատի ուներ ակադեմիկոս Վիկտոր Համբարձումյանը, երբ կանխագուշակում էր, որ աստղագիտական նոր հայտնագործությունների շնորհիվ «մոտենում է մի դարաշրջան, երբ աստղագիտությունը կրկին (ինչպես Նյուտոնի և Գալիլեյի ժամանակաշրջանում— Լ. Մ.) կդառնա նոր գաղափարների և արմատական փոփոխությունների աղբյուր՝ ֆիզիկայում»։*

---



# *ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻՆ ՕՐԻՆԱԿԵԼԻ ԵՐԹԵՎԵԿՈՒԹՅՈՒՆ*

**Հ. Հ. ԻՍԱԲԵԿՅԱՆ**
Ճարտարապետ

**ՄԵՔԵՆԱՅԱԿԱՆ ՏՐԱՆՍՊՈՐՏԻ** երթևեկության կազմակերպումը դարձել է ժամանակակից քաղաքաշինության դժվարլուծելի խնդիրը, հատկապես հին բնակավայրերի հիման վրա կառուցված մեծ քաղաքների համար։ Երևանն իր մեկ միլիոնից ավելի բնակչությամբ արդեն դասվում է խոշոր քաղաքների շարքը և նրան ևս հատուկ են հին բնակավայրերին բնորոշ տրանսպորտային դժվարությունները։

Որպես վերակառուցվող քաղաք, այն մի շարք յուրահատկություններ ունի, որոնք բարդացնում են տրանսպորտի աշխատանքը։ Սահմանափակ են քաղաքի կենտրոնական մասի փողոցների ցանցի հնարավորությունները։ Մեծ դժվարություններ են հարուցում տեղանքի բարդությունները։ Քաղաքի այժմյան կենտրոնական թաղամասը, որը Թամանյանի առաջին նախագծով ողջ քաղաքն էր, իր նոր բնակելի զանգվածներից (ութը նոր հատակագծային շրջաններից, որոնցից ամեն մեկը մի քանի անգամ ավելի մեծ է նախասովետական Երևանից) անջատված է դժվար հաղթահարելի արգելքներով՝ Հրազդանի կիրճով, Կոնդի, Արաբկիրի, Քանաքեռի, Նորքի, Սարի թաղի բարձունքներով, որոնք կենտրոնը շրջափակում են բոլոր կողմերից և դժվարացնում կապը շրջանձև դասավորված զանգվածների հետ։ Այդ պատճառով կենտրոնական փողոցների գերակշռող մասը փակուղիներ են։ Հրազդանի վրա կա ընդամենը երկու կամուրջ՝ երկուական ելքերով դեպի արևմուտք և հարավ։ Սարի թաղի ամբողջ երկարությամբ չկա ոչ մի ելք դեպի արևելք, իսկ հյուսիսային ուղղությամբ կա երկու ելք. դրանք Մյասնիկյանի և Ազատության պողոտաներն են, որոնք սակայն հետո միանում են, ինչպես նաև դեպի Արաբկիր տանող Բարեկամության փողոցը։

Փողոցների նման դասավորությունը ոչ միայն դժվարացնում է տրանսպորտի երթևեկությունը, այլև բարդացնում այդ կարևոր շրջանի կապը քաղաքի մյուս մասերի հետ։ Այդ ցայտուն արտահայտվեց, երբ մի անգամ քաղաքում հեծանիվային մրցույթի պատճառով փակված էր Սևանի խճուղին։ Դրա հետևանքով ոչ միայն Ազատության և Կոմիտասի մայրուղիները, այլև դրանց շրջակա բոլոր փողոցները կես ժամվա ընթացքում այնպես էին խցանվել մեքենաներով, որ ոչ մի ուղղությամբ հնարավոր չէր շարժվել։

Այսպիսով, առաջին մեծ թերությունն այն է, որ քիչ են քաղաքից դուրս տանող փողոցները, որոնք իրենց վրա են վերցնում տասնյակ այլ փողոցների տրանսպորտային հոսքը։ Փողոցները ըստ նշանակության դասակարգված չեն, որի պատճառով տրանսպորտի համար անընդհատ փակվում կամ բացվում են այս կամ այն փողոցը, երթողիները, կանգառները։ Թույլ է գործնական կապը քաղաքաշինական նախագծումներ կատարողների և երթևեկությունը կարգավորողների միջև։

«Երևաննախագիծ» ինստիտուտի քաղաքաշինական հատակագծման արվեստանոցում կազմվում են մայրաքաղաքի փողոցների ցանցի, տրանսպորտային և հետիոտն երթևեկության կարևոր սկզբունքային նախագծումներ, որոնց մի մասը, ցավոք, մնում է թղթի վրա։ Դրա փոխարեն կատարվում են լոկալ նշանակություն ունեցող կառուցումներ՝ մայթերի անընդհատ սալահատակում, եղած ասֆալտե շերտի վրա նորերի ավելացում, բազալտե եզրակալների փոխարինումը նորերով (որոնք որակով տեղադրելու դեպքում կարող են մշտական լինել)։ Բազմաթիվ միատեսակ և մայրաքաղաքի ճարտարապետական մակարդակին չհամապատաս-

խանող հենապատեր են կառուցվում փողոցների վրա, բակերում, այգիներում...

Ուստի կարևոր, տեղային նշանակություն ունեցող կառուցումների հետ մեկտեղ անհրաժեշտ է քաղաքաշինական արդի սկզբունքների հիման վրա, հայրենական և արտասահմանյան պրակտիկայի պրոգրեսիվ նորույթների օգտագործմամբ, ձեռնարկել քաղաքի տրանսպորտային և հետիոտն երթևեկությունը կարգավորելու հիմնական միջոցառումներ:

Մեծ քաղաքների տրանսպորտային երթևեկությունը կարգավորելու համար ամենաարդյունավետ միջոցը մետրոն է: Ի պատիվ Երևանի մետրոյի նախագծողների և կառուցողների, կարող ենք նշել, որ նրա առաջին հերթը իրականացվում է մեծ հաջողությամբ թե՛ ֆունկցիոնալ խնդիրների լուծումների և թե ճարտարապետական արտահայտչականության առումով, որի մասին նշվեց ընկեր Լ. Ի. Բրեժնևի՝ Երևանի մետրոյի կառուցողներին հղած ողջույնի հեռագրում: Առանձնապես գովելի է, որ կառուցված կայարաններն ունեն ճարտարապետական բարձր մակարդակ և օժտված են ազգային ոճի յուրահատկություններով: Մետրոն պետք է դառնա Երևանի տրանսպորտային պրոբլեմի լուծման կարևոր միջոցը, բայց ոչ միակը, որովհետև ավտոտրանսպորտը ճգնաժամային վիճակում է: Մետրոն մեծ դեր կխաղա, երբ կառուցված կլինեն նրա հիմնական երթուղիների երեք տրամագծերը, իսկ մինչ այդ անհրաժեշտ է կարգավորել տրանսպորտի այլ տեսակների աշխատանքը:

Տրանսպորտային դժվարությունները հիմնականում բացատրվում են կենտրոնական փողոցների փակուղային դիրքով, կենտրոնի և զանգվածների եզակի կապով: Պետք է դիմել համարձակ մեթոդների: Մեր հանրապետությունն այժմ ճանապարհների, դրանց հետ կապված ամենաբարդ կառուցվածքների՝ կամուրջների, թունելների կառուցման մեծ փորձ ունի: Բավական է նշել Արփա—Սևանը, մետրոն, Հրազդանի Նուռնուսի նոր կամուրջը, Ստեփանավանի, Դիլիջանի խճուղային թունելները և այլն: Դա հույս է ներշնչում, որ մայրաքաղաքում ևս հաջողությամբ կիրականացվեն բարդ կառուցումներ՝ փողոցների ցանցի վերափոխման, երթևեկության կարգավորման համար: Դա հատուկ նախագծման խնդիր է: Կարելի է նշել թեկուզ Ալավերդյան փողոցը (որը, ի դեպ, նախատեսված է քաղաքի վերջին գլխավոր հատակագծով): Այն պետք է շարունակվի և Հրազդանի վրայով անցնի գետի աջ ափը ու դուրս գա քաղաքից: Նալբանդյան փողոցը ևս պետք է շարունակել դեպի արևմուտք, միացնել Ալավերդյան փողոցին՝ Հրազդանի աջ ափ հասցնելու համար:

Թումանյանի և Մարքսի փողոցները թունելային անցումով, ցածր կամուրջներով պետք է դուրս բերել Հրազդանի աջ ափը: Նախատեսված է Կիրովի փողոցը շարունակել դեպի Արաբկիր (որը, ցավոք, չի արվում): Ժամանակին Լենինի պողոտան վերևում փակվեց արհեստական լիցքով՝ Մատենադարանի համար հանդիսավոր մուտք ստեղծելու նպատակով: Մինչդեռ այդ հանգույցը կարելի էր ավելի լավ ձևով լուծել և Կիրովի փողոցի փոխարեն Լենինի պողոտան փակուղու դիրքից դուրս հանել Արաբկիր և Քանաքեռ: Կարելի էր օգտագործել Գլխավոր պողոտայի տակով տրանսպորտի համար ստորգետնյա փողոցի բացման հնարավորությունը, մանավանդ որ այդպիսի տարբերակ կար պողոտային նվիրված մրցույթի նախագծերում: Դա այժմ էլ կարելի է իրականացնել պողոտայի եզրային ճանապարհների տակով և այդ ճանապարհը դարձնել քաղաքի կենտրոնով անցնող կարևոր տրամագիծ, այն շարունակելով դեպի Հրազդանի աջ ափը: Հակառակ ուղղությամբ, Սարի թաղի բարձրունքի տակով, թունելային անցումով այն միացնել Բաքվի խճուղուն, նույն թունելով կամ առանձին դուրս բերել նաև Սայաթ-Նովայի փողոցը և մի կողմից (Գլխավոր պողոտայի հետ) միացնել Բաքվի խճուղուն, իսկ մի այլ ճյուղով՝ Սևանի խճուղուն՝ Աբովյան քաղաքից հետո: Հրազդանի աջ ափ դուրս բերվող մայրուղիները նույնպես պետք է միացնել արտաքին խճուղիներին: Լենինի պողոտան, Տերյան, Նալբանդյան և Ալավերդյան փողոցները կարելի է դարձնել հիմնական տրանսպորտային մայրուղիներ՝ Աբովյան փողոցի երկու կողմերի վրա, քաղաքի երկայնական առանցքի ուղղությամբ: Մեծ դեր ունեն կատարելու կենտրոնի շուրջը շրջանաձև դասավորված փողոցները՝ Կիրովի, Չարենցի, 26 կոմիսարների, Կարմիր բանակի, ինչպես նաև «Օղակաձև կանաչ գոտու» փողոցները (Մոսկովյան, Խանջյան, Իսահակյան, Մռավյան):

Դեռևս մեր դարասկզբում Փարիզի գլխավոր ճարտարապետ Էժեն Էնարը, ցանկանալով կատարելագործել Փարիզի երթևեկությունը և ուսումնասիրելով շառավղաօղակաձև հորինվածք ունեցող մեծ քաղաքների հատակագծերը, նշեց հատակագծային այդ սիստեմի առավելությունները երթևեկության կազմակերպման համար, հատկապես Մոսկվայի փորձը, որն ունի այդ հորինվածքի հստակ սկզբունքային ձև՝ երեք հաջորդող օղակներով, դրանց միացնող տրամագծերով ու շառավիղներով: Էնարն առաջարկեց Փարիզի կենտրոնում ստեղծել օղակ՝ տրանսպորտային փողոցներով (ուղղանկյուն դասավորությամբ, ելնելով Փարիզի այդ մասի փողոցների ուղղանկյուն ցանցից), օղակի ներսում սահմանափակելով տրանսպորտի երթևեկությունը, իսկ նրա անկյուններից նախատեսելով «ճառագայթող» փողոցներ:

Շառավղաօղակաձև հատակագծային ձևը ժամանակին խիստ քննադատեցին կոնստրուկտիվիստները, որոնք ընդունում էին միայն կանոնավոր ուղղանկյուն հատակագծման սկզբունքը: Արդի քաղաքաշինությունը նպատակահարմար է գտնում հատակագծային բոլոր ձևերի կիրառումը՝ ելնելով կոնկրետ պայմաններից:

Թամանյանը, պահպանելով հին Երևանի ուղղանկյուն փողոցների ցանցը և, ելնելով ռելիեֆի ամֆիթատրոնային դիրքից, ավելացրեց շրջանաձև փողոցներ՝ նախատեսելով դրանցից դեպի քաղաքի կենտրոնը շրջափակող լանջերի վրա բարձրանալու հարմարությունը:

Մայրաքաղաքի նոր հատակագծային շրջանները (զանգվածները) դասավորված են կենտրոնականի շուրջը՝ շրջանաձև, և կապը դրանց միջև փաստորեն իրականացված է ոչ կանոնավոր շառավիղներով: Եվ պատահական չէ նաև, որ մետրոյի հատակագծման սխեման ընդունված է երեք տրամագծերի սիստեմով, որոնք զանգվածները շառավիղներով կապում են կենտրոնի հետ և որոնցով կենտրոնում մետրոյի եռանկյունաձև օղակ է ստացվում:

Այսպիսով, Երևանի հատակագծային կառուցվածքը հիմնված է հորինվածքային երկու ձևերի վրա՝ ուղղանկյան և շառավղաօղակային, լավագույն հնարավորություններ ընձեռելով երթևեկությունը կազմակերպելու համար, եթե դրանք կատարելագործվեն և հստակորեն զուգակցվեն:

Տրանսպորտային օղակների հնարն այժմ մեծ տարածում է ստացել ամբողջ աշխարհում՝ թե՛ վերակառուցվող և թե նոր ստեղծվող քաղաքներում: Դրա նպատակն է օղակի միջոցով տրանսպորտով շրջանցել քաղաքի հասարակական կենտրոնը, նրա տարածքում ստեղծելով սահմանափակ տրանսպորտային, գերազանցապես հետիոտն հանգիստ երթևեկություն, առանձին դեպքերում վերականգնելով անտիկ և միջնադարյան հասարակական ու շուկայական հրապարակների ավանդույթները՝ ժամանակակից մեկնաբանությամբ և հարմարություններով: Տրանսպորտային օղակների առավել կատարյալ սիստեմը իրականացված է Մոսկվայում: Առաջին օղակում այնտեղ ընդգրկված են Կրեմլը և նրան հարող թաղամասերը: Այնուհետև «Բուլվարային» կոչվող օղակը, որի մեծ մասը միաժամանակ ծառուղի է հետիոտն երթևեկության և կարճատև հանգստի համար: Տրանսպորտի համար առավել կարևոր, քաղաքի ամբողջ կենտրոնական մասը պարփակող «Սադովայա» օղակի շնորհիվ բոլոր շառավղաձև փողոցները կապվում են իրար հետ և դրա միջոցով կարելի է նաև շրջանցել կենտրոնը:

Հաջորդը երկաթուղային «Օկրուժնայա» օղակն է, որով կապվում են Մոսկվայի բոլոր երկաթուղային կայարանները և վերջապես «Ավտոմոբիլային» օղակաձև ճանապարհը, որը միացնում է քաղաքից դուրս եկող խճուղիները:

Օգտվելով սովետական քաղաքաշինության այդ լավագույն օրինակից, Երևանում նպատակահարմար է քաղաքի կենտրոնի շուրջը ստեղծել հաջորդական երեք օղակ: Առաջին օղակը՝ Թումանյան, Նալբանդյան, մասամբ Ալավերդյան, Մարքսի (գուցե Կարմիր բանակի), Տերյան փողոցներով: Օղակի մեջ կընդգրկվեն Լենինի, Շահումյանի, գուցե նաև Մյասնիկյանի հրապարակները, հետիոտն երթևեկության համար ստեղծելով հանգստի գոտի մայրաքաղաքի գլխավոր կոմպոզիցիոն առանցքի վրա գտնվող հաջորդաշար հրապարակների տարածքում, որտեղ գտնվում են քաղաքի կարևորագույն հասարակական շենքերը:

Աբովյանը թե՛ հին և թե նոր Երևանի գծային հասարակական կենտրոնի հետիոտն երթևեկության փողոց է, այդ դերը նրան հատկացված է նաև վերջին գլխավոր հատակագծում: Անհանդուրժելի է, որ մայրաքաղաքի այդ հատվածում խառնիճաղանջ, երբեմն երեք շարքով, վազանցնելով, անընդհատ հոսում են մեքենաները: Սա ոչ միայն անհարմարություն է, այլև տգեղ երևույթ, երբ նրա գլխավոր հետիոտն ճանապարհը, որտեղ առավել շատ են լինում նաև Հայաստանի հյուրերը, վերածված է տրանսպորտի միջանցիկ ճամփուղու: Բայց չէ որ Մոսկվայում Կարմիր հրապարակը, որը նախկինում շատ կարևոր տրանսպորտային մայրուղի էր, այժմ ամբողջապես տրամադրված է միայն հետիոտն երթևեկության:

Երկրորդ տրանսպորտային օղակը նպատակահարմար է տանել շրջանաձև կանաչ գոտու եզրերով, խրամուղու մեջ: Գուցե դրա համար օգտագործել նաև Գետառի հունը: Գետառը որպես գետ, քաղաքում այժմ փաստորեն գոյություն չունի: Կամ պետք է դրան ջուր ավելացնել (մաքուր ջուր) ու վերականգնել որպես գետ, կամ բոլորովին ջրազրկել, կառուցել կոյուղի և հունը վերածել տրանսպորտային ճանապարհի, խրամուղու մեջ: Այնտեղ, որտեղ նշված օղակը խոչընդոտների կհանդիպի (նկատի ունենք շրջանաձև կանաչ գոտու խափանված հատվածը՝ Կոնդի մասում), կարելի է անցնել թունելով: Այս օղակի նպատակն է տրանսպորտային հուսալի կապ հաստատել կենտրոնի ուղղանկյուն ցանցի փակուղային դիրք ունեցող փողոցների միջև և ստեղծել կենտրոնը շրջանցելու միջոց:

Երրորդ օղակը կանցնի քաղաքը շրջապա-

խանող հենապատեր են կառուցվում փողոցների վրա, բակերում, այգիներում...

Ուստի կարևոր, տեղային նշանակություն ունեցող կառուցումների հետ մեկտեղ անհրաժեշտ է քաղաքաշինական արդի սկզբունքների հիման վրա, հայրենական և արտասահմանյան պրակտիկայի պրոգրեսիվ նորույթների օգտագործմամբ, ձեռնարկել քաղաքի տրանսպորտային և հետիոտն երթևեկությունը կարգավորելու հիմնական միջոցառումներ:

Մեծ քաղաքների տրանսպորտային երթևեկությունը կարգավորելու համար ամենաարդյունավետ միջոցը մետրոն է: Ի պատիվ Երևանի մետրոյի նախագծողների և կառուցողների, կարող ենք նշել, որ նրա առաջին հերթը իրականացվում է մեծ հաջողությամբ թե՛ ֆունկցիոնալ խնդիրների լուծումների և թե ճարտարապետական արտահայտչականության առումով, որի մասին նշվեց ընկեր Լ. Ի. Բրեժնևի՝ Երևանի մետրոյի կառուցողներին հղած ողջույնի հեռագրում: Առանձնապես գովելի է, որ կառուցված կայարանները ունեն ճարտարապետական բարձր մակարդակ և օժտված են ազգային ոճի յուրահատկություններով: Մետրոն պետք է դառնա Երևանի տրանսպորտային պրոբլեմի լուծման կարևոր միջոցը, բայց ոչ միակը, որովհետև ավտոտրանսպորտը ճգնաժամային վիճակում է: Մետրոն մեծ դեր կխաղա, երբ կառուցված կլինեն նրա հիմնական երթուղիների երեք տրամագծերը, իսկ մինչ այդ անհրաժեշտ է կարգավորել տրանսպորտի այլ տեսակների աշխատանքը:

Տրանսպորտային դժվարությունները հիմնականում բացատրվում են կենտրոնական փողոցների փակուղային դիրքով, կենտրոնի և զանգվածների եզակի կապով: Պետք է դիմել համարձակ մեթոդների: Մեր հանրապետությունն այժմ ճանապարհների, դրանց հետ կապված ամենաբարդ կառուցվածքների՝ կամուրջների, թունելների կառուցման մեծ փորձ ունի: Բավական է նշել Արփա—Սևանը, մետրոն, Հրազդանի Նուռնուսի նոր կամուրջը, Ստեփանավանի, Դիլիջանի խճուղային թունելները և այլն: Դա հույս է ներշնչում, որ մայրաքաղաքում ևս հաջողությամբ կիրականացվեն բարդ կառուցումներ՝ փողոցների ցանցի վերափոխման, երթևեկության կարգավորման համար: Դա հատուկ նախագծման խնդիր է: Կարելի է նշել թեկուզ Ալավերդյան փողոցը (որը, ի դեպ, նախատեսված է քաղաքի վերջին գլխավոր հատակագծով): Այն պետք է շարունակվի և Հրազդանի վրայով անցնի գետի աջ ափը ու դուրս գա քաղաքից: Նալբանդյան փողոցը ևս պետք է շարունակել դեպի արևմուտք, միացնել Ալավերդյան փողոցին՝ Հրազդանի աջ ափ հասցնելու համար:

Թումանյանի և Մարքսի փողոցները թունելային անցումով, ցածր կամուրջներով պետք է դուրս բերել Հրազդանի աջ ափը: Նախատեսված է Կիրովի փողոցը շարունակել դեպի Արաբկիր (որը, ցավոք, չի արվում): Ժամանակին Լենինի պողոտան վերևում փակվեց արհեստական լիցքով՝ Մատենադարանի համար հանդիսավոր մուտք ստեղծելու նպատակով: Մինչդեռ այդ հանգույցը կարելի էր ավելի լավ ձևով լուծել և Կիրովի փողոցի փոխարեն Լենինի պողոտան փակուղու դիրքից դուրս հանել Արաբկիր և Քանաքեռ: Կարելի էր օգտագործել Գլխավոր պողոտայի տակով տրանսպորտի համար ստորգետնյա փողոցի բացման հնարավորությունը, մանավանդ որ այդպիսի տարբերակ կար պողոտային նվիրված մրցույթի նախագծերում: Դա այժմ էլ կարելի է իրականացնել պողոտայի եզրային ճանապարհների տակով և այդ ճանապարհը դարձնել քաղաքի կենտրոնով անցնող կարևոր տրամագիծ, այն շարունակելով դեպի Հրազդանի աջ ափը: Հակառակ ուղղությամբ, Սարի թաղի բարձրունքի տակով, թունելային անցումով այն միացնել Բաքվի խճուղուն, նույն թունելով կամ առանձին դուրս բերել նաև Սայաթ-Նովայի փողոցը և մի կողմից (Գլխավոր պողոտայի հետ) միացնել Բաքվի խճուղուն, իսկ մի այլ ճյուղով՝ Սևանի խճուղուն՝ Աբովյան քաղաքից հետո: Հրազդանի աջ ափ դուրս բերվող մայրուղիները նույնպես պետք է միացնել արտաքին խճուղիներին: Լենինի պողոտան, Տերյան, Նալբանդյան և Ալավերդյան փողոցները կարելի է դարձնել հիմնական տրանսպորտային մայրուղիներ՝ Աբովյան փողոցի երկու կողմերի վրա, քաղաքի երկայնական առանցքի ուղղությամբ: Մեծ դեր ունեն կատարելու կենտրոնի շուրջը շրջանաձև դասավորված փողոցները՝ Կիրովի, Չարենցի, 26 կոմիսարների, Կարմիր բանակի, ինչպես նաև «Օղակաձև կանաչ գոտու» փողոցները (Մոսկովյան, Խանջյան, Իսահակյան, Մռավյան):

Դեռևս մեր դարասկզբում Փարիզի գլխավոր ճարտարապետ Էժեն Էնարը, ցանկանալով կատարելագործել Փարիզի երթևեկությունը և ուսումնասիրելով շառավղաօղակաձև հորինվածք ունեցող մեծ քաղաքների հատակագծերը, նշեց հատակագծային այդ սիստեմի առավելությունները երթևեկության կազմակերպման համար, հատկապես Մոսկվայի փորձը, որն ունի այդ հորինվածքի հստակ սկզբունքային ձև՝ երեք հաջորդող օղակներով, դրանց միացնող տրամագծերով ու շառավիղներով: Էնարն առաջարկեց Փարիզի կենտրոնում ստեղծել օղակ՝ տրանսպորտային փողոցներով (ուղղանկյուն դասավորությամբ, ելնելով Փարիզի այդ մասի փողոցների ուղղանկյուն ցանցից), օղակի ներսում սահմանափակելով տրանսպորտի երթևեկությունը, իսկ նրա անկյուններից նախատեսելով «ճառագայթող» փողոցներ:



Շառավղաօղակաձև հատակագծային ձևը ժամանակին խիստ քննադատեցին կոնստրուկտիվիստները, որոնք ընդունում էին միայն կանոնավոր ուղղանկյուն հատակագծման սկզբունքը: Արդի քաղաքաշինությունը նպատակահարմար է գտնում հատակագծային բոլոր ձևերի կիրառումը՝ ելնելով կոնկրետ պայմաններից:

Թամանյանը, պահպանելով հին Երևանի ուղղանկյուն փողոցների ցանցը և, ելնելով ռելիեֆի ամֆիթատրոնային դիրքից, ավելացրեց շրջանաձև փողոցներ՝ նախատեսելով դրանցից դեպի քաղաքի կենտրոնը շրջափակող լանջերի վրա բարձրանալու հարմարությունը:

Մայրաքաղաքի նոր հատակագծային շրջանները (զանգվածները) դասավորված են կենտրոնականի շուրջը՝ շրջանաձև, և կապը դրանց միջև փաստորեն իրականացված է ոչ կանոնավոր շառավիղներով: Եվ պատահական չէ նաև, որ մետրոյի հատակագծման սխեման ընդունված է երեք տրամագծերի սիստեմով, որոնք զանգվածները շառավիղներով կապում են կենտրոնի հետ և որոնցով կենտրոնում մետրոյի եռանկյունաձև օղակ է ստացվում:

Այսպիսով, Երևանի հատակագծային կառուցվածքը հիմնված է հորինվածքային երկու ձևերի վրա՝ ուղղանկյան և շառավղաօղակային, լավագույն հնարավորություններ ընձեռելով երթևեկությունը կազմակերպելու համար, եթե դրանք կատարելագործվեն և հստակորեն զուգակցվեն:

Տրանսպորտային օղակների հնարն այժմ մեծ տարածում է ստացել ամբողջ աշխարհում՝ թե՛ վերակառուցվող և թե նոր ստեղծվող քաղաքներում: Դրա նպատակն է օղակի միջոցով տրանսպորտով շրջանցել քաղաքի հասարակական կենտրոնը, նրա տարածքում ստեղծելով սահմանափակ տրանսպորտային, գերազանցապես հետիոտն հանգիստ երթևեկություն, առանձին դեպքերում վերականգնելով անտիկ և միջնադարյան հասարակական ու շուկայական հրապարակների ավանդույթները՝ ժամանակակից մեկնաբանությամբ և հարմարություններով: Տրանսպորտային օղակների առավել կատարյալ սիստեմը իրականացված է Մոսկվայում: Առաջին օղակում այնտեղ ընդգրկված են Կրեմլը և նրան հարող թաղամասերը: Այնուհետև «Բուլվարային» կոչվող օղակը, որի մեծ մասը միաժամանակ ծառուղի է հետիոտն երթևեկության և կարճատև հանգստի համար: Տրանսպորտի համար առավել կարևոր, քաղաքի ամբողջ կենտրոնական մասը պարփակող «Սադովայա» օղակի շնորհիվ բոլոր շառավղաձև փողոցները կապվում են իրար հետ և դրա միջոցով կարելի է նաև շրջանցել կենտրոնը:

Հաջորդը երկաթուղային «Օկրուժնայա» օղակն է, որով կապվում են Մոսկվայի բոլոր երկաթուղային կայարանները և վերջապես «Ավտոմոբիլային» օղակաձև ճանապարհը, որը միացնում է քաղաքից դուրս եկող խճուղիները:

Օգտվելով սովետական քաղաքաշինության այդ լավագույն օրինակից, Երևանում նպատակահարմար է քաղաքի կենտրոնի շուրջը ստեղծել հաջորդական երեք օղակ: Առաջին օղակը՝ Թումանյան, Նալբանդյան, մասամբ Ալավերդյան, Մարքսի (գուցե Կարմիր բանակի), Տերյան փողոցներով: Օղակի մեջ կընդգրկվեն Լենինի, Շահումյանի, գուցե նաև Մյասնիկյանի հրապարակները, հետիոտն երթևեկության համար ստեղծելով հանգստի գոտի մայրաքաղաքի գլխավոր կոմպոզիցիոն առանցքի վրա գտնվող հաջորդաշար հրապարակների տարածքում, որտեղ գտնվում են քաղաքի կարևորագույն հասարակական շենքերը:

Աբովյանը թե՛ հին և թե նոր Երևանի գծային հասարակական կենտրոնի հետիոտն երթևեկության փողոց է, այդ դերը նրան հատկացված է նաև վերջին գլխավոր հատակագծում: Անհանդուրժելի է, որ մայրաքաղաքի այդ հատվածում խառնիճաղանջ, երբեմն երեք շարքով, վազանցնելով, անընդհատ հոսում են մեքենաները: Սա ոչ միայն անհարմարություն է, այլև տգեղ երևույթ, երբ նրա գլխավոր հետիոտն ճանապարհը, որտեղ առավել շատ են լինում նաև Հայաստանի հյուրերը, վերածված է տրանսպորտի միջանցիկ ճամփուղու: Բայց չէ որ Մոսկվայում Կարմիր հրապարակը, որը նախկինում շատ կարևոր տրանսպորտային մայրուղի էր, այժմ ամբողջապես տրամադրված է միայն հետիոտն երթևեկության:

Երկրորդ տրանսպորտային օղակը նպատակահարմար է տանել շրջանաձև կանաչ գոտու եզրերով, խրամուղու մեջ: Գուցե դրա համար օգտագործել նաև Գետառի հունը: Գետառը որպես գետ, քաղաքում այժմ փաստորեն գոյություն չունի: Կամ պետք է դրան ջուր ավելացնել (մաքուր ջուր) ու վերականգնել որպես գետ, կամ բոլորովին ջրազրկել, կառուցել կոյուղի և հունը վերածել տրանսպորտային ճանապարհի, խրամուղու մեջ: Այնտեղ, որտեղ նշված օղակը խոչընդոտների կհանդիպի (նկատի ունենք շրջանաձև կանաչ գոտու խափանված հատվածը՝ Կոնդի մասում), կարելի է անցնել թունելով: Այս օղակի նպատակն է տրանսպորտային հուսալի կապ հաստատել կենտրոնի ուղղանկյուն ցանցի փակուղային դիրք ունեցող փողոցների միջև և ստեղծել կենտրոնը շրջանցելու միջոց:

Երրորդ օղակը կանցնի քաղաքը շրջապա-

տող բարձունքների՝ Սարի թաղով, Նորքի, Քանաքեռի, Արաբկիրի, Ծիծեռնակաբերդի լանջերով (ձորերի վրա կամուրջներով և էստակադայով, իսկ որոշ տեղերում՝ թունելներով):

Երեք օղակները կարելի է միացնել տրամագծերով և շառավիղներով, որոնցից կարևորագույններն են՝ Թումանյանի փողոցը, Սայաթ-Նովայի, Գլխավոր պողոտաները, Մարքսի և Կարմիր բանակի, իսկ հակառակ ուղղությամբ՝ Լենինի, Տերյան, Նալբանդյան, Ալավերդյան փողոցները: Մի չորրորդ օղակ անհրաժեշտ է տանել քաղաքի արտաքին եզրով՝ միջանցիկ տրանսպորտի շրջանցման և քաղաքից դուրս եկող բոլոր փողոցներն ու խճուղիները միացնելու համար: Այս միջոցառումների վերաբերյալ նախադրյալներ կան քաղաքի վերջին գլխավոր հատակագծում և խնդիրն այն է, որ դրանք մշակվեն և իրականացմանը տրվի նույնքան կարևորություն, որքան տրվեց մետրոյի կառուցմանը: Միայն մանր շտկումների միջոցով հնարավոր չէ կարգավորել մայրաքաղաքի վերգետնյա տրանսպորտային երթևեկությունը:

Երևանի տեղանքի բարդ ռելիեֆը մեծ դըժվարություններ է հարուցում հատկապես փողոցների կառուցման համար: Բայց այդ յուրահատկությունը կարելի է խելացիորեն օգտագործել, օրինակ, փողոցների հատումները խաչմերուկներում կատարել տարբեր հարթություններում, հետիոտն երթևեկությունն անջատել տրանսպորտից, կառուցել թունելային ճանապարհներ և օգտագործել ստորգետնյա տարածությունները և այլն:

Այժմ ողջ աշխարհում վերակառուցվող հին քաղաքներում մեծ տեղ է հատկացվում ստորգետնյա քաղաքաշինությանը: Քաղաքի կենտրոնում կառուցվում են ստորգետնյա խոշոր առևտրական, հասարակական շենքեր (որոնցում բնական լուսավորության բացակայությունը հանդուրժելի է), միաժամանակ դրանց մոտեցնելով տրանսպորտի բոլոր միջոցները: Այսպես, օրինակ, Պրագայում, հին քաղաքի խիտ կառուցապատված տարածքի շենքերը պահպանելու նպատակով, նոր անհրաժեշտ կառույցները տեղադրվում են ստորգետնյա, իսկ այդ շենքերը դառնում են նախամուտք: Այդ ձեվով այնտեղ կառուցված են կինոթատրոններ, ռեստորաններ, հանդիսասրահներ: Հելսինկիի ամբողջ ներքին տարածքը վերածված է հանրախանութի և միաժամանակ ծառայում է որպես հետիոտն անցում:

Երևանը, բացի մետրոյից, ստորգետնյա տարածքի օգտագործման փորձեր է կատարում. այն պետք է շարունակել ավելի համարձակորեն և մեծ մասշտաբներով, որի համար նպաստավոր են ռելիեֆի բարդությունները: Օրինակ, Սայաթ-Նովայի պողոտան Զարենցին միացնելու համար Մոսկվայի փողոցից մինչև Զարենց մի քանի տարի հողի հսկայական լիցք կատարվեց: Մինչդեռ փողոցը կարելի էր կառուցել հենարանների վրա, իսկ ներքևի ամբողջ տարածքում հնարավոր կլիներ բազմահարկ ավտոտնակներ տեղադրել:

Բազմաթիվ հենապատեր են կառուցվում փողոցների բարձր կողմերի վրա՝ խուլ պատերով: Այսպես, օրինակ, Զարենցի փողոցի վրա, Նորքի զանգվածում, Աջափնյակում, ինչպես նաև բնակելի բակերում բնակիչները օգտագործում են նման հնարավորությունները, սակայն, դա հարցի լուծում չէ: Դրա փոխարեն հենապատերի մեջ կարելի է ներկառուցել խանութներ, գարաժներ և այլն:

Սայաթ-Նովայի պողոտան մոտ երեք մետր բարձրությամբ հատում է շրջանաձև կանաչ գոտին և այդտեղ շատ հարմար կլիներ այգու երկու կողմերը միացնել ստորգետնյա անվտանգ անցումով՝ այգում զբոսնողների համար: Դրա փոխարեն այգու այդ տարածքում լիցք կատարվեց: Նման օրինակներ քաղաքում շատ կան: Ռելիեֆի ճիշտ օգտագործումով կատարվեց Լենինի պողոտայի և Կարմիր բանակի հատման հանգույցը՝ երկու հարթություններով: Նույնը պետք է արվեր նաև Աբովյանի և Կիրովի փողոցների հատման հանգույցում: Այդտեղ լավ ստորգետնյա անցում ստեղծվեց հետիոտնի համար, բայց ավելի նպատակահարմար կլիներ դրա հետ միասին տրանսպորտը Կիրովի փողոցից տանել Աբովյանի և Տերյանի փողոցների տակով, քանի որ Կիրովի փողոցն այդ հատվածում Գետառի մոտից բարձրանում է, իսկ Լենինի պողոտայի մոտ իջնում:

Տրանսպորտի երթևեկության կարգավորման համար կարևոր է նաև փողոցների դասակարգումն ըստ նրանց նշանակության: Այդ միջոցառման նպատակն է, որպեսզի առաջին կարգի փողոցների (մայրուղիների) հետ կապվեն միայն երկրորդ կարգի փողոցները, իսկ վերջիններին միայն երրորդ կարգինները, դրանց էլ միանան փակուղիները: Երևանի կենտրոնի երրորդ կարգի բազում փողոցներում նախընտրելի է կիրառել միակողմանի երթևեկություն կամ դրանք վերածել փակուղու:

Տրանսպորտից ոչ պակաս դժվարին դրության մեջ է հետիոտն երթևեկությունը: Տրանսպորտը հետզհետե գերակշռող նշանակություն է ստացել, իրեն ենթարկելով քաղաքի հատակագծումը, աստիճանաբար նսեմացնելով հետիոտնի դերը, փողոցները վերածելով սոսկ տրանսպորտի երթևեկության ուղիների:



Տրանսպորտի ֆետիշացումը հանգեցրել է քաղաքաշինության մեջ զանազան արտառոց նախագծումների, ինչպես, օրինակ, ավտոմոբիլային երթևեկությունը քաղաքի շենքերի հարթ կտուրների վրայով կատարելու առաջարկությանը (քաղաք-մետոպիա): Սակայն այժմ աշխարհում հետիոտն շարժման իրավունքները վերականգնելու եռանդուն փորձեր են կատարվում: Ֆրանսիայի ականավոր ճարտարապետ Ժորժ Կանդիլիսի ղեկավարությամբ կառուցվում է Տուլուզայի երկվորյակը: Մեծ քաղաքների հետագա զարգացումը կարգավորելու նպատակով, քաղաք-արբանյակներ ըստեղծելու փոխարեն, Ֆրանսիայում ծագել է այսպես կոչված «զուգահեռ քաղաքների» գաղափարը. որոշ հեռավորության վրա կառուցել նոր զուգահեռ ինքնուրույն քաղաք հնի հետ կապված տրանսպորտային ժամանակակից միջոցներով: Կանդիլիսը հիմնական ուշադրությունը նվիրել է հետիոտն երթևեկությանը, նպատակ ունենալով վերականգնել փողոցների այդ կարևոր ֆունկցիան, որը նսեմացվել էր կոնստրուկտիվիզմի քաղաքաշինական գաղափարների ազդեցությամբ: Նա գտնում է, որ քաղաքի հատակագծի հիմքը պետք է կազմեն մարդու գործունեության հետ կապված կառուցվածքները՝ գծային դասավորության հետիոտն երթևեկության գլխավոր փողոցների վրա, իսկ նրանց ճյուղավորումների վրա՝ դպրոցներ, իրենց բնակելի միկրոշրջաններով: Այդ նախագծում տրանսպորտային ճանապարհները և ավտոմեքենան դիտվում են որպես մարդուն սպասարկող միջոց և ոչ որպես հատակագծային կառուցվածքի գերիշխող օբյեկտ: Իսկ ամենաէականն այն է, որ այդ հետիոտն փողոցները վերգետնյա են, և այդ նույն մակարդակի վրա են դասավորված հասարակական շենքերը, իսկ տրանսպորտային ուղիներն անցնում են դրանց տակով՝ գետնի մակերեսով:

Հետիոտն փողոցների շուրջն են դասավորված հանգստի կանաչ գոտին, սպորտհրապարակները: Այսպիսով, ժամանակակից քաղաքաշինական պրակտիկայում կիրառվում են զանազան համարձակ հորինվածքներ հետիոտնի և տրանսպորտի երթևեկության անվտանգությունն ապահովելու և հաճելի դարձնելու համար: Բոլոր դեպքերում հիմնական միջոցը երթևեկության երկու տարբեր ձևերը, ինչպես նաև տրանսպորտային ուղիները տարբեր մակարդակների վրա դասավորելն է՝ դրանց հատման հանգույցներում:

Հետիոտնի ապահովության համար որպես ոչ այնքան արդյունավետ միջոց ծառայում են ստորգետնյա անցումները կամ կամուրջները: Սակայն դրանք հարմար չեն նեղ փողոցների վրա, քանի որ բնակիչները քիչ են օգտվում նման անցումներից: Այժմ գերադասելի է տրանսպորտի ստորգետնյա անցումները: Թե՛ տրանսպորտի և թե հետիոտն անցման ձևերը նախագծելիս հարկ է հաշվի առնել ռելիեֆի յուրահատկությունները: Այսպես, Ձերժինսկու անվան միջնակարգ դպրոցի դիմացի անցումը նպատակահարմար էր անել ոչ թե ստորգետնյա, այլ փողոցի վրայով, որովհետև դպրոցի կողմը մեծ թեքությամբ բարձրանում է վեր, և այնտեղից երեխաները առանց ցած իջնելու կանցնեին փողոցը, իսկ հակառակ ուղղությամբ, նույնպես սանդուղքներով բարձրանալով, նրանք կմտնեին դպրոցին: Նույնը կարելի է ասել Կամոյի անվան միջնակարգ դպրոցի մոտի անցման մասին:

Պետք է խուսափել քաղաքում մի քանի ուղղություններով և մակարդակներով տրանսպորտային բարդ հանգույցներ կառուցելուց, ինչպես, օրինակ, Նորքի զանգվածի սկզբում: Դրանք, կոչված լինելով լուծել տրանսպորտի խնդիրը, միևնույն ժամանակ մեծ անհարմարություն են ստեղծում հետիոտնի համար: Նման հանգույցում մարդ չի կարողանում կողմնորոշվել՝ ուր, ինչպես գնալ: Բացի դրանից բարդ հանգույցը հսկայական տարածություն է զբաղեցնում քաղաքի տարածքում և «մեռյալ զոնա» է դառնում:

Տրանսպորտի հետ կապված դժվարին խնդիրներից է նաև ավտոտնակների և կանգառների տեղադրումը: Բոլոր երկրների հին մեծ քաղաքներում, որտեղ շատ են ավտոմեքենաները, որպես կանգառ օգտագործվում են նաև փողոցները: Երևանը ևս մոտենում է այդ վիճակին: Ավտոմեքենան մտել է մեր կենցաղի մեջ, և անձնական մեքենաների ավելացումը պետք է լրջորեն մտահոգի համապատասխան մարմիններին: Նոր կառուցվող բնակելի զանգվածների միկրոշրջանների նախագծերում միութենական նորմաներին համապատասխան անհրաժեշտ է լուծել ավտոկանգառների և ավտոտնակների կառուցման տեղերը, բաշխման սիստեմը: Խնդիրն առավել բարդ է, բայց և կարևոր քաղաքի հին թաղամասերում: Ավտոտնակների բազմաթիվ նոր ձևեր կան՝ ստորգետնյա, բազմահարկ, հարթ կտուրների վրա և այլն:

Երևի ճիշտ կլիներ զարկ տալ հասարակական տրանսպորտին, սակայն քանի որ անձնական ավտոմեքենան արդեն մեծ չափով մըտել է կենցաղի մեջ, ուրեմն և պետք է անհրաժեշտ պայմաններ ստեղծել դրա օգտագործման համար: Լավագույն միջոցը կլինի այն, որ գարաժներ կառուցվեն պետության կողմից և տըրվեն վարձով, որով և վերջ կտրվի այդ բնագավառում կատարվող ամեն տեսակ չարաշահումներին:

Հասունացած է նաև խոշոր հասարակական և այլ շենքերի մոտ ավտոկանգառների խնդիրը: Տեղ չունենալով հրապարակներում, փողոցի տարածքում մեքենաները զբաղեցնում են մայթերը, փչացնում դրանց եզրակալները, ծառերը, տրորում կանաչը, փակում հետիոտնի ճանապարհը: Նման վիճակում են արդեն Երևանի բազմաթիվ հիմնարկությունների, միության, ինստիտուտների տարածքները:

Ինչ վերաբերում է տրանսպորտի և հետիոտնի երթևեկության կազմակերպմանն ու կուլտուրային, ապա դա Երևանում ցանկալի մակարդակի վրա չէ: Կարելի է ասել, որ թե՛ վարորդների (բացառությամբ մետրոյի) և թե հետիոտնի մոտ պարզապես ցածր է քաղաքացիական պարտքի զգացումը: Իսկ երթևեկության կուլտուրան տվյալ քաղաքի, ժողովրդի զարգացման մակարդակի չափանիշ է նաև:

Քաղաքի երթևեկությունը կարգավորվում է նաև ժամանակակից սարքավորումների, նշանների, լուսանցույցների և այլ միջոցներով: Դրանց խելացի օգտագործումը նույնպես կարևոր է: Նշանների միջոցով կարելի է ճանապարհի փակել երկրորդական փողոցների ելքը դեպի մայրուղիները, ավելի լավ պայմաններ ստեղծել կարևոր ուղղությունների, հետիոտնի համար: Այսպես, օրինակ, Նալբանդյան, Տերյան և Ալավերդյան փողոցներում հետիոտն երթևեկությունը քիչ է, իսկ տրանսպորտինը՝ կարևոր և դրանց խաչմերուկներում կարիք չկա 4 տակտով թողարկում կատարել տրանսպորտի համար, հօգուտ հետիոտն երթևեկության, բայց դա անհրաժեշտ է Աբովյանի և Լենինի պողոտայի խաչմերուկներում, որտեղ հետիոտն երթևեկությունը շատ է: Ներկայումս այս ոլորտում կան թերություններ: Մի ուղղությամբ շարժվող տրանսպորտի տարբեր ձևերի համար կանգառները չպետք է շատ հեռու լինեն, որպեսզի ուղևորները մի տեղում գտնվելով կարողանան օգտվել բոլոր ձևերից: Տրանսպորտային նշանները չպետք է հաճախակի փոխվեն, վարորդները դրա հետևանքով վատ են կողմնորոշվում և խախտումներ կատարում:

Մենք քաղաքից դուրս արդեն ունենք լավորակ խճուղիներ, սակայն զարմանալի է, որ անհամեմատ ցածր որակով են կատարվում քաղաքների փողոցների, հրապարակների ասֆալտապատումը, մայթերի սալահատակումը, եզրակալների, կանգառների և տրանսպորտի հետ առնչվող այլ հարմարանքների կառուցումը: Առանձնապես տգեղ և անփույթ են տրամվայների և տրոլեյբուսների էլեկտրալարերի համար տեղադրվող սյուներն ու լարերը:

Երևանի փողոցներից մեկում կա մի լոզունգ՝ «Մայրաքաղաքը ողջունում է կարգապահ վարորդներին» մի ուրիշ տեղ՝ «Հարմար և գեղեցիկ տրանսպորտը զարդարում է քաղաքը»: Ավելացնենք դրան նաև՝ «Իր քաղաքը սիրող, երթևեկության կանոնները պահպանող քաղաքացին արժանի է հարգանքի» լոզունգը և ցանկանք, որ դրանք իրականություն դառնան:

---



Վերստուգող սրբագրիչ՝ **Մ. Բ. ՑԱՅԼՈՅԱՆ**

Թողարկիչ՝ **Մ. Գ. ԲՈՅՆԻԿՅԱՆ**

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի՝ 20.04.82 թ.: Ստորագրված է տպագրության՝ 10.05.82 թ.: ՎՖ 06152: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15532: Պատվեր՝ 903:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении.

Ереван-23, пр. Орджоникидзе, 2.

# Ինչ կարդալ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 38: Մարտ—հունիս 1919: «Հայաստան» հրատ., 1982:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Ճառ ՍՍՀՄ արհմիությունների XVII համագումարում: *«Հայաստան» հրատ., 1982:*

**Ленинской «Правде» — 70 лет.** М., изд. «Правда», 1982.

*Գրքում բացահայտվում է Վ. Ի. Լենինի դերը որպես «Պրավդայի» հիմնադրի, գաղափարական ղեկավարի: «Պրավդայում» տպագրվել են Վ. Ի. Լենինի ավելի քան 1000 հոդվածներ, ղեկուցումներ, նամակներ և այլ փաստաթղթեր. զետեղված են թերթի ստեղծման մասնակիցների, կուսակցության և սովետական պետության, միջազգային կոմունիստական և բանվորական շարժման ականավոր ներկայացուցիչների հոդվածները: Գրքի հերոսներն են սովետների երկրի հիանալի մարդիկ՝ աշխատավորները, նոր կյանք կերտողները:*

**Архив Маркса и Энгельса,** т. XVI. М., Политиздат, 1982.

*Հատորում ընդգրկված են Կ. Մարքսի՝ անցյալում չհրապարակված ձեռագիր նյութերը: Հատորի բովանդակությունն արտացոլում է ճորտատիրական իրավունքի վերացումից հետո Ռուսաստանի սոցիալ-տնտեսական զարգացման մարքսյան հետազոտությունը:*

Հ. ԱԼԻԵՎ— Սովետական Ադրբեջան: *«Հայաստան» հրատ., 1982:*

*ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, Ադրբեջանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար Հ. Ա. Ալիևի գիրքը այն մեծ ու փայլուն ուղու մասին է, որ սովետական իշխանության 60 տարիների ընթացքում անցել են հանրապետության աշխատավորները:*

*Գրքում բերված բազմաթիվ փաստեր վկայում են, որ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ Սովետական Ադրբեջանը դուրս է եկել նոր կյանքի կառուցման լուսավոր ուղի, հասել է էկոնոմիկայի, գիտության, կուլտուրայի շեշտակի վերելքի:*

Ա. ԿԱՐԻՆՅԱՆ— Գրական-պատմական ակնարկներ: *Ե., «Սովետական գրող», 1982:*

*Գրքում ամփոփված են սոցիալիստական աշխատանքի հերոս, ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Արտաշես Կարինյանի պատմական, հրապարակախոսական հոդվածները. դրանք արտացոլում են հայ հեղափոխական մտքի ականավոր ներկայացուցիչների պայքարն ընդդեմ ցարական բռնակալության: Ներկայացված են նաև ռուս և հայ ականավոր հասարակական ու գրական գործիչների դիմանկարները:*

**Р. Вартанов — Социализм: ступени развития.** Е., изд. «Айастан», 1982.

*Գրքում արծարծված են զարգացած սոցիալիզմի ձևավորման ու առաջընթացի տեսական պրոբլեմները, դրա էությունը, հիմնական սկզբունքները: Հեղինակը բացահայտում է զարգացած սոցիալիզմի կոնցեպցիայի էությունը, կոմունիստական շինարարության օրինաչափությունները: Հանգամանորեն լուսաբանված է ՍՄԿԿ ղեկավար դերը զարգացած սոցիալիզմի փուլում:*

Վ. ՇԱՏԱԼՈՎ— Տիեզերքի դժվարին ճանապարհները: *Երկրորդ լրաց. հրատ.: «Հայաստան» հրատ., 1982:*

*Դեպի տիեզերք մարդու առաջին թռիչքի քսանամյակին է նվիրված ՍՍՀՄ տիեզերագնաց-օդաչու, սովետական տիեզերագնացների պատրաստման ղեկավար Վլադիմիր Ալեքսանդրովիչ Շատալովի գրքի այս նոր հրատարակությունը: Հեղինակը պատմում է նախ ավիացիայում, այնուհետև տիեզերագնացության ոլորտում անցած երկարամյա ուղու, տիեզերք կատարած երեք թռիչքների մասին: Ջերմ էջեր է նվիրել առաջին տիեզերագնաց Յուրի Ալեքսեևիչ Գագարինին, ինչպես և իր երկնային մյուս ընկերներին:*

Շ. ՊԵՏՐՈՍՅԱՆ— Զարգացած սոցիալիզմի պետական իշխանության մարմինները: *«Հայաստան» հրատ., 1982:*

*Գրքույկում վերլուծված են Հայկական ՍՍՀ սահմանադրության դեմոկրատական սկզբունքները, սովետական քաղաքացիների իրավունքները, պետական իշխանության բարձրագույն և տեղական մարմինների կառուցվածքը, գործունեության ձևերը, աշխատանքի մեթոդները:*

ՌԻ. ԴՈՒԳԼԱՍ— Երեքհարյուրամյա պատերազմ: *Էկոլոգիական աղետի ժամանակագրություն: «Հայաստան» հրատ., 1981:*

*Ամերիկացի նշանավոր իրավագետ Ուիլյամ Օ. Դուգլասի գիրքը նվիրված է մեր ժամանակի կարևորագույն պրոբլեմներից մեկին՝ շրջակա բնության պահպանությանը:*

Գինը՝ 25 կ.
Индекс 77783

ISSN 0130—8114

# Գիտության և տեխնիկայի նորություններ

## ԿՈՄՊՅՈՒՏԵՐԸ ՀՐԱՄԱՅՈՒՄ Է

*Շարժակազմի ստուգման կայանում կատարվեց հետաքրքրական մի փորձ։ Օղակաձև շարժվող գնացքները ղեկավարում են ոչ թե մեքենավարները, այլ Մոսկվայի երկաթուղային տրանսպորտի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտում տեղադրված կոմպյուտերը։ ԷՀՄ-ը տալիս է ավելի քան 20 տարբեր հրամաններ, և գնացքաքարշերը մերթ արագություն են զարգացնում, մերթ կանգնում, մերթ ընթանում հակառակ ուղղությամբ։ Գնացքների շարժումը ղեկավարող այս կոմպլեքս սիստեմի փորձարկումը դարձավ երկրի պողպատե մայրուղիներում նրա ներդրման առաջին փուլը։*

*Նույնիսկ փորձառու երկաթուղային դիսպետչերը հաճախ դժվարանում է ելք գտնել գծում ստեղծված բարդ իրավիճակից։ Իսկ ԷՀՄ-ն իր «ոչ մարդկային» հիշողությամբ ի վիճակի է մշտապես ապահովել շարժման առավել ռացիոնալ ռեժիմ։ Ի դեպ, մեքենան ինքն է թղթի վրա գծում գրաֆիկը։ Դիսպետչերը կարող է նաև «խորհրդակցել» ԷՀՄ-ի հետ, այսպես ասած, «պտտեցնել» շարժակազմի մի քանի տարբերակներ և ընտրել լավագույնը։ Այդ սիստեմը առաջին անգամ կգործարկվի մերձմոսկովյան մայրուղու ամենալարված տեղամասում՝ Մոսկվա—Զագորսկ—Ալեքսանդրով։*

## ՏԱՆԻՔՆԵՐ ԿԻՆՈԺԱՊԱՎԵՆՆԵՐԻՑ

*Կարճ է կինոժապավենների կյանքը։ Այդ անհանգստացնում է նաև կոմունալ տնտեսության աշխատողներին, որովհետև աղբակույտում կուտակված ժապավենները կարող են ո՛չ միայն պատճառ դառնալ հրդեհի, այլև պայթյուն առաջացնել։*

*Վերջերս ԳԴՀ-ում շահագործման է հանձնվել Եվրոպայում առաջին ձեռնարկությունը, որտեղ սիրով ընդունում են մաշված կինոժապավենները և խառնում դրանք այլ թափոնների՝ պոլիէթիլենային պլաստմասսաների հետ։ Խառնուրդը հալեցվում է վակուումում և վերածվում ամուր ֆոլգա-ֆլորաֆոլի։ Նման ամուր և էժան թաղանթը գործածվում է երկաթբետոնե շենքերի տանիքները ծածկելու համար՝ հիանալի պահպանելով դրանք ջրի թափանցումից։*

## ԱՌԱՋԻՆ ՄԻԿՐՈՑՈՒՅՑԸ

*Ճապոնական «Սոնի» ֆիրման մշակել է հարթէկրան փոքրաչափ միկրոցույցի սերիական մոդելը։ Աշխարհում առաջին միկրոցույցը, որին տվել են «ՖԴ—200» անունը, հեշտությամբ կարելի է զետեղել գրպանում. հաստությունը 5 սմ է, երկարությունը՝ 20, լայնությունը՝ 9։ Էկրանն անկյունագծով 5 սմ է։ Ռադիոընդունիչի քաշն առանց մարտկոցիկի 400 գրամից մի փոքր ավելի է։*

*Նման չափերն ապահովվում են շնորհիվ այն բանի, որ էլեկտրական ճառագայթն էկրանի վրա պրոյեկցվում է կողքից և ոչ ետևից, ինչպես սովորական հեռուստացույցներում, որտեղ կինեսկոպը մեծ չափերի տուփ է պահանջում։ Մինչդեռ «ՖԴ—200»-ում այն տեղադրված է զուգահեռ և դրա շնորհիվ խորացվել է ընդամենը մոտ մեկ սանտիմետր։*

*Միկրոցույցը կարող է անընդհատ աշխատել երկուսուկես ժամ, ընդ որում, ինչպես ինքնուրույն՝ ալկալիական ակումուլյատորի մարտկոցիկներից սնվելով, այնպես էլ ավտոմեքենայի ակումուլյատորից կամ ուղղակի էլեկտրական ցանցից։*

## ԾՐԱԳՐՎԱԾ... ԼՈՒՍԱՎՈՐՈՒՄ

*Էլեկտրականությունն այժմ թանկ է, ուստի փողոցները լուսավորող էլեկտրաէներգիայի խնայողության համար շվեդացի մասնագետներն առաջարկել են ամենապարզ եղանակը, որը բավական լայն կիրառություն է գտել պրակտիկայում։ Ամեն մի լապտերին հարմարեցված է փոքրաչափ հաղորդիչ։ «Արտաքին» լույսի ինտենսիվության, ցերեկվա և գիշերվա տևողության, մեքենաների հոսքին համապատասխան հաղորդիչը կարգավորում է լապտերի պայծառությունը, ինչպես և առհասարակ անջատում այն։*